# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


*ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆԸ՝ ԻՆՏԵՆՍԻՎ ԶԱՐԳԱՑՈՒՄ*

Մ. Ս. Գորբաչովի ելույթը կուսակցական-տնտեսական ակտիվի խորհրդակցությունում 1985 թվականի սեպտեմբերի 7-ին Ցելինոգրադ քաղաքում . . . . . . 3

*Ե. ԼԻԳԱՉՈՎ— Պատրաստվելով կուսակցական համագումարին . . . . . . 15*

*ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ՝ ԱՐԴԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ . . . . . . 33*

ԴԵՊԻ XXVII ԿՈՒՍՀԱՄԱԳՈՒՄԱՐ

*Ի. ՀԱԿՈԲՅԱՆ, Մ. ՎԱՍԻԼՅԱՆ— Գիտատեխնիկական առաջընթացը և նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը . . . . . . . . 41*

*Լ. ՆԱԶԱՐՅԱՆ— Տնտեսական մեխանիզմի կարևոր լծակը . . . . . . 49*

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

*Հեմմա ԱՆԱՆՅԱՆ— Կուսշրջկոմը և սովետները . . . . . . . . 55*

ՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

*Դ. ՄԽԻԹԱՐՅԱՆ— Ռուսական առաջին հեղափոխության փորձը և պրոլետարիատի դիկտատուրայի տեսության զարգացումը . . . . . . . . . 63*

ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ, ՄՇԱԿՈՒՅԹ

*Ա. ՍԱՐԳՍՅԱՆ— Սոցիալիստական ապրելակերպը և կրոնը . . . . . . . 71*

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

*Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ— Նեոգաղութատիրությունը և արդի միջազգային կոնֆլիկտները . 76*

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*Ե. ՍԱՐԻՆՅԱՆ— Րաֆֆու գրական հայացքները . . . . . . . . . 84*

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

*Ս. ՍԻՄՈՆՅԱՆ— Օգնություն դասախոսին . . . . . . . . . . 93*



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ

АГРОПРОМЫШЛЕННОМУ ПРОИЗВОДСТВУ — ИНТЕНСИВНОЕ РАЗВИТИЕ
ВЫСТУПЛЕНИЕ М. С. ГОРБАЧЕВА на совещании партийно-хозяйственного актива 7 сентября 1985 года в городе Целинограде . . 3
Е. ЛИГАЧЕВ — Готовясь к партийному съезду . . . . . 15
Политучебу — на уровень современных требований . . . . 33

НАВСТРЕЧУ XXVII ПАРТСЪЕЗДУ

И. АКОПЯН, М. ВАСИЛЯН — Научно-технический прогресс и эффективность использования материальных ресурсов . . . . 41
Л. НАЗАРЯН — Важный рычаг хозяйственного механизма . . . 49

ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА

Джемма АНАНЯН — Райком партии и Советы . . . . . . 55

К 80-ЛЕТИЮ ПЕРВОЙ РОССИЙСКОЙ РЕВОЛЮЦИИ

Г. МХИТАРЯН — Опыт первой русской революции и развитие теории диктатуры пролетариата . . . . . . . . . . 63

ИДЕОЛОГИЯ, КУЛЬТУРА

А. САРГСЯН — Социалистический образ жизни и религия . . . 71

НА МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ

М. МНАЦАКАНЯН — Неоколониализм и международные конфликты современности . . . . . . . . . . 76

ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ

С. САРИНЯН — Литературные взгляды Раффи . . . . . . 84

КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ

С. СИМОНЯН — В помощь лектору . . . . . . . . 93



# ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆԸ՝ ԻՆՏԵՆՍԻՎ ԶԱՐԳԱՑՈՒՄ

## Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆՈՒՄ

### 1985 թվականի սեպտեմբերի 7-ին, Ցելինոգրադ քաղաքում

*Ցելինոգրադում անցկացվող այսօրվա հանդիպմանը, ասաց Մ. Ս. Գորբաչովը, մենք հրավիրել ենք Ղազախստանի մարզերի, Սիբիրի և Ուրալի երկրամասերի ու մարզերի կուսակցական և սովետական մարմինների ղեկավարներին, կուսակցության գյուղական շրջանային կոմիտեների մի մեծ խումբ ղեկավարների, կոլտնտեսությունների նախագահների ու սովխոզների դիրեկտորների, ագրարագետ գիտնականների: Խոսակցությունը վերաբերելու է կուսակցական ու տնտեսական գործերին:*

*1985 թվականի ապրիլյան պլենումից հետո սկսվեց ՍՄԿԿ XXVII համագումարին անմիջականորեն նախապատրաստվելու փուլը: Երկրում լարված աշխատանք է կատարվում: Այն ընդգրկում է բոլոր աշխատավորական կոլեկտիվները, սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտները: Մենք պետք է միաժամանակ լուծենք այսօրվա կարևոր ու բարդ շատ խնդիրներ, ինչպես նաև ապագայի խնդիրներ:*

*Կուսակցական կազմակերպություններում օրեցօր ծավալվում է հաշվետու-ընտրական կամպանիան: Դա միշտ էլ խոշոր իրադարձություն է եղել ՍՄԿԿ-ի կյանքում, իսկ հաշվի առնելով նոր խնդիրները, առաջիկա համագումարը, հաշվետվությունների և ընտրությունների նշանակությունը անչափ աճում է: Կարևոր է, որ դրանք անցնեն կուսակցական սկզբունքայնության, կոնստրուկտիվ քննադատության ու ինքնաքննադատության ոգով, ժողովրդի առջև կոմունիստների բարձր պատասխանատվության ոգով:*

*Կենտրոնական կոմիտեն հուսով է, որ կուսակցական կազմակերպությունները հաշվետու-ընտրական կամպանիայից դուրս կգան կազմակերպորեն ու գաղափարապես ամրապնդված, կազատվեն այն ամենից, ինչը նրանց խանգարում էր գործել ակտիվորեն, ընդունակ կլինեն ոգեշնչել, կազմակերպել աշխատավորական կոլեկտիվներին և նրանց իրենց ետևից տանել՝ լուծելու երկրի առջև ծառացած խնդիրները: Դա մեծապես կորոշվի նրանով, թե կոմունիստները ում կընտրեն կուսակցական կազմակերպությունների ղեկավար մարմիններում, և առաջին հերթին՝ սկզբնական կազմակերպությունների ու կուսակցական կոմիտեների քարտուղարների կազմով:*

ՍՄԿԿ XXVII համագումարը պետք է ընդունի կուսակցության ծրագրի նոր
խմբագրությունը և երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասներ-
կուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմ-
նական ուղղությունները: Այդ փաստաթղթերի նախապատրաստումն ավարտ-
վում է, և պլենումում քննության առնվելուց հետո դրանք կհրապարակվեն
քննարկման համար: Փաստաթղթերի նախապատրաստման նկատմամբ այս-
պիսի մոտեցումը, երբ դրան մասնակցում են կուսակցության և պետության
ոչ միայն ղեկավար մարմինները, այլև բոլոր կոմունիստները, բոլոր աշխա-
տավորները, հնարավորություն կտա, ինչպես մենք հույս ունենք, համագու-
մարին ներկայացնել ամբողջ կուսակցության, ամբողջ ժողովրդի փորձով հա-
րստացած, գիտականորեն հիմնավորված առաջարկություններ:

Կուզենայի սրա հետ մեկտեղ հայտնել մի ցանկություն. ամենևին էլ
չպետք է սպասել, թե երբ ծրագիրն ու հիմնական ուղղությունները կընդունվեն
համագումարի կողմից: Արդեն այժմ պետք է ակտիվորեն գործել ժամանա-
կի ոգով: Գլխավոր կողմնորոշիչները սահմանված են, և պետք է հաստատա-
կամորեն առաջ ընթանալ, հաղթահարելով դժվարությունների առջև, սեփական
պրակտիկ գործերը համադրելով ապրիլյան պլենումի հիմնադրույթների,
Կենտրոնական կոմիտեի հայտնած որոշումների հետ: Մեր ապրած ժա-
մանակը և մեր առջև ծառացած խնդիրները պահանջում են, որ մենք միաժա-
մանակ անսասան, վճռական և իմաստուն լինենք կանխանշված քաղաքական
կուրսը իրականացնելիս:

Մեր աշխատանքին ներկայացվող կարևորագույն պահանջներից մեկը հե-
ռանկարային և ընթացիկ խնդիրների լուծումը զուգորդել կարողանալն է: Հե-
ռանկարային և ընթացիկ խնդիրների լուծումը զուգորդել կարողանալն է: Հե-
ռանկարի մշակումը, սոցիալ-տնտեսական զարգացման նպատակների առա-
ջադրումը հսկայական նշանակություն ունեն: Բայց սրա հետ միասին պետք է
պարզորոշ պատկերացնել, որ նույնիսկ ամենահրապուրիչ պլանները, ամենա-
ցանկալի հեռանկարները, եթե դրանք գործնական աշխատանքով, արդյունա-
վետ լուծումների որոնումներով չեն ամրապնդվում, ոչինչ չարժեն: Դա մանի-
լովականության մի յուրօրինակ տարատեսակ է:

Մ. Ս. Գորբաչովը շեշտեց տասնմեկերորդ հնգամյակի վերջին տարվա հա-
ջող ավարտման այսօրվա աշխատանքի հսկայական կարևորությունը: Դա
կարող է նաև ապագայի հիմք ստեղծելու, նոր հնգամյակում լավ մեկնարկ
վերցնելու համար, որը մենք ուզում ենք դարձնել բեկումնային՝ այն հաշվով,
որ ավելի մեծ դինամիկություն հաղորդենք էկոնոմիկային, սովետական հա-
սարակության զարգացմանը:

Յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ լավ գիտե իր ռեզերվները,
լավ գիտե, թե ինչ պիտի անել այս տարվա պլանային առաջադրանքների մա-
կարդակին հասնելու համար: Իսկ արդյունաբերության, կապիտալ շինարարու-
թյան մեջ, տրանսպորտում, կենցաղի և առևտրի ոլորտում հարկավոր է դեռ
շատ բան անել: Առանձնապես կուզենայի խոսել գյուղատնտեսության խնդիր-
ների մասին: Բոլոր դժվարություններով հանդերձ մենք կարող ենք այս տարի
նախորդ տարվա համեմատությամբ հացահատիկի ավելի մեծ բերքի, հողա-
գործության մյուս արտադրանքի, մասնավորապես կերի արտադրության ավե-
լացման հույս ունենալ: Ռեալ հնարավորություններ կան անասնապահական
մթերքների մթերումների պլանները կատարելու համար:

Այժմ սկսվել է բերքի համար մղվող պայքարի վճռական փուլը: Ինչպես
պարենային, այնպես էլ ֆուրաժային հացահատիկի հարցում պահանջմունք-
ների բավարարումը շատ բանով կորոշվի Ղազախստանի, Սիբիրի և Ուրալի
երկրամասերի ու մարզերի ավանդով: Հաշվի առնելով այդ բանը, ՍՄԿԿ Կենտ-
կոմը և կառավարությունը նրանց լուրջ օգնություն ցույց տվեցին: Հիմա գոր-
ծը ձեզանից է կախված, ընկերներ: Մենք հուսով ենք, որ Ղազախստանի, Սի-
բիրի և Ուրալի մարդերի կուսակցական կազմակերպությունները, աշխատա-
վորները մեծ եռանդով ու հմտությամբ կանցկացնեն բերքահավաքը և երկրին
կուրախացնեն պետության հացի ռեսուրսների մեջ ներդրած ծանրակշիռ ա-
վանդով:



Ըստ երևույթին, խորհրդանշական է, որ Տյումենում վառելիքաէներգետիկ
համալիրի գործերի վիճակի քննարկումից անմիջապես հետո այսօր մենք քըն-
նարկում ենք պարենային հարցերը: Առանց մեկի և մյուսի չի կարող լինել ար-
դյունավետ էկոնոմիկա, չի կարելի հաջողությամբ լուծել ժողովրդի բարեկե-
ցության, երկրի տնտեսական և պաշտպանական հզորության բարձրացման
խնդիրները:

Հուսալի պարենային բազայի ստեղծումը համակուսակցական, համաժո-
ղովրդական խնդիր է: Կենտկոմի ապրիլյան պլենումը այդ առթիվ տվեց հըս-
տակ, սկզբունքային կողմնորոշում. պարենային ծրագրի իրականացումը անհե-
տաձգելի գործ է, այն հատուկ ուշադրություն է պահանջում:

Կարծում եմ, գյուղատնտեսության, ամբողջ ագրոարդյունաբերական հա-
մալիրի վիճակի վերլուծության համար մեկնակետ է հանդիսանում ՍՄԿԿ
Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումը: Դրանից ավելի քան երեք տա-
րի է անցել: Ժամանակը ցույց տվեց, որ մենք ճիշտ վարվեցինք, ընդունելով
պարենային ծրագիրը, ագրոարդյունաբերական համալիրի զարգացման հասու-
նացած պրոբլեմների վերաբերյալ մի շարք խոշոր որոշումներ: Կուսակցության
մշակած միջոցառումների իրականացման աշխատանքը գնում է բոլոր ուղղու-
թյուններով: Իրականացվում է գյուղատնտեսական մեքենաշինության խոր ար-
դիականացում: Առաջադրանքներին մոտիկ են հանքային պարարտանյութերի
արտադրության ցուցանիշները: Էականորեն մեծացել է մելիորացված հողերի
ֆոնդը:

Առանձնապես կուզենայի նշել գյուղի սոցիալական վերափոխման աշխա-
տանքների հսկայական մասշտաբները: Ընդլայնվել է բնակելի տների, կուլ-
տուր-կենցաղային օբյեկտների, ճանապարհների շինարարությունը: Այս ամենը
նպաստավոր պայմաններ է ստեղծել գյուղում կադրերի ամրակայման հա-
մար: Ավելի բարձր գնման գների և դրանց հավելումների հիման վրա կոլտըն-
տեսությունների ու սովխոզների տնտեսական վիճակի բարելավման խոշոր
միջոցառումների իրականացումը բարերար ազդեցություն է ունենում նրանց
տնտեսական դրության և տնտեսական գործունեության արդյունքների վրա:
Գործինկատմամբ մարդկանց վերաբերմունքի, աշխատանքի արդյունքների վրա
բարերար ազդեցություն է գործում տնտեսական հաշվարկի և կոլեկտիվ կա-
պալի ներդրումը:

Եթե համառոտակի ընդհանուր հայտարարի բերենք մայիսյան պլենումից
հետո մեր կատարած աշխատանքի արդյունքները, ապա կարելի է ասել, որ
մենք ընտրեցինք ճիշտ ուղղություն, շատ բան սովորեցինք և արդեն քիչ բան
չենք արել:

Կարևոր է նաև այն, որ ամբողջ երկրում էականորեն փոխվել է վերաբեր-
մունքը ագրոարդյունաբերական համալիրի զարգացման պրոբլեմների նկատ-
մամբ: Գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի զարգացման հար-
ցերը դիտվում են որպես համաժողովրդական խնդիր, իսկ գյուղի պատվերնե-
րը, նրա կարիքներն ու պահանջմունքները գտնվում են ուշադրության կենտրո-
նում, կատարվում առաջնահերթ կարգով:

Բնականաբար հարց է ծագում. իսկ ինչպե՞ս է այդ ամենն անդրադարձել
կոլտնտեսությունների ու սովխոզների, ագրոարդյունաբերական համալիրի
մյուս ձեռնարկությունների, կազմակերպությունների գործունեության ար-
դյունքների վրա, ի՞նչ օգուտ է տալիս ամբողջությամբ վերցված հասարա-
կությանը:

Ինչ վերաբերում է գյուղատնտեսության արտադրանքի ընդհանուր ծավա-
լին, ապա 1983—1984 թվականների ամփոփիչ տվյալները ցույց են տալիս,
որ դրա արտադրությունը հնգամյակի նախորդ երկու տարվա համեմատու-
թյամբ ավելացել է 22 միլիարդ ռուբլով կամ 9 տոկոսով: Ավելացել է հացա-
հատիկի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի ու մրգի բերքը: Այդ
տարիներին մսի միջին տարեկան արտադրությունն ավելացել է 9 տոկոսով,
կաթինը՝ 8 տոկոսով, ձվինը՝ 6 տոկոսով: Հաշվի առնելով այս տարվա պլանի
կատարումը, անասնապահական մթերքների մթերումները 1982 թվականի մա-

կարդակի համեմատ կաճեն. մսինը (կենդանի քաշով)՝ 2,5 միլիոն տոննայով, կաթինը՝ 9,2 միլիոն տոննայով և ձվինը՝ 3,5 միլիարդ հատով։

Այդ տարիներին զգալիորեն կրճատվել է վնասով աշխատող տնտեսությունների թիվը, իսկ ամբողջությամբ վերցված կոլտնտեսային-սովխոզային արտադրության մեջ շահութաբերության մակարդակը բարձրացել է։ 1983 թվականին կոլտնտեսությունների ու սովխոզների զուտ շահույթը կազմել է մոտ 24 միլիարդ ռուբլի, շահութաբերության մակարդակը՝ համարյա 22 տոկոս։ 1984 թվականի արդյունքների հիման վրա, որն ավելի դժվարին տարի էր եղանակի պայմաններով, այդ շահույթը կազմել է մոտ 20 միլիարդ ռուբլի, արտադրության շահութաբերությունը՝ 18 տոկոս։

Գյուղատնտեսության արտադրանքի արտադրության աճն անդրադարձել է նաև մեկ շնչին ընկնող սննդամթերքների սպառման վրա։ Այս տարի բնակչության մեկ շնչի հաշվով սպառումը կկազմի. մսինն ու ձկանը՝ 78 կիլոգրամ, այդ թվում ձկանը՝ 17,7 կիլոգրամ, կաթինը՝ 318 կիլոգրամ, ձվինը՝ 260 հատ, հացինը՝ 134 կիլոգրամ, կարտոֆիլինը՝ 110 կիլոգրամ, բանջարեղեններինն ու բոստանային կուլտուրաներինը՝ 106 կիլոգրամ, պտուղներինն ու հատապտուղներինը՝ 46 կիլոգրամ, շաքարինը՝ գրեթե 45 կիլոգրամ։

Ինչպե՞ս սա կարելի է գնահատել։ Սննդի ընդհանուր կալորիականությամբ մենք գտնվում ենք աշխարհի ամենազարգացած երկրների մակարդակին։ Մեզ մոտ բնակչության մեկ շնչի հաշվով մսի և պտուղների սպառումն առայժմ ավելի ցածր է, քան մի քանի երկրներում և որոշ չափով ավելի պակաս է սննդի սահմանված ռացիոնալ նորմաներից։ Այս տեսակետից պարենային ծրագրի կատարման մեջ ամենալարված տեղը մսի արտադրությունն է։ Այստեղ մենք հետ ենք մնում։

Իսկ ինչ վերաբերում է մյուս մթերքներին՝ կաթին, ձվին, ձկանը, շաքարին, բանջարեղենին, կարտոֆիլին, ապա մեկ շնչի հաշվով դրանց սպառման մակարդակը ոչ թե ցածր է, այլ դրանցից մի քանիսի գծով ավելի բարձր է, քան շատ երկրներում։ Դա համապատասխանում է կամ մոտիկ է պարենային ծրագրի նախանշումներին։ Հացի և հացաբուլկեղենի հարցում բնակչության պահանջմունքը ապահովվում է լայն տեսականիով։

Եվ այնուամենայնիվ սննդամթերքներով բնակչության ապահովման պրոբլեմը դեռ լրիվ չի լուծված։ Դրանցից մի քանիսի պահանջարկը գերազանցում է առաջարկը։ Դա կապված է այն բանի հետ, որ մեզ մոտ դրամական եկամուտներն ավելի արագորեն են աճել, քան սննդամթերքների արտադրությունը։ Միևնույն ժամանակ հիմնական մթերքների պետական գները երկու տասնամյակի ընթացքում մնում են փաստորեն կայուն, թեև դրանց արտադրության ծախսերը աճում են։ Օրինակ, մեր խանութներում միսը իրացվում է ծախսումներից երկու-երեք անգամ ավելի պակաս գնով։ Այժմ այդ տարբերությունը ծածկվում է պետության դոտացիայով, որը մսի գծով կազմում է տարեկան համարյա 20 միլիարդ ռուբլի։ Ինչպես տեսնում եք, պատկառելի գումար է։

Այն, որ մեզ մոտ հիմնական սննդամթերքները մատչելի են բնակչության բոլոր խավերի համար, մեր մեծ նվաճումն է։ Բայց, նշելով դա, չի կարելի չասել նաև այն մասին, թե ինչն է անհանգստացնում սովետական շատ մարդկանց։ Կենտրոնական կոմիտեում ավելի ու ավելի շատ նամակներ են ստացվում աշխատավորներից, որոնցում արծարծվում է բանվորների ու գյուղացիների աշխատանքի նկատմամբ անհարգալից վերաբերմունքի հարցը, աշխատանք, որ նրանք ներդնում են հացի և մյուս գյուղատնտեսական մթերքների արտադրության մեջ։

«Հացը կյանք է,— գրում են ընկերներ Իվանովը և Մանգալովը Կրասնոյարսկի երկրամասի Մազանսկ ավանից։ — Դա մեր հարստությունն է, հայրենիքի ուժն ու հզորությունը։ Իսկ երբեմն ինչպիսի՜ բարբարոսական վերաբերմունք կա հացի նկատմամբ։ Հարկավոր է, վերջապես, ընդհուպ զբաղվել այդ պրոբլեմով»։

Երկրորդ նամակը։ «Մեզ մոտ սովյալներ չկան,— գրում է ընկեր Սուխա-



նովը Մոսկվայից։ — Աղբարկղներում թափված են սպիտակ բատոն հացեր, հասարակական սննդի մնացուկներով կարելի է անասուններ կերակրել»։

Այսպիսի նամակներ շատ կան։ Այստեղ, ընկերներ, ըստ երևույթին, խորհելու բան կա թե աշխատավորական կոլեկտիվներում և թե կենտրոնական մարմիններում, նաև, ուղղակի ասենք, յուրաքանչյուր ընտանիքում։ Մեր ընդհանուր մտահոգությունն է՝ վճռականորեն փոխել վերաբերմունքը հացի նկատմամբ, մյուս պարենային մթերքների նկատմամբ։

Սակայն միանգամայն պարզ է, որ պարենային պրոբլեմի լուծման գլխավոր ուղղությունը կուսակցության, ամբողջ ժողովրդի հաստատակամ աշխատանքն է գյուղատնտեսության, ամբողջ ագրոարդյունաբերական համալիրի հետագա զարգացման բնագավառում։

Դրա հետ մեկտեղ քիչ օրինակներ չկան, երբ շատ մարզերում, երկրամասերում և հանրապետություններում նյութատեխնիկական և տնտեսական հարաճուն հնարավորությունները դեռևս թույլ են օգտագործվում։ Մինչև օրս կան այնպիսի աշխատողներ, որոնք եկամուտների աղբյուրներ են փնտրում ոչ թե բարձր բերքի ու կենդանիների մթերատվության մեջ, ոչ թե խնայողական տնտեսավարման մեջ, այլ բյուջետային հատկացումներ և բանկային վարկեր ստանալու մեջ։

Աշխատանքում տեղ գտած թերություններն ու վրիպումները լրջորեն անդրադարձան գյուղատնտեսությանը և, առաջին հերթին, հողագործությանը ավելի մեծ կայունություն հաղորդելու միջոցառումների արդյունավետության վրա։ Այսօր ես նորից եմ ուզում ընդգծել. եղանակը փոփոխել մեզ չի հաջողվի։ Ուղին մեկն է՝ կոնկրետ, երբեմն բարդ պայմաններում հարկավոր է գտնել բարձր բերքի ստացման առավել արդյունավետ ձևեր ու մեթոդներ։ Դա ագրոարդյունաբերական համալիրում մեր աշխատանքի վճռական պրոբլեմն է։

Այդ պրոբլեմը չափազանց կարևոր է Սիբիրի և Ուրալի երկրամասերի ու մարզերի, Ղազախստանի համար։ Հողագործության անկայունությունը ուժեղ կերպով է անդրադառնում այստեղի կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեության արդյունքների վրա։ Հնգամյակի չորս տարում Ղազախստանում չեն կատարվել արտադրանքի տեսակների մեծ մասի գծով պլանային առաջադրանքները։ Հանրապետությունը պետությանը հացահատիկի վաճառքի մեծ պարտք ունի։ Վատացել են մի քանի որակական ցուցանիշներ, մի շարք շրջաններում նվազել են դաշտերի բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը։

Վերջին տարիներս ՌՍՖՍՀ ուրալյան և սիբիրյան շատ մարզերում սիստեմատիկաբար չեն կատարվում հացահատիկի արտադրության և պետությանը դրա վաճառքի պլանները։ Չորս տարում հացահատիկի վաճառքի մեծ պարտք ունեն Ալթայի և Կրասնոյարսկի երկրամասերի, Նովոսիբիրսկի, Օրենբուրգի, Կուրգանի, Չելյաբինսկի մարզերի կոլտնտեսություններն ու սովխոզները։ Նրանք պակաս են տվել նաև ոչ քիչ քանակությամբ կաթ ու միս։

Հացահատիկի արտադրության և գնումների պլանների ձախողումը լարվածություն է առաջացնում երկրի պահանջմունքների բավարարման գործում։ Դա մեզ ստիպում է դիմել հացահատիկի ներմուծման, ծախսել զգալի վալյուտային ռեսուրսներ։ Մենք խնդիր ենք դնում այսուհետև էլ ավելացնել հացահատիկի արտադրությունը մեր պահանջմունքների լրիվ բավարարման համար։ Իրենց գործնական աշխատանքում սրանից պետք է ելնեն երկրի հացահատիկ արտադրող հանրապետությունների, երկրամասերի և մարզերի կոլտնտեսություններն ու սովխոզները, կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները։

Ի՞նչ է սա նշանակում կոնկրետ իմաստով։ Եթե խոսելու լինենք ամենագլխավորի մասին, ապա հարկավոր է հասնել այն բանին, որ եղանակային ամեն մի անբարենպաստ տարում երկիրը ստանա առնվազն 200 միլիոն տոննա հացահատիկ, իսկ նորմալ պայմաններում՝ 250 միլիոն տոննա և ավելի հացահատիկ։ Սա, ես կասեի, մեր հողագործության առաջիկա տարիների ստրատեգիական խնդիրն է։

Բայց հացահատիկի պրոբլեմը ոչ միայն բերքի աճեցումն է, այլև ռացիոնալ օգտագործումը: Մենք չենք կարող կերի արտադրության պակասը ծածկել հացահատիկը մեծ ծավալներով որպես կեր օգտագործելով: Այդ պրակտիկան պիտանի չէ, անթույլատրելի է: Իսկ շատ շրջաններում այն արդեն ամուր արմատներ է գցել: Հասկանալով պրոբլեմի մեծ կարևորությունը, պետք է որոնել դրա լուծման ուղիներ: Այս առթիվ որոշակի դասեր կան. 1983—1984 թվականներին ոչ միայն կատարվեցին, այլև գերակատարվեցին կոշտ և հյութալի կերի կուտակումների պլանները: Եվ դա պայմաններ ստեղծեց այն բանի համար, որ խտացված կերի պակաս ծավալի դեպքում ապահովվեն անասնապահական մթերքների արտադրության ավելի բարձր արդյունքներ: Ուստի կոլտնտեսություններում ու սովխոզներում կերի արտադրությամբ պետք է զբաղվեն այնպես, ինչպես զբաղվում են հացահատիկի արտադրությամբ: Դրանից ո՛չ քիչ և ո՛չ վատ: Սա, այսպես ասած, միևնույն մեդալի երկու կողմն է: Պետք է պայքարել թե՛ կերի կուլտուրաների բերքի համար և թե գիտության արդի նվաճումների և կոլտնտեսություններում ու սովխոզներում կուտակված փորձի օգտագործման հիման վրա կերի որակի բարձրացման համար:

Ես նույնիսկ կասեի, որ որակի պրոբլեմը պետք է այժմ դրվի առաջին տեղում: Վերահսկողությունն ու ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կերի ցածր որակի պատճառով երկրի շատ ռեգիոններում կորչում է սննդարար նյութերի 20-ից մինչև 30 տոկոսը: Կերի հացահատիկի գերածախս է տեղի ունենում նաև մի շարք վայրերում կերի սպիտակուցի դեֆիցիտի վերացման թույլ աշխատանքի հետևանքով: Շատ տնտեսություններում դա արդեն հասկացել են և ակտիվորեն ձեռնամուխ են եղել սպիտակուցի պրոբլեմի լուծմանը, բայց ոմանք հույսները դնում են պետական ռեսուրսներից օգնություն ստանալու վրա: Պետք է զորավիգ լինել առաջիններին և վճռականորեն ղատապարտել մյուսների խնամառուական տրամադրությունները:

Այժմ, երբ ձևավորվում են նոր հնգամյակի պլանները, շատ կարևոր է, որ յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում, յուրաքանչյուր շրջանում, բոլոր մարզերում, երկրամասերում ու հանրապետություններում լավ կշռադատեն մսի ռեսուրսների մեծացման հետ կապված պրոբլեմները: Սա առաջնային խնդիր է: Տասնմեկերորդ հնգամյակի եզրափակիչ տարում մսի արտադրության աճը 1980 թվականի համեմատությամբ սպասվում է սպանդային քաշով 2 միլիոն տոննայի չափով: Պարենային ծրագրի ցուցանիշներին հասնելու համար անհրաժեշտ է, որ տասներկուերորդ հնգամյակում մենք այն կրկնապատկենք:

Ընդհանրապես հացահատիկի, կերի, մսի, կաթի և մյուս մթերքների արտադրության խնդիրները վկայում են, որ եկող հնգամյակում լարված աշխատանք է սպասվում: Սա պետք է լավ հասկանան ագրոարդյունաբերական համալիրի բոլոր աշխատողները և ամենից առաջ մեր ղեկավար կադրերը:

Հարց է ծագում. ինչպե՞ս հասնել կանխանշվածին, մենք արդյոք ունե՞նք դրա համար անհրաժեշտ պայմանները: Ոչ թե հենց այնպես, խոսքի համար, այլ այս հարցին պատասխանելով ըստ էության, ուզում եմ Կենտրոնական կոմիտեի անունից որոշակիորեն հայտարարել, որ այդպիսի հնարավորություններ և այդպիսի պայմաններ մեզանում այժմ կան: Եվ դրանում համոզում է Կենտկոմի մայիսյան պլենումին հաջորդած տարիներին հաղարավոր կոլտնտեսությունների ու սովխոզների, մի շարք երկրամասերի ու մարզերի աշխատանքը:

Այժմ մեր առջև որպես առաջնահերթ խնդիր կանգնած է բարձր հատույցի ապահովումը այն ամենից, ինչ կա գյուղատնտեսության, ամբողջությամբ վերցված ագրոարդյունաբերական համալիրի տրամադրության տակ:

Գյուղում ֆոնդահատույցը դարձյալ ցածր է: Կուրգանի մարզում կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրական ֆոնդերը Կենտկոմի մայիսյան պլենումից հետո անցած երկու տարում ավելացել են գրեթե 13 տոկոսով, իսկ համախառն արտադրանքի ծավալը պակասել է 12 տոկոսով: Նույնպիսի պատկեր է Կուստանայի մարզում, որտեղ վերոհիշյալ ժամանակաշրջանում հիմնական արտադրական ֆոնդերի աճը կազմել է 14 տոկոս, իսկ արտադրանքի արտադրությունը կրճատվել է: Գյուղատնտեսության արտադրանքի ծավալների նվազում, չնայած ֆոնդահագեցման մակարդակի նկատելի բարձրացմանը, թույլ է տրվել Ռուսաստանի ֆեդերացիայի, Ուկրաինայի, Ղազախստանի, Ուզբեկստանի մի շարք մարզերում:



Հիմնական օղակը, որով պետք է զբաղվել գյուղում մեր առջև կանգնած գործնական խնդիրների ամբողջ շղթան լուծելու համար, արտադրության կազմակերպումն է, կոլտնտեսությունների, սովխոզների, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ձեռնարկությունների աշխատողների աշխատանքի կազմակերպումը, բարձր արտադրողական, արդյունավետ աշխատանքի արդեն կուտակված փորձի լայն օգտագործումը: Այստեղ ամեն ինչ կախված է ոչ թե լրացուցիչ կապիտալ ներդրումներից, այլ ղեկավար կադրերի, կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների գործունեությունից:

Որոշ գործնական հարցերի վրա կցանկանայի մի քիչ ավելի հանգամանորեն կանգ առնել:

Առաջինը՝ հարկավոր է ավելի համարձակորեն անցնել նոր առաջավոր տեխնոլոգիաների, նյութական ռեսուրսների օգտագործման ավելի արդյունավետ ձևերի, դրանք նախ և առաջ կենտրոնացնել այն ուղղություններում և այնտեղ, որտեղ դրանք կարող են ամենամեծ հատույցը տալ: Մենք պետք է առաջիկա հնգամյակի տարիներին առաջնահերթ նշանակություն տանք ինտենսիվ տեխնոլոգիաների հիման վրա հացահատիկային կուլտուրաների մշակությանը:

Այս տարի ինտենսիվ տեխնոլոգիաներով են մշակվում գրեթե 17 միլիոն հեկտար ցորեն և փաստորեն ամբողջ հատիկացու եգիպտացորենը: Չնայած եղանակի բոլոր քմայքներին, այստեղ բերքի պատկառելի հավելում է ձեռք բերվում: Գյուղատնտեսության մինիստրության և Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիայի տվյալներով տնտեսությունները շատ տարածություններում կստանան հեկտարից 40—50 ցենտներ հացահատիկ, այսինքն՝ 15—20 ցենտներով ավելի, քան սովորական տեխնոլոգիայի դեպքում:

Նոր տեխնոլոգիաները ավելի ու ավելի ամուր դիրքեր են նվաճում: Տեղերից արված առաջարկություններով 1986 թվականի բերքի համար ինտենսիվ տեխնոլոգիաներով մշակվելու է ավելի քան 31 միլիոն հեկտար հացահատիկային կուլտուրա, այդ թվում գրեթե 4 միլիոն հեկտար եգիպտացորեն: Մոտ ապագայում, հաշվի առնելով նախացանքային առավել լավ կուլտուրաները, մենք կարող ենք այդպիսի տեխնոլոգիաներ կիրառել առնվազն 60 միլիոն հեկտարի վրա: Հարկավոր է նախ և առաջ հենց այստեղ կենտրոնացնել պարարտանյութերը, տեխնիկան, մյուս ռեսուրսները, որպեսզի երաշխավորված կերպով ստանանք բարձր բերք, անհրաժեշտ կայունություն հաղորդենք հացահատիկի արտադրությանը:

Բայց բանը միայն դա չէ: Այսօր մենք կարճատև հանդիպում ունեցանք դիտնականների հետ: Այդ զրույցի արդյունքները կարելի է ամփոփել այսպես. այժմյան փուլում հարցերի հարցը տեխնոլոգիական կարգապահության պահպանումն է դաշտերում: Գյուղատնտեսության մեջ հարկավոր է. նույնպիսի տեխնոլոգիական կարգապահություն, ինչպես օրինակ, պողպատ կամ չուգուն հալելիս: Մի փոքր սխալվեցիր՝ մետաղի այլ որակ կլինի: Ահա թե դաշտերում կատարվող աշխատանքի ինչպիսի փուլի ենք մենք մոտեցել: Ինտենսիվ տեխնոլոգիաների պայմաններում առավելագույն արդյունք ստանալու համար պետք է ունենալ որակյալ կադրեր: Ամենուրեք չէ, որ մենք հասել ենք նրանց պրոֆեսիոնալ լավ պատրաստության:

Մեզանից շատերը վարժվել են աշխատել այսպես. ցանեցի, ինչ աճեց, այն էլ հավաքեցի: Եվ պրծավ գնաց: Ինտենսիվ տեխնոլոգիաների պայմաններում այդպես աշխատել անկարելի է: Կուլտուրաների մշակության ժամանակ պահանջվում է հողագործի նուրբ և գրագետ աշխատանք: Ահա թե ինչու հարկավոր է սովորեցնել կադրերին, առանց խոր գիտելիքների գործն առաջ

չի գնա։ Սա է, ընկերներ, բարձր և կայուն բերքի ստացման հուսալի ուղին։ Ընդհանուր ցուցումների և լոզունգների ժամանակն անցել է։ Կուսակցական կոմիտեները պետք է հսկայական կարևորություն ունեցող այս գործը պահեն իրենց ամենօրյա վերահսկողության տակ, ըստ ամենայնի առաջ մղեն ինտենսիվ տեխնոլոգիաները արտադրության մեջ, հենվելով գիտության և առաջավոր պրակտիկայի վրա։

Երկրորդ՝ շատ տեղերում տակավին թույլ են օգտագործվում հողագործության գիտականորեն հիմնավորված համակարգերի հնարավորությունները։ Այդպիսիք այժմ կան յուրաքանչյուր գոտու համար, ըստ էության՝ յուրաքանչյուր տնտեսության համար։ Սա հողի բերքատվության բարձրացման կարևոր գործոն է։

Ընդ որում պետք է հիշել, որ հողագործության համակարգի տարրերից յուրաքանչյուրի անտեսումը խախտում է բերքի համար մղվող պայքարի ամբողջ ցիկլը, իսկ երբեմն էլ ընդհանրապես ի չիք դարձնում աշխատանքի ու միջոցների ծախսումները։ Առանձնապես կուզենայի խոսել հարոսի մասին։ Իսկ ավելի ճիշտ՝ հարոսին ցույց տրվող վերաբերմունքի մասին։ Վերհիշեցեք, թե ինչպիսի սուր բանավեճ էր գնում դեռ մի քանի տարի առաջ. պե՞տք է, թե ոչ հարոսը։ Վերջիվերջո հաղթեցին գիտությունը և գիտության տվյալների վրա հենվող տեսակետը։ Այժմ մենք ունենք մոտ 22 միլիոն հեկտար հարոս։ Ղազախստանի, Սիբիրի և Ուրալի հիմնական հացահատիկային շրջաններում հարոս թողած դաշտը գրավում է վարելահողի 15—20 տոկոսը։

Տերենտի Սեմյոնովիչ Մալցևը, իսկ նա ներկա է այստեղ, պատեհ առիթով միշտ ինձ հիշեցնում էր հարոսի մասին և ասում, որ հարկավոր է մինչև վերջ հասցնել այդ գործը. եթե Սիբիրի և Ղազախստանի խոպանի պայմաններում հարոսը 20 տոկոսից պակաս լինի, ավելի լավ է այն չունենալ։

Հիմա մենք կամ հասել ենք այդ մակարդակին, կամ էլ մոտեցել ենք դրան։ Բայց արդյունքները բավական խայտաբղետ են, և դրանք իմաստավորում են պահանջում։ Կարելի է բազմաթիվ օրինակներ բերել, երբ չորային տարիներին լավ նախապատրաստված և ճիշտ մշակված հարոսը երկու-երեք անգամ ավելի շատ բերք է ապահովում, քան ոչ հարոսային կուլտուրաներինն է։ Դա առանձնապես երևում է ծանր տարիներին։ Այստեղ հացահատիկի որակն էլ զգալիորեն ավելի լավ է, քան մյուս դաշտերում։ Բայց ամենուրեք չէ, որ բանն այդպես է։ Նույնիսկ հացահատիկ արտադրող այնպիսի խոշոր մարզերում, ինչպիսիք են Օմսկի, Սարատովի, Օրենբուրգի, Ցելինոգրադի մարզերը, Ալթայի երկրամասը, հարոսի ընդարձակումը դեռևս չի ապահովել հացահատիկի համախառն բերքի պատշաճ հավելաճ։

Ի՞նչն է բանը։ Այն, որ հարոսին հող հատկացրել են, իսկ հարոսի հետ տարվող իսկական աշխատանք չկա։ Սա նոր հարց չէ, մենք այս մասին արդեն բազմիցս խոսել ենք։ Մի դեպքում ժամանակին չեն հերկում հարոսը, մյուս դեպքում չեն մշակում, և դա մոլախոտերով է պատվում։ Իսկ որտե՞ղ են մեր շրջանային և մարզային ագրոարդյունաբերական միավորումները, որտե՞ղ են մեր մասնագետները, զոնալ գիտահետազոտական ինստիտուտները։ Եվ ամենագլխավորն այն է, ընկերներ, թե ինչպես կարող է ընդհանրապես այդ ամենին հանգիստ նայել գյուղատնտեսը։ Չէ որ հողը նրա՝ որպես մասնագետի, դաշտերի օրենսդրի, հարազատ գործն է, նրա պատվի ու խղճի գործը։

Երրորդ՝ ամենքիս համար ակներև է, որ մեր երկրի կոնկրետ պայմաններում, որն ունի խիստ ցամաքային կլիմա և որտեղ հաճախ են կրկնվում երաշտները, չի կարելի գյուղատնտեսական արտադրության կայուն վարում ապահովել առանց մելիորացված և առաջին հերթին ոռոգվող հողերի առկայության։

Մենք մեծ ուղի ենք անցել, իրականացնելով գյուղատնտեսության մելիորացման վիթխարի ծրագիր։ Մելիորատիվ աշխատանքների մասշտաբները այսուհետև էլ կընդլայնվեն արդեն մշակված և ընդունված պլանների հիման վրա։ Մեր այս հաստատուն գիծը մեկ անգամ ևս հավաստվեց ՍՄԿԿ Կենտկոմի անցած տարվա հոկտեմբերյան պլենումում։



Եվ, այնուամենայնիվ, այսօր առաջնահերթ խնդիրը ոչ թե մելիորացված հողատարածությունների ընդարձակումն է, այլ դրանց արդյունավետ օգտագործման ապահովումը։ Այդ հողերից ստացվող բերքը չի համապատասխանում ոչ մեր կատարած ծախսումներին, ոչ էլ բարելավված հողերի ռեալ հնարավորություններին։

Գյուղատնտեսության, մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությունները, Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիան ըստ էության միայն արձանագրում են այդ անբարեհաջողությունը։ Այդ հարցերի վերաբերյալ հանձնարարություններ բավական շատ կան, բայց վերոհիշյալ կազմակերպությունների ղեկավարները կուսակցական պատասխանատվություն հանդես չեն բերել կուսակցության Կենտկոմի և կառավարության որոշումների կատարման համար։

Երբեմն կարելի է լսել այսպիսի դատողություններ. թող միայն ոռոգվող հողեր լինեն, բերքն էլ ինքնըստինքյան կգա։ Սա, գիտեք ինչ, հիշեցնում է մոլի էքստենսիվականների դատողությունները։ Որտեղ ուզում եք վերցրեք, բայց ոռոգվող հողերի օգտագործման հարցերում ինքնահոսը առանձնապես անթույլատրելի է։ Հարկավոր է առաջնահերթ կարգով ամենուրեք ապահովել ինտենսիվ տեխնոլոգիաներով կուլտուրաների մշակությունը ոռոգվող ու մելիորացված հողերում։ Եվ հարկավոր է նաև հոգ տանել մելիորացված հողատարածությունների վիճակի արմատական բարելավման անհետաձգելի միջոցառումների մասին։ Հենց այստեղ էլ առաջին հերթին անհրաժեշտ է օգտագործել հատկացվող կապիտալ ներդրումները։ Սա է ՍՄԿԿ Կենտկոմի ու կառավարության պահանջը, և այն պետք է անշեղորեն կատարվի։

Չորրորդ՝ անասնապահության պրոբլեմների մասին։ Պետք է ընդունենք, որ, չնայած որոշակի ջանքերին, գիտատեխնիկական առաջընթացն առայժմ թույլ է շոշափել այդ ճյուղը։ Ղեկավար շատ աշխատողներ, մասնագետներ դեռևս փորձում են մսի, կաթի և մյուս մթերքների արտադրության ավելացման պրոբլեմը լուծել էքստենսիվ գործոնների հաշվին։

Երբ մի քանի տարի առաջ մենք որպես հիմնական ուղղություն առաջադրեցինք անասունների մթերատվության որակական բարելավումն ու բարձրացումը և ոչ թե գլխաքանակի աճը, շատերը դա չհասկացան և նույնիսկ ընդունեցին հիվանդագին։ Բայց կյանքը ցույց տվեց, որ նման մոտեցումը իրեն լրիվ արդարացնում է։ Այլ կերպ չի էլ կարող լինել։ Դա ապացուցված է առաջավոր տնտեսությունների փորձով։

Վերջին երկու-երեք տարիները, երբ կովերի և մյուս անասունների գլխաքանակը երկրում փաստորեն չի ավելացել, իսկ կովերինը նույնիսկ փոքր-ինչ նվազել է, բնութագրվում են անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների թեկուզև ոչ կտրուկ, բայց անշեղ աճով։

Մեզ հարկավոր է այսուհետև էլ ուշադրությունը կենտրոնացնել ոչ թե գլխաքանակի աճի վրա, քանի որ դրա հետ մեծ ծախսեր են կապված ֆերմաների նոր շինարարության և սպասարկող անձնակազմի համար, այլ արտադրության ինտենսիվ մեթոդների հետևողական արմատավորման վրա։ Հավանաբար կան ու կլինեն շրջաններ և նույնիսկ մարզեր, որտեղ հարկավոր է ավելացնել նաև գլխաքանակը, եթե կերարտադրությունը առաջանցիկ տեմպերով է զարգանում։ Բայց հիմնական ուշադրությունը պետք է դարձնել անասնապահության ինտենսիվացմանը։

Եթե յուրաքանչյուր գլուխ խոշոր եղջերավոր անասունի հանձնման քաշը բարձրացվի գոնե 50 կիլոգրամով, մենք միևնույն գլխաքանակի դեպքում կստանանք կենդանի քաշով մեկուկես միլիոն տոննա միս հավելում։ Դա շատ ավելի էժան ու խնայողական կլինի, քան նույնպիսի հավելումը գլխաքանակի աճի հաշվին ստանալով, որն այդ դեպքում հարկ կլիներ ավելացնել գրեթե 5 միլիոն գլխով։

Մոտեցման փոփոխության կարիք է զգում նաև մեր կաթնատու անասնապահությունը։ Հարկավոր է ավելի ակտիվորեն ձեռնամուխ լինել այն հնարավորությունների իրացմանը, որ ընձեռում են ցեղաբուծական աշխատանքը,

թե արտադրական և թե սոցիալական առումով։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն բարձր է գնահատում մեր կուսակցության այս կարևորագույն օղակի գործունեությունը, գնահատում է այն ավանդը, որ կուսակցական կոմիտեները ներդնում են կուսակցության քաղաքական կուրսի իրացման մեջ և մասնավորապես պարենային ծրագրի կատարման գործում։

Սրա հետ մեկտեղ անհրաժեշտություն կա անելու նաև որոշ դիտողություններ։ Կենտկոմի բաժինների կողմից մի շարք մարզային կուսակցական կազմակերպությունների գործունեության ուսումնասիրումը ցույց տվեց, որ կուսակցության շատ շրջկոմներ դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը, երբեմն մոռանում են, որ կուսակցական կոմիտեն քաղաքական ղեկավարման մարմին է։

Որոշ շրջկոմներ հակվում են սխալ ոճի։ Երբեմն դժվար է լինում կուսակցական կոմիտեի աշխատանքի ձևերն ու մեթոդները զանազանել տնտեսական մարմնի աշխատանքի ձևերից ու մեթոդներից։ Ամենուրեք չէ, որ ուշադրություն է դարձվում գաղափարախոսական աշխատանքի մակարդակի բարձրացմանը։

Գյուղական շրջկոմի համար սուր հարց է կադրերի հետ տարվող աշխատանքը։ Կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները մեր կադրերի հիրավի ոսկե ֆոնդն են։ Հարկավոր է բարձր գնահատել և բարձրացնել նախագահի ու դիրեկտորի ոչ դյուրին աշխատանքի հարգը, որպեսզի յուրաքանչյուր շրջանում, յուրաքանչյուր մարզում, երկրամասում, հանրապետությունում ձևավորվի և ամրապնդվի տնտեսությունների ղեկավար կադրերի կայուն համակազմ։

Վերջում Մ. Ս. Գորբաչովն ասաց.

Այսպիսի խորհուրդ-խոսակցությունը, որը տեղի ունեցավ կուսակցության հերթական համագումարի նախօրեին, նոր հնգամյակի նախօրեին, հատուկ նշանակություն է ձեռք բերում ոչ միայն այս խոշոր գյուղատնտեսական ռեգիոնի համար, այլև ամբողջ երկրի, մեր ամբողջ ժողովրդի համար։ Ղազախստանում, Սիբիրում, Ուրալում այս տարի բոլոր պայմանները կան պետությանը հացահատիկի վաճառքի պլանները հաջողությամբ կատարելու և երկրի պարենային ռեսուրսների մեջ ծանրակշիռ ավանդ ներդնելու համար։ Դա լավ նվեր կլինի կուսակցության հերթական XXVII համագումարի առթիվ։
(Երկարատև ծափահարություններ)։

---

# ՊԱՏՐԱՍՏՎԵԼՈՎ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

**Ե. ԼԻԳԱՉՈՎ**
ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ,
ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար

Մեր ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ պատրաստվում է իր հերթական, XXVII համագումարին, որը ամենևին էլ միայն ներկուսակցական գործ չէ։ ՍՄԿԿ-ն, և այս փաստն արտացոլված է ՍՍՀՄ սահմանադրության մեջ, հանդես է գալիս որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժ, կազմում է նրա քաղաքական սիստեմի, պետական և հասարակական կազմակերպությունների միջուկը։ Եվ այդ պատճառով էլ նախապատրաստումը կուսակցական համագումարին օրեցօր ավելի ու ավելի մեծ չափով է որոշում ինչպես կուսակցական կազմակերպությունների, այնպես էլ բոլոր աշխատավորական կոլեկտիվների, ողջ սովետական ժողովրդի կյանքն ու գործունեությունը։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1985 թվականի ապրիլյան պլենումը, ընդունելով որոշում համագումար հրավիրելու մասին, տվեց հստակ նպատակադրումներ, որոնց վրա պետք է կենտրոնանալ համագումարին նախապատրաստվելու պրոցեսում։ Պլենումում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի հետագա ելույթներում նախանշված է մեր հասարակության սոցիալ-տնտեսական արագ զարգացման ստրատեգիան՝ գիտատեխնիկական առաջընթացի բազայի վրա, առաջադրված են ընթացիկ և հեռանկարային լայն շրջանի պրոբլեմների սկզբունքորեն կարևոր դրույթներ։

Հասկանալի է, ոչ հեռանկարային, ոչ ամենաօրախնդիր գործերը ինքնաբերաբար չեն կատարվում։ Ստրատեգիական, տակտիկական խնդիրների և ընթացիկ կազմակերպական աշխատանքի միասնությունը լենինյան կուսակցության բնորոշ գիծն է։ «Առանց ծրագրի անհնարին է կուսակցությունը, իբրև քիչ թե շատ ամբողջական քաղաքական օրգանիզմ, որն ընդունակ լինի միշտ պահել գիծը իրադարձությունների բոլոր ու ամեն տեսակի շրջադարձերի ժամանակ,— գրում էր Վ. Ի. Լենինը։ — Առանց տակտիկական գծի, որը հիմնըված է ներկա քաղաքական մոմենտի գնահատականի վրա և տալիս է ճշգրիտ պատասխաններ արդիականության «անիծյալ հարցերին», հնարավոր է տեսաբանների խմբակ, բայց ոչ գործող քաղաքական մեծություն» (ԵԼԺ, հ. 20, էջ 438)։

Կուսակցության Կենտկոմի ապրիլյան պլենումի մշակած գծի իրականացումը, որն ուղղված է մեր առաջընթաց շարժման արագացմանը, էկոնոմիկան կդարձնի ավելի ամուր, մարդկանց բարեկեցությունը՝ ավելի ապահովված, իսկ երկրի պաշտպանությունը՝ ավելի հուսալի։ Այն կպահանջի արդի

---

Հոդվածի հիմքում դրված է միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմների, կուսակցության երկրկոմների և մարզկոմների երկրորդ քարտուղարների և կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժինների վարիչների 1985 թվականի հուլիսի 26-ին ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում կարդացված զեկուցումը։

պայմաններում կուսակցության ստրատեգիայի ու տակտիկայի խոր գիտակցում առաջին հերթին բոլոր կոմունիստների կողմից, հոգեբանական վճռական վերակառուցում, նոր ձևով աշխատելու և մտածելու կարողություն։ Հետևաբար, մեզ սպասում է ամենօրյա կազմակերպչական մեծ աշխատանք։

Նախահամագումարյան նախապատրաստության կարևոր փուլ կդառնա հաշվետու-ընտրական կամպանիան կուսակցության մեջ։ Կազմակերպական առումով դրա առանձնահատկությունն այն է, որ այն ընդգրկում է բոլոր օղակները՝ կուսակցական խմբերից մինչև մարզային, երկրամասային և հանրապետական կուսկազմակերպությունները։ Կոնֆերանսներին և համագումարներին գաղափարական հուժկու լիցք կհաղորդի ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծի, կուսակցության կանոնադրության փոփոխությունների քննարկումը։ Հաշվետվությունները և ընտրությունները կկայանան երկու հնգամյակների սահմանագծում, և այդ է նաև դրանց կարևոր տարբերիչ գիծը։ Անհրաժեշտ կլինի ընդհանրացնել նոր փորձը, մշակել երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և հեռանկարային պլանը։ Եվ, իհարկե, ներկայիս հաշվետու-ընտրական կամպանիայի առանձնահատուկ հնչեղությունը որոշվում է նրանով, որ այն տեղի է ունենալու ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի քաղաքական հիմնադրույթներին համապատասխան էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման ձևերի ու մեթոդների, տնտեսական ու կուսակցական-քաղաքական ողջ աշխատանքի վերակառուցման ժամանակաշրջանում։

Քիչ ժամանակ է անցել պլենումից հետո, բայց նրա գաղափարներն ավելի ու ավելի տեսանելի մարմնավորում են ստանում կոնկրետ գործերում, մեր կյանքի շատ բնագավառներում կատարվող շոշափելի փոփոխությունների մեջ։ Դա արտահայտվում է ամենից առաջ այն բանում, որ կուսակցությունը խույս չի տալիս հասունացած պրոբլեմներից, վճռականորեն ձեռնարկում է արտադրողական ուժերի զարգացման և արտադրական հարաբերությունների կատարելագործման ամենադժվարին ու անհետաձգելի խնդիրների լուծմանը։ Այդ առնչությամբ հատուկ տեղ է պատկանում գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին նվիրված խորհրդակցությանը, որը կայացավ ՍՄԿԿ Կենտկոմում։ Հասարակության առջև ծառացած արմատական պրոբլեմների և եղած դժվարությունների խոր վերլուծության հետ միասին խորհրդակցությունում մատնանշվեցին հանրային արտադրության աճի տեմպերի արագացման, ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման կատարելագործման ռեալ ուղիներն ու եղանակները։ Այլ կերպ ասած, պատասխան է տրված ո՛չ միայն այն հարցին, թե ինչ պետք է անել, այլև այն հարցին, թե ինչպե՛ս պետք է անել։

Այս կոնստրուկտիվ մոտեցման հունի մեջ են գտնվում ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի ընդունած որոշումները տնտեսավարման նոր մեթոդների լայն տարածման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա դրանց ներգործության ուժեղացման մասին, նավթի և գազի արդյունաբերության, մեքենաշինության, ագրոարդյունաբերական համալիրի վերամշակող ճյուղերի ձեռնարկությունների տեխնիկական վերազինման մասին։ Քննության է առնված սոցիալական պրոբլեմների լայն սպեկտր։ Գործնական լուծում են ստանում ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի նորմավորման, կոնստրուկտորների, տեխնոլոգների, գիտական և բուժական աշխատողների աշխատանքի վարձատրության հասունացած հարցերը։ Իրենց բնակարանային և սոցիալ-կենցաղային պայմանները բարելավելու աշխատավորական կոլեկտիվների ունեցած հնարավորությունները ավելի սերտ կախման մեջ են դրվում նրանց ձեռք բերած արտադրական արդյունքներից։ Միջոցառումներ են նախատեսված երկրի մի շարք ռեգիոնների ու քաղաքների սոցիալ-տնտեսական զարգացման, պատերազմի մասնակիցների և կենսաթոշակառուների նյութական դրության, երիտասարդության բնակարանային պայմանների բարելավման ասպարեզում։ Ժողովրդի կամքով անհաշտ պայքար է ծավալվել հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ։

Կուսակցությունը Կենտկոմի ապրիլյան պլենումում առաջադրեց և հետև-



վողականորեն կենսագործում է սկզբունքային այն դրույթը, որ ոչ մի կազմակերպություն, ոչ մի աշխատող կուսակցական վերահսկողությունից դուրս չպետք է մնա։ Դրան համապատասխան ուժեղացվում է պատասխանատվությունը կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման համար ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում։ Միայն վերջին ամիսների ընթացքում ՍՄԿԿ Կենտկոմում քննարկվել են ՍՄԿԿ Օրենբուրգի, Գորկու, Սմոլենսկի մարզկոմների, կուսակցության Խարկովի քաղկոմի հաշվետվությունները, մինիստրների ղեկուցումները տնտեսական և կուլտուրական շինարարության հրատապ հարցերի մասին։

Լուրջ միջոցառումներ են իրականացվում ղեկավար կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը բարելավելու ուղղությամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումների կադրային որոշումները, մի շարք մինիստրությունների և կուսակցության մարզկոմների ղեկավարության ամրապնդումը անմիջականորեն կապված են Կենտկոմի ապրիլյան պլենումի քաղաքական նպատակադրույթների իրականացման ուղղությամբ կատարվող գործնական քայլերի հետ։

Տնտեսական և սոցիալական զարգացումն արագացնելու, հանձնարարված գործի համար յուրաքանչյուրի պատասխանատվությունը բարձրացնելու, մեր կյանքի կարևոր կողմերը նորացնելու ուղղությամբ կուսակցության վերցրած կուրսին ոգևորիչ աջակցություն է ցույց տալիս սովետական ժողովուրդը։ Դրական պրոցեսներ են տեղի ունենում հասարակական գիտակցության, սովետական մարդկանց տրամադրության մեջ, ամրապնդվում է կուսակցության և ժողովրդի միասնությունը։ Վճռական չափով դրան նպաստում է կուսակցության խոսքի միաձուլությունը նրա գործերի հետ։ ՍՄԿԿ-ի ներքին և արտաքին քաղաքականությունը ժողովուրդը պաշտպանում է գործով՝ բարձրարտադրողական աշխատանքով, ժողովրդական տնտեսության շատ տեղամասերում աշխատանքի բարելավմամբ։ Երկրորդ եռամսյակում, առաջինի համեմատությամբ, կրկնապատկվել է արդյունաբերական արտադրության աճի տեմպը։

Բայց, թեպետև ասում են, որ լավ սկիզբը գործի կեսն է, բայց գլխավորը առջևում է։ Մեր առաջընթացի տեմպերով, իրական արդյունքներով էլ մեր ժողովուրդը կդատի կուսակցության բոլոր օղակների մարտունակության մասին, այն մարդկանց ձեռնհասության մասին, որոնց վստահված է կուսակցական կազմակերպությունների, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարումը հասարակական զարգացման այս, որոշ իմաստով շրջադարձային բնագծում։

Մինչև ՍՄԿԿ XXVII համագումարի հրավիրումը մնացած ամիսներին կուսակցությունը պետք է.

— ապահովի տասնմեկերորդ հնգամյակի հաջող ավարտումը.

— կազմակերպական և քաղաքական բարձր մակարդակով անցկացնի հաշվետու-ընտրական կամպանիան կուսակցական կազմակերպություններում.

— խորը վերլուծի ՍՄԿԿ XXVI համագումարից հետո անցած ուղին և որոշի հեռանկարի խնդիրները։

Այն հարցին, թե ինչպես ավելի լավ նախապատրաստվել հաշվետու-ընտրական ժողովին, կոնֆերանսին, ինչպես արժանավայել դիմավորել կուսակցության XXVII համագումարը, պատասխանը կարող է լինել մեկը և միայն մեկը. անվերապահորեն կատարել պետական պլանները, լուծել նշված սոցիալական խնդիրները, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում ստեղծել բարձր կարգապահության և կարգուկանոնի, նորանոր բնագծեր նվաճելու վճռականության մթնոլորտ։ Դրան ոչ մի չափով չի կարող փոխարինել, իր ողջ կարևորությամբ հանդերձ, հաշվետվությունների և ընտրությունների կազմակերպական կողմը։ Դրան առավել ևս չի փոխարինի և ոչ մի բանավեճ։

ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոն, քննարկելով ժողովրդական տնտեսության զարգացման 1985 թվականի առաջին կիսամյակի արդյունքները, սահմանեց կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների խնդիրները՝ տարեկան պլանը և ամբողջ հնգամյակը ավարտելու ուղղությամբ։ Նշելով էկոնոմիկայի և բնակչության բարեկեցության հետագա աճը, ձմեռային շրջանում թույլ տրված ետ մնալու աստիճանական հաղթահարումը, Կենտկոմի Քաղբյու-

րոն շեշտեց, որ ժողովրդական տնտեսության ոչ բոլոր ճյուղերն են հասել աճի պլանավորված տեմպերին։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը յոթ ամիսների ընթացքում մեծացել է 3,5 տոկոսով՝ տարեկան պլանի 3,9 տոկոսի դեպքում։

Իհարկե, մենք աչքաթող չենք անում այն, որ ի տարբերություն անցյալի, այսօր խոսքը լիակշիռ պլանային թվերի մասին է, առանց տխրահռչակ շտկումների, որոնք խարխլում են գիտական պլանավորումը։ Հայտնի է, թե որքան անհաշտ էր Լենինը այն ղեկավարների նկատմամբ, որոնք արտոնություններ և թեթև աշխատանք էին խնդրում իրենց համար։ Ուսանելի է, օրինակ, այն նկատողության պատմությունը, որ հայտարարվել էր պետպլանի առաջատար աշխատողներից մեկին, որը, ինչպես Լենինն էր գրում, «պետք է... ոչ թե «խնդրեր, որ ես կամ բավարարեմ հիդրոտորֆին նախահաշվով նախատեսվածից ավելի, կամ թույլ տամ սահմանափակելու նրա գործունեությունը»,— ինձ ուղղված այդպիսի «խնդրանքը» պետական հարաբերությունների այբուբենը չհասկանալ է,— այլ պետք է մտածեր, թե ինչպես կատարի ժողկոմխորհի *(և ոչ թե իմ)*... որոշումը...» (ԵԼԺ, հ. 54, էջ 222)։ Հասարակությանը պետք են սպառման միանգամայն կոնկրետ առարկաներ՝ սահմանված քանակով և տեսականիով, որոշակի որակով, և ոչ թե բացատրություններ, թե ինչու ինչ-որ բան չի արվել (որին առանձին տնտեսական աշխատողներ բավականին վարժվել են վերջին տարիներս)։ Բայց քանի որ այսուհետ ևս ոչ ոքի զիջում չի արվելու, նրանք պետք է ամուր իրենց ձեռքը վերցնեն տնտեսության կառավարման բոլոր լծակները և արագացնեն տեմպերը։ Յուրաքանչյուր աշխատատեղում, արտադրական տեղամասում, յուրաքանչյուր ձեռնարկությունում հարկավոր է որոշել, թե մնացած ժամանակի համար ինչպիսի՞ տեմպ է անհրաժեշտ տարեկան պլանի կատարումը ապահովելու համար, և խստորեն հետևել այդ կողմնորոշչին։

Առանց շտկումների տարեկան և հնգամյա պլանների կատարումը լուրջ քննություն է ղեկավար կադրերի, կուսակցական կազմակերպությունների համար։ Դա մարդկանց կազմակերպելու և իրենց ետևից տանելու, մասսաների նախաձեռնությունն ու ստեղծագործությունն օգտագործելու, ռեսուրսները խելացի տնօրինելու, ռեզերվները գործի դնելու նրանց ընդունակության լավ ստուգում կլինի։ Ըստ ամենայնի հենց դրան են կոչված նպաստելու առաջիկա հաշվետվություններն ու ընտրությունները, հատկապես սկզբնական կուսկազմակերպություններում, որոնց «գործունեության գոտում»՝ աշխատավորական կոլեկտիվներում էլ վերջին հաշվով լուծվում է բոլոր պլանային առաջադրանքների բախտը։

Պրակտիկան վկայում է, որ տնտեսական շոշափելի արդյունքներ կարելի է համեմատաբար արագ ստանալ, եթե գործի դրվեն կազմակերպական-տնտեսական և սոցիալական ռեզերվները։ Եվ այստեղ առանձնապես կարևոր է ակտիվացնել մարդկային գործոնը, հասնել այն բանին, որ ամեն մեկն իր տեղում աշխատի բարեխիղճ և լրիվ նվիրումով։ Ցավոք, հենց այդպիսի ներդաշնակ աշխատանքը կարգավորելու կարողությունն է, որ պակասում է որոշ կուսակցական կոմիտեներին և տնտեսական ղեկավարներին։ Բավական է ասել, որ 1984 թվականին աշխատաժամանակի կորուստների հետևանքով արդյունաբերության և շինարարության մեջ մի քանի միլիարդ ռուբլու արտադրանք պակաս է ստացվել։ Հարյուր հազարավոր աշխատողներ կտրվում են իրենց հիմնական գործունեությունից՝ երկար ու բարակ նստում են խորհրդակցություններում և սեմինարներում, զբաղվում են գեղարվեստական ինքնագործունեությամբ, մասնակցում են մարզական մրցումների, հանգստանում կամավոր ժողովրդական դրուժինաներում կատարած հերթապահությունների դիմաց և այլն։ Աշխատաժամանակի այդ վատնումը ծանր բեռի նման ընկնում է էկոնոմիկայի վրա։ Պետք է վճռականորեն վերջ տալ դրան։

Ինչպես հայտնի է, 1983 թվականին ընդունվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի որոշումը աշխատանքի սոցիալիստական կարգապահության ամրապնդման գործի ուժեղացման մասին, ինչպես նաև ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը բնակչության սպասարկմամբ զբաղ-



ված ձեռնարկությունների և հիմնարկությունների աշխատանքի ռեժիմում կարգուկանոն հաստատելու մասին։ Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում հենց ժամանակն է խստիվ պահանջել նրանցից, ովքեր անմիջականորեն պատասխանատվություն են կրում այդ դիրեկտիվ պահանջների կատարման համար։

Վերջապես, առանձնապես սուր հարկավոր է դնել տեխնոլոգիական կարգապահությունը պահպանելու հարցը, քանի որ դրա ամրապնդումը տնտեսական աճի վիթխարի ռեզերվներ է պարունակում։ Արդեն գոյություն ունեցող տեխնոլոգիաների ավելի խստիվ պահպանման հաշվին կարելի է նշանակալի արդյունքների հասնել արտադրանքի որակի բարձրացման, դրա արտադրության համար կատարվող ծախսումների կրճատման գործում։

Մի խոսքով, բանն այն է, որ բոլոր ուղղություններով իրականացվի համառ, նպատակասլաց հարձակում անտարբերության և պասսիվության, թափթփվածության, անպատասխանատվության, վատնողության դեմ, ամեն կերպ հաստատվի ազնիվ, բարեխիղճ աշխատանքի հեղինակությունը, հետևողականորեն արմատավորվեն տնտեսավարման ինտենսիվ մեթոդները։ Կուսակցական կազմակերպությունները պետք է հասնեն նրան, որ նշված խնդիրների լուծումը դառնա յուրաքանչյուր տնտեսական ղեկավարի, բանվորի, ինժեների կարևորագույն գործը, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ընդհանուր հոգացողության առարկան։

Երկրի վիթխարի շինարարական հրապարակում անհետաձգելի գործերի ամբողջ գումարից այժմ ամենալարված ուշադրություն են պահանջում հիմնական ֆոնդերի գործարկումը և բնակարանների շինարարությունը։ Օրինակի համար, կիսամյակի ընթացքում շահագործման է հանձնվել տարեկան պլանով նախատեսված բնակելի տների ընդհանուր տարածության մեկ երրորդ մասը միայն։ Իսկ Նովգորոդի, Արխանգելսկի, Աստրախանի, Չիտայի մարզերում ավելի պակաս՝ մոտ 25 տոկոսը։ Բնակարանային շինարարության տարեկան ծրագիրը կատարելու համար, իսկ դա պետք է անել ինչ գնով ուզում է լինի, երկրորդ կիսամյակում կպահանջվի աշխատել ավելի մեծ լարումով։ Անհրաժեշտ է այդ հարցերը առավելագույն չափով սրել բնակարանային շինարարության հետ առնչվող բոլոր կազմակերպությունների հաշվետու-ընտրական կուսակցական ժողովներում։

Կոմունիստների, բոլոր մակարդակների կուսակցական կոմիտեների տեսադաշտում պետք է մշտապես գտնվի տրանսպորտի, և առաջին հերթին երկաթուղային տրանսպորտի աշխատանքը։ Տարվա սկզբին այստեղ եղած, ուղղակի ասենք, ծանր դրությունը աստիճանաբար շտկվում է։ Այդ միտումը հարկավոր է զարգացնել ու ամրապնդել՝ հետևողականորեն բարձրացնելով տրանսպորտային կուսկազմակերպությունների կազմակերպչական և դաստիարակչական գործունեության մակարդակը։

Արդի պայմաններում առանձնահատուկ նշանակություն է ստանում վառելիքի, հումքի և նյութերի խնայողական օգտագործումը։ Ռեսուրսների տնտեսումը արտադրական կոլեկտիվների համար այժմ սահմանվում է որպես պետական պլան։ Դրությունն ավելի է վատացել նրանով, որ առաջին կիսամյակում հումքային ճյուղերը, և ամենից առաջ նավթի ու անտառային տնտեսության ճյուղերը, ինչպես նաև մետալուրգիան ժողովրդական տնտեսությանը չտվեցին որոշ քանակությամբ նավթ, անտառանյութ և գլանվածք։ Մեծ պարտք ունեն Տյումենի նավթագործները, Վոլոգդայի մարզի փայտամթերողները, Դոնեցկի և Դնեպրոպետրովսկի մետալուրգները։ Յուրաքանչյուր տնտեսական ղեկավար և կուսակցական աշխատող պարտավոր է գիտակցել այն փաստը, որ խնայողության խիստ ռեժիմի, ռեսուրսախնայող տեխնոլոգիաների կիրառման հաշվին միայն կարելի է ապահովել արտադրության նախանշված պլանների իրականացումը՝ դրանից անելով համապատասխան գործնական հետևություններ։ Այս հարցերը պետք է գտնվեն հաշվետու-ընտրական ժողովների, կոնֆերանսների և համագումարների մասնակիցների տեսադաշտում։

Պատասխանատու խնդիրներ են ծառացած գյուղի աշխատողների առջև։ Հետևողականորեն ձգտելով կատարել պարենային ծրագիրը, անհրաժեշտ է գլխավոր ուշադրությունը կենտրոնացնել երկրագործության և անասնապահության արտադրանքի արտադրության ու գնումների հետագա մեծացման վրա։ Հարկ կլինի կատարել ո՛չ միայն ընթացիկ տարվա պլանները, այլև նշանակալի չափով լրացնել այն, ինչ պակաս է տրվել ընթացիկ հնգամյակի առաջին տարիներին։

Հացահատիկի գնումների բնագավառում պետությանը մեծ պարտք ունեն Ուկրաինան, Ղազախստանը, Մոլդավիան, Ալթայի երկրամասը, Օմսկի, Վոլգոգրադի, Սարատովի մարզերը, անասունների և թռչնի վաճառքի բնագավառում՝ Վիննիցայի, Կիրովի, Խմելնիցկու, Ուրալի մարզերը, կաթինը՝ Պերմի, Զապորոժիեի, Սուրխանդարիայի և մի քանի այլ մարզեր։

Չի կարելի թուլացնել ուշադրությունը անասնապահության նկատմամբ։ Վերջին ժամանակներս այդ ճյուղով հիմնավորապես զբաղվեցին կուսակցական շատ կազմակերպություններ։ 1984 թվականին, չնայած կերերի գործում եղած դժվարություններին, անասունների ու թռչնի, կաթի գնումներն ավելացան 4 տոկոսով, իսկ ընթացիկ տարում անասունների և թռչնի վաճառքը պետությանը ավելացավ 4, կաթինը՝ 1 տոկոսով։ Դրա հետ մեկտեղ անասնապահության այդ հիմնական մթերքների գնման կիսամյա պլանը չկատարեցին Ուզբեկական ՍՍՀ-ն, Կալինինի և Կեմերովոյի մարզերը, կաթի գնումների պլանը՝ Արևմտյան և Արևելյան Սիբիրը, Հեռավոր արևելքը։

Անասնապահության մթերքների արտադրության ավելացումը կարող է ապահովվել կերի առատության դեպքում միայն։ Եվ եթե խոսենք այն գլխավոր օղակի մասին, որից այժմ այդ գործում պետք է բռնեն տնտեսությունների կուսակցական կազմակերպությունները, դա կերարտադրության առաջավոր տեխնոլոգիայի յուրացումն է մասնագետների, մեխանիզատորների կողմից, որը հնարավորություն կտա եղանակային անբարենպաստ պայմաններում անգամ ստանալ լիարժեք կերեր։

Ցավոք, կերերի արտադրության ու պատրաստման առաջավոր շատ եղանակներ, որոնց մասին շատ վաղուց է խոսվում, դեռ ամենուրեք չէ, որ տարածում են գտել։ Կուսակցական կազմակերպությունները պետք է նույնպես ամենաեռանդուն կերպով ձեռնամուխ լինեն ֆուրաժային նպատակների համար հացահատիկի ծախսումը կրճատելու ուղղությամբ Բելգորոդի մարզային կուսկազմակերպության՝ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հավանությանն արժանացած փորձի լայն տարածմանը։ Պետք է շարունակ նկատի ունենալ, որ հանրային անասնապահության ապահովումը կերերով ո՛չ միայն տնտեսական, այլև քաղաքական մեծ նշանակություն ունեցող խնդիր է։ Եվ այդ գործին պետք է վերաբերվել ինչպես հարկն է, թույլ չտալով բարեհոգություն, խնամառուական տրամադրություններ։

Այսօր արդեն անհետաձգելի հոգացողության առարկա պետք է լինի եկող տարվա բերքը։ Այդ հոգացողությունն զգալի չափով կապված է հացահատիկային կուլտուրաների մշակության ինտենսիվ տեխնոլոգիաների արմատավորման հետ։ Ինտենսիվ տեխնոլոգիաները դառնում են բերքի կայունության բարձրացման և բարձրորակ հացահատիկի արտադրության ավելացման գլխավոր ուղղությունը։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն պաշտպանել է եկող տարվա բերքի համար ավելի քան 30 միլիոն հեկտար տարածության վրա հացահատիկային կուլտուրաների մշակությունը ինտենսիվ տեխնոլոգիաներով կատարելու վերաբերյալ առաջարկությունները։ Բայց դրան, իհարկե, հարկավոր է հիմնովին պատրաստվել։

Այսպիսով, մինչև տարվա վերջը հարկ կլինի լուծել տնտեսական բավական բարդ խնդիրներ։ Այդ խնդիրները կատարելու, տարին և ամբողջ ընթացիկ հնգամյակը հաջողությամբ ավարտելու, գալիք հնգամյակում վստահելի մեկնարկի հուսալի հիմք դնելու համար անհրաժեշտ են առավելագույն պատրաստվածություն, կատարյալ ինքնանվիրում աշխատանքում։ Այդ նպատակին պետք է ուղղել սոցիալիստական մրցությունը՝ դրան հաղորդելով իսկական



մարտական ոգի, ներգործուն բնույթ։ Դրան պետք է ենթարկել մեր ողջ քաղաքական և կազմակերպչական աշխատանքը մասսաներում։

Համագումարին հաջողությամբ նախապատրաստվելու, երկրի առջև նրա զարգացման ներկա փուլում ծառացած նպատակներին առավել արագ հասնելու համար բացառիկ մեծ նշանակություն է ունենալու այն, թե ինչպես կանցնեն առաջիկա հաշվետվություններն ու ընտրությունները կուսակցության մեջ։

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը խնդիր առաջադրեց դրանք անցկացնել այնպես, որ առավելագույն չափով նպաստեն կոմունիստների ստեղծագործական ակտիվության և պատասխանատվության բարձրացմանը, կուսակցական կազմակերպությունների մարտունակության ուժեղացմանը, մասսաների հետ ունեցած կապերի ամրապնդմանը և, վերջին հաշվով, կուսակցության ղեկավար դերի բարձրացմանը։ Ուստի հաշվետվություններն ու ընտրությունները նախապատրաստելիս և անմիջականորեն դրանց անցկացման ընթացքում հարկավոր է հանգամանորեն, համակողմանի վերլուծել հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշխատանքը, գործերի վիճակը յուրաքանչյուր կազմակերպությունում՝ սկսած կուսխմբերից, արտադրամասային և սկզբնական կուսակցական կազմակերպություններից, քննադատաբար իմաստավորել կուտակված փորձը, սահմանել տնտեսական, կազմակերպչական և դաստիարակչական գործունեության բարելավման կոնկրետ ուղիներն ու եղանակները։

Կարևոր է, և դրանով պետք է խստորեն ղեկավարվել, որ ժողովները, կոնֆերանսները, համագումարներն անցնեն իրոք գործարար կերպով, առանց պարադայնության, ինքնագոհության. կարծիքների անկեղծ փոխանակության, կուսակցական սկզբունքայնության և պահանջկոտության իրադրության մեջ։

Ժողովներում, կոնֆերանսներում, համագումարներում, անտարակույս, գլխավոր տեղը կգրավեն սոցիալիստական տնտեսավարման, էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացման հարցերը։ Գործի շահերը պահանջում են, որ նախահամագումարյան հաշվետու- ընտրական կամպանիայի կենտրոնում դրվեն գիտատեխնիկական առաջընթացի և արտադրանքի որակի պրոբլեմները։

Հունիսին—հուլիսին հանրապետություններում, երկրամասերում և մարզերում տեղի ունեցան կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովներ։ Դրանցում խոսք եղավ այն կոնկրետ խնդիրների մասին, որոնք բխում են գիտատեխնիկական առաջընթացի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում առաջադրված նպատակադրույթներից։ Առաջիկա հաշվետվություններն ու ընտրությունները պետք է լայնորեն օգտագործել, որպեսզի այդ խնդիրների քննարկումը փոխադրվի սկզբնական կուսակցական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, այսինքն՝ այնտեղ, որտեղ մշակվում, արմատավորվում և յուրացվում են նոր տեխնիկան և տեխնոլոգիան։ Չէ՞ որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման համապետական պրոբլեմը ժողովրդական տնտեսության մեջ ունի միանգամայն կոնկրետ բեկումներ յուրաքանչյուր արտադրական ստորաբաժանման համար՝ ընդհուպ մինչև աշխատատեղը։ Եվ ամեն տեղ էլ կան արտադրության արդեն եղած միջոցների ավելի արդյունավետ օգտագործման, առկա ռեսուրսների լավագույն կիրառման ռեզերվներ։ Բայց չի կարելի միայն դրանով բավարարվել։ Հարկավոր է արտադրության այնպիսի ռացիոնալացում, տեխնոլոգիայի այնպիսի նորացում, որոնք իսկական հեղափոխական տեղաշարժեր ապահովեն աշխատանքի արտադրողականության գործում, արտադրության ֆոնդատարության և նյութատարության իջեցման գործում։ Հենց այդպիսի մոտեցումներին պետք է նպատակամղվեն կուսակցական կազմակերպությունները։

Պետք է առանձնապես հոգալ այն մասին, որ այդ թեմայի շուրջը հիրավի գործարար, առարկայական, ինքնաքննադատական խոսակցություն տեղի ունենա հաշվետու-ընտրական կուսակցական ժողովներում՝ մինիստրություններում և գերատեսչություններում, գիտահետազոտական ինստիտուտներում, նախագծային և կոնստրուկտորական կազմակերպություններում, բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Կարևոր է այդ կոլեկտիվները կողմնորոշել դեպի այնպիսի լուծումների որոնումները, որոնք հնարավորություն

տային, հրաժարվելով մյուս երկրներում նախկինում անցած փուլերը կրկնելուց, տեխնոլոգիական առաջանցում ապահովել ժողովրդական տնտեսության ամբողջական ճյուղերում։ Կուսակցական կազմակերպությունները կոչված են ըստ ամենայնի բարձրացնելու այդ կոլեկտիվների պատասխանատվությունը ստեղծագործական, արդյունավետ աշխատանքի համար։

Համագումարներում և կոնֆերանսներում էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման պրոբլեմները քննարկելիս անհրաժեշտ է հանգամանորեն պարզել գործերի վիճակը կապիտալ շինարարության մեջ, խոր մտածել, թե ի՞նչ է հարկավոր նախաձեռնել կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու համար, ինվեստիցիոն այնպիսի քաղաքականություն իրականացնելու համար, որն առավելագույնս համապատասխանի ժողովրդական տնտեսության ինտենսիվացման շահերին։

Գիտատեխնիկական առաջընթացի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում սուր քննադատության ենթարկվեց կուսակցության Կրասնոյարսկի երկրկոմը՝ շինարարության մեջ ուժերի ու միջոցների փոշիացման, երկրամասի արտադրողական ուժերի զարգացմանը հատկացված կապիտալ ներդրումների ցածր արդյունավետության համար։ Ակնհայտ է, որ խորհրդակցությունում արված քննադատությունից գործնական հետևություններ պետք է անեն շատ մինիստրություններ և կուսակցական կոմիտեներ։

Եվ ամենից առաջ պետք է ապահովել վճռական շրջադարձ դեպի կապիտալ ներդրումների կառուցվածքի վերակառուցումը՝ մեծացնելով գործող ձեռնարկությունների, արտադրամասերի, արտադրական տեղամասերի տեխնիկական վերազինման և վերակառուցման համար կատարվող ծախսումների բաժինը։ Այս ուղին ապացուցել է իր բարձր արդյունավետությունը։ Այստեղ գաղտնիքը, ի միջի այլոց, շատ պարզ է։ Նման մոտեցման դեպքում առաջավոր տեխնիկան հանձնվում է համապատասխան փորձ ունեցող, լավ կազմակերպված կոլեկտիվների ձեռքը, որակյալ բանվորական կադրերի ձեռքը։ Հենց դրանով է ապահովվում արագ հատույցը, հատկապես եթե արտադրության վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը իրականացվում են կոմպլեքսայնորեն և սեղմ ժամկետներում։ Եվ այդ մասին հարկավոր է խոր ու հանգամանալից խոսակցություն բացել հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում, երկրի տնտեսական և սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծի քննարկման ժամանակ։

Էկոնոմիկայի ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման պրոբլեմների լուծմանը լրիվ չափով պետք է ծառայի տնտեսական մեխանիզմի և կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործումը։ Իհարկե, կառավարման վերակառուցման աշխատանքի հիմնական մասն իրականացվելու է կենտրոնացված կարգով։ Այդ նպատակին ուղղված միջոցառումներն այժմ մշակվում են։ Բայց սխալ կլիներ ձեռքները ծալած նստել ու սպասել, թե դրանք երբ կընդունվեն։ Տեղերում շատ բան կարելի է անել արդեն այսօր։ Կառավարման հանրապետական, երկրամասային և մարզային մարմիններում, ձեռնարկություններում և միավորումներում քիչ չեն ավելորդ օղակները, որոնք առանց գործին վնաս հասցնելու կարող են խոշորացվել կամ վերացվել։

Կառավարման կատարելագործման հետ կապված մի շարք հարցեր երկրում իրենց լուծումը գտել են հենց ներքևից եկող նախաձեռնությամբ։ Հիշենք թեկուզ արտադրական և գիտաարտադրական միավորումների ստեղծումը արդյունաբերության, ագրոարդյունաբերական միավորումների ստեղծումը գյուղատնտեսության մեջ, կոնստրուկտորների ու տեխնոլոգների աշխատանքի վարձատրության ու խթանման նոր համակարգի արմատավորումը։ Եվ չափազանց օգտակար կլինի հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում, համագումարներում դնել նույնանման հարցեր, համատեղ մտածել, թե ուրիշ ինչ կարելի է անել այդ ուղղությամբ, ելնելով կուտակված փորձից, կառավարման կազմակերպման ինչպիսի փոփոխություններ կոնկրետ արդյունքներ կտան։



Միաժամանակ արժեր ընդհանրացնել ձեռնարկությունների և միավորումների աշխատանքի պրակտիկան տնտեսափորձի պայմաններում, ուշադիր նայել, թե դա ինչ է տվել և ուրիշ ինչն է կասեցնում նախաձեռնությունը և թուլացնում աշխատավորական կոլեկտիվների պատասխանատվությունը, ինչ էր հարկավոր իրականացնել տնտեսավարման առաջավոր ձևերն ու մեթոդներն ամրապնդելու և ավելի լայնորեն օգտագործելու համար։ Դա հատկապես կարևոր է անել այժմ, քանի որ սկսվում է որակապես նոր փուլ փորձի զարգացման գործում, ըստ էության սկսվում է անցումը տնտեսավարման ամբողջական համակարգի ստեղծման։ «Տնտեսավարման նոր մեթոդների լայն տարածման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա դրանց ներգործության ուժեղացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմանը համապատասխան 1986 թվականի հունվարի 1-ից աշխատանքի նոր պայմանների են փոխադրվում այն ձեռնարկություններն ու միավորումները, որոնցում թողարկվելու է երկրում արտադրվող արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին։

Հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում պետք է ամենալուրջ ուշադրություն հատկացնել տնտեսական հաշվարկի արմատավորմանը և այդ հիման վրա աշխատավորական կոլեկտիվների պատասխանատվության և շահագրգռվածության բարձրացմանը աշխատանքի վերջնական արդյունքներով։ Սա հատկապես վերաբերում է մեր էկոնոմիկայի ագրարային սեկտորին։ Այստեղ առաջին պլանի վրա է դրվում կոլեկտիվ կապալի ըստ ամենայնի զարգացումը տնտհաշվարկային հարաբերությունների հիմքի վրա։ 1983 թվականին այդ հարցը քննարկվեց Բելգորոդում կայացած համամիութենական խորհրդակցությունում, իսկ ընթացիկ տարվա սկզբին հանրապետական և զոնալ խորհրդակցություններ անցկացվեցին Լենինգրադի և Տոմսկի մարզերում։ Այժմ իսկ ժամանակն է հանրագումարի բերելու այն, ինչ արվել է յուրաքանչյուր հանրապետությունում, երկրամասում, մարզում՝ խորհրդակցություններում տրված հանձնարարականները իրագործելու նպատակով։

Խնդիրն այն է, որ ապահովենք ո՛չ միայն բրիգադների ու տեղամասերի, այլև ամբողջությամբ վերցրած կոլտնտեսությունների ու սովխոզների, ներառյալ նաև դրանց կառավարչական օղակների անցումը տնտհաշվարկի։ Այդպիսի աշխատանքի ուսանելի փորձ է կուտակվել Ստավրոպոլի երկրամասում։ Այն հնարավորություն է ընձեռում որակապես նոր առաջընթաց քայլ կատարել՝ ինքնափոխհատուցելիության փոխադրել երկրամասի բոլոր գյուղատնտեսական ձեռնարկությունները։ Այդ պրոցեսի սկիզբն արդեն դրվել է։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումից հետո գյուղատնտեսության մեջ բարենպաստ նախադրյալներ են ստեղծվել իրական տնտհաշվարկի համար։ Բավական է ասել, որ անցյալ տարի վնասով աշխատող տնտեսությունների թիվը, 1982 թվականի համեմատությամբ, կրճատվել է գրեթե 3 անգամ։ Կոլտնտեսությունների և սովխոզների շահույթը 1,3 միլիարդ ռուբլուց աճել հասել է մինչև 20 միլիարդի։ Որոշում է ընդունվել 1986 թվականի համար պահպանել գյուղատնտեսական արտադրանքի գնման գների հավելավճարները վնասով աշխատող և սակավ շահութաբեր տնտեսությունների, ինչպես նաև արտապլանային արտադրանքի համար։ Դա բոլոր տնտեսություններին հնարավորություն է ընձեռում ընդլայնված վերարտադրություն իրականացնելու սեփական միջոցների հաշվին։

Տնտեսական և սոցիալական խնդիրների լուծման վրա կուսակցական ազդեցության արդյունավետ միջոց է ադմինիստրացիայի գործունեության և կառավարման ապարատի աշխատանքի վերահսկողությունը՝ սերտորեն կապված ընդունվող որոշումների կատարման կազմակերպման հետ։ Կարևոր է, որ այդ հզոր լծակը լրիվ ուժով օգտագործվի արտադրության զարգացման, տեխնիկական առաջընթացի, տնտեսավարման մեթոդների բարելավման շահերի համար։ Հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում պետք է հանգամանորեն քննության առնել, թե սկզբնական կուսակցական կազմակերպությունները գործնականորեն ինչպես են իրականացնում այդպիսի վերահսկո-

ղությունը, համապատասխան հանձնաժողովների կազմը ամրապնդել գործունյա և սկզբունքային կոմունիստներով:

Կուսակցության կանխանշած սոցիալ-տնտեսական խոշոր վերափոխումների իրականացման մարզում առաջնակարգ նշանակություն ունի ձեռնարկությունների և կազմակերպությունների կառավարման գործում աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացումը: Այդ բանի համար լայն ասպարեզ է բացում երկու տարի սրանից առաջ ընդունված ՍՍՀՄ համապատասխան օրենքը: Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարությունը քննության առավ, թե այդ օրենքի կատարումը ինչպես է ընթանում այնպիսի մի խոշոր ձեռնարկությունում, ինչպիսին է Մինսկի ավտոգործարանը: Ուղղակի ասենք, այդ կարևոր միջոցն այստեղ օգտագործվում է ամենևին ոչ լրիվ չափով, ինչը որոշ չափով արտացոլում է նաև ընդհանուր պատկերը: Ինչո՞ւ է այդպես ստացվում: Ամենից առաջ այն պատճառով, որ որոշ տնտեսական, արհմիութենական աշխատողներ չեն վերակառուցել իրենց աշխատանքի ոճը և հաճախ հարցերը լուծում են առանց աշխատավորական կոլեկտիվների կարծիքը հաշվի առնելու: Կուսակցական կոմիտեները պետք է սովորեն իրենք և աշխատավորական կոլեկտիվներին սովորեցնեն՝ լիովին օգտվել օրենքով իրենց վերապահված իրավունքներից:

Այժմ ակտիվորեն մշակվում է հնգամյա պլանը: Այդ առնչությամբ հասարակական մեծ նշանակություն է ստանում Կույբիշևի մարզի «ԱվտոՎԱԶ» միավորման կոլեկտիվի նախաձեռնությունը: Վոլգայի ավտոմոբիլաշինարարները հնարավորություններ են հայտնաբերել գերազանցելու արտադրության ու դրա արդյունավետության աճի, գիտատեխնիկական առաջընթացի հնգամյա պլանի՝ իրենց համար սահմանված կանխագծումները: Միավորման կոլեկտիվը որոշել է հնգամյակի նախանշված թվերի համեմատությամբ արտադրանքի թողարկումն ավելացնել 150 միլիոն ռուբլով՝ պակասեցնելով աշխատողների թվաքանակը, հասնել ավտոմոբիլների մետաղատարության և վառելիքի տեսակարար ծախսման իջեցման, երեք տարով կրճատել մեքենաների բազային մոդելների արտադրության նախապատրաստման ժամկետը: Ավտոգործարանցիների նախաձեռնության սկզբունքային առանձնահատկությունն այն է, որ կոլեկտիվը խնդրել է իր պարտավորությունները ներառնել պետական պլանի մեջ: Կենտկոմի քաղբյուրոն հավանություն տվեց ավտոգործարանցիների նախաձեռնությանը: Կուսակցական կազմակերպությունները կոչված են զբաղվելու հայրենասիրական այդ նախաձեռնության լայն տարածմամբ, ամենուրեք վերահսկելու սոցիալական և տնտեսական զարգացման 1986 թվականի և ամբողջ տասներկուերորդ հնգամյակի լարված պլանների մշակումը, ապահովելու կոմունիստների կողմից այդ հարցերի շահագրգիռ քննարկումը հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում:

Արդի փուլում մեր առջև ծառացած խնդիրները պահանջում են ավելի բարձրացնել ամբողջ կազմակերպական-կուսակցական և գաղափարախոսական աշխատանքի մակարդակը: Եվ առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիան պետք է ակտիվորեն ծառայի դրան: Քաջ հայտնի է, որ կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը, մասսաների վրա նրանց ունեցած ազդեցության ուժը պայմանավորված են ամենից առաջ կոմունիստների ակտիվությամբ, այն բանով, թե նրանք ինչպես են կատարում իրենց ավանգարդային դերը: Ուստի հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում հարկավոր է հանգամանորեն վերլուծել կուսակցական կազմակերպությունների և կոմիտեների կատարած աշխատանքը կուսակցական շարքերի որակական կազմը բարելավելու և դրանք ամրապնդելու, բոլոր տեղամասերում և հատկապես բրիգադներում կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու, կոմունիստներին դաստիարակելու, կուսակցության քաղաքականության իրականացման, նրա դիրեկտիվների անշեղ կատարման համար նրանց պատասխանատվությունը բարձրացնելու ուղղությամբ:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը պահանջեց ուժեղացնել կուսակցության յուրաքանչյուր անդամի պատասխանատվությունը հասարակական



պարտքի նկատմամբ նրանց ունեցած վերաբերմունքի համար, կուսակցական որոշումների կատարման, կուսակցականի մաքուր և ազնիվ կերպարի համար: Պետք է նկատի ունենալ, որ հասարակության մեջ պայքարը հանուն կազմակերպվածության, կարգապահության հաջող կլինի միայն այն ժամանակ, երբ կարգուկանոնն ապահովված լինի կուսակցության յուրաքանչյուր օղակում: Ահա ինչու հաշվետվությունների և ընտրությունների ժամանակ, հատկապես սկզբնական կուսկազմակերպություններում, անհրաժեշտ է սկզբունքային, խստապահանջ խոսակցություն բացել այն մասին, թե կատարո՞ւմ է արդյոք յուրաքանչյուր կոմունիստ կանոնադրական պահանջները, հանդիսանո՞ւմ է արդյոք նա օրինակ աշխատանքում և կենցաղում, հասարակական կյանքում: Այդ կապակցությամբ օգտակար է ուշադիր հետևել, թե որքան լրիվ ու արդյունավետ են օգտագործվում կոմունիստների դաստիարակության, նրանց ակտիվության բարձրացման և կուսակցական կարգապահության ամրապնդման զանազան միջոցներն ու ձևերը:

Վերջին ժամանակներս Վրացական հանրապետական, Կրասնոդարի երկրամասային, Լենինգրադի և Ուլյանովսկի մարզային ու մի շարք այլ կուսկազմակերպություններում տարածվել է ժողովներում կոմունիստների հաշվետվությունների քննարկման պրակտիկան: Այդպիսի հաշվետվությունները կոլեկտիվում կուսակցության անդամների ավանգարդային դերի բարձրացման արդյունավետ միջոցներից մեկն են: Փորձը վկայում է, որ կոմունիստների հաշվետվությունները իրենց ընկերների առջև զգալի չափով նպաստում են նրանց ակտիվության զարգացմանը, կարգապահ են դարձնում, զգաստացնում են մարդկանց և վերջին հաշվով դրական ազդեցություն ունենում կուսակցական կազմակերպությունների կյանքի ու գործունեության վրա: ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարությունը, քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի գրությունը այդ հարցի մասին, հավանություն տվեց կոմունիստների հաշվետվություններ անցկացնելու պրակտիկային և նպատակահարմար համարեց լայնորեն տարածել այն:

1921 թվականի հոկտեմբերին ելույթ ունենալով քաղլուսվարների առջև՝ Լենինն ասում էր, որ կոմունիստների առջև ծառացած են երեք գլխավոր թշնամիներ. «առաջին թշնամին կոմունիստական սնապարծությունն է, երկրորդը՝ անգրագիտությունը և երրորդը՝ կաշառքը» (ԵԼԺ, հ. 44, էջ 209): Այդ օրերից շատ ժամանակ է անցել: Երկրորդ թշնամուն՝ անգրագիտությանը, որի պայմաններում մարդ ընդհանրապես կանգնած է լինում քաղաքականությունից դուրս, մենք վաղուց ենք վերջ տվել: Շատ բան է արվել նաև սնապարծությունն ու բյուրոկրատիզմը հաղթահարելու համար: Սակայն գաղտնիք չէ, որ վերջին տարիներին մենք վերստին հարկադրված եղանք բախվելու այնպիսի մի չարագույն թշնամու հետ, ինչպիսին է կաշառքը: Այդ չարիքի դեմ մղվող պայքարում ոչ մի կոմպրոմիս և ոչ մի կիսամիջոց հանդուրժելի չէ:

Նույնպիսի անհաշտ պայքար պետք է մղվի սոցիալական մի չարիքի դեմ ևս: Անհրաժեշտ է, որ հաշվետու-ընտրական ժողովներում ամենալուրջ ուշադրություն նվիրվի հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարման ուղղությամբ կուսակցության և կառավարության մշակած միջոցառումների գործնական իրականացմանը, նորից ամբողջ ուժով շեշտվի կոմունիստների դերը այդ աշխատանքում, նրանց անձնական օրինակի նշանակությունը: Դա առավել ևս կարևոր է, քանի որ այդ արատին դեռևս ենթակա են որոշ կոմունիստներ, կոմերիտականներ, ղեկավար աշխատողներ: Առանձին ընկերներ հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո էլ անհրաժեշտ չեն գտնում հրաժարվել այդ կործանարար սովորությունից:

Ամեն ոք պետք է իր համար պարզի, որ պայքարը հարբեցողության դեմ կարճատև կամպանիա չէ: «Չոր օրենքի» ընդունումը ամբողջ երկրի մասշտաբով, ինչպես այդ առաջարկում են որոշ ընկերներ ՍՄԿԿ Կենտկոմին ուղղած իրենց նամակներում, ըստ երևույթին, պրոբլեմը չի լուծի, բայց յուրաքանչյուր ընտանիքի, յուրաքանչյուր կոլեկտիվի սթափ ապրելակերպի համար

պայքարել կարելի է և պետք է։ Իհարկե, դա այնքան էլ հասարակ բան չէ, քանի որ խոսքը արմատացած սովորությունների ու սովորույթների հաղթահարման մասին է։ Այդպիսի աշխատանքը կպահանջի բոլոր կուսակցական կազմակերպությունների չթուլացող երկարատև ջանքերը։

Ձեռնարկելով բոլոր միջոցները, որպեսզի հաշվետու-ընտրական կամպանիան առավելագույն չափով նպաստի կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը, ներկուսակցական դեմոկրատիայի հետագա խորացմանը, կուսակցական կյանքի լենինյան նորմերի պահպանմանը, հարկավոր է առանձնահատուկ ուշադրություն նվիրել քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը՝ առաջացող դժվարությունների ու հակասությունների լուծման, աշխատանքի ոճի կատարելագործման, բոլոր մակարդակների ղեկավարության կոլեկտիվության ամրապնդման այդ փորձված մեթոդին։

Չի կարելի չտեսնել, որ կադրերի նկատմամբ հարգանք ցուցաբերելու մասին կուսակցության ճիշտ պահանջի քողի տակ որոշ տեղերում սկսել են երևան գալ ամեն ինչի նկատմամբ հանդուրժողականության տրամադրություններ, իջել է պահանջկոտությունը աշխատողների գործարար և բարոյաքաղաքական հատկանիշների նկատմամբ։ Դրա հետևանքով մեր ղեկավար կադրերի մի մասի շրջանում, որոշ աշխատավորական կոլեկտիվներում տարածվել են բարեհոգությունը, ինքնահանգստացումը, բթացել է թերությունների նկատմամբ անհաշտվողականության զգացումը, ավելի արագ առաջ շարժվելու, ավելի շատ բանի հասնելու ձգտումը։ Երբեմն քննադատությունը գնահատում են որպես ղեկավարի հեղինակությունը խարխլելու, կոլեկտիվի վրա ստվեր գցելու փորձ, որը էական վնաս է հասցնում գործին։ Առանց կատարվածի քննադատական վերլուծության անհնար է ո՛չ միայն լրացնել չկատարվածը, այլև սահմանել ապագայի ճիշտ կողմնորոշիչները։

Առանձին կուսակցական կազմակերպություններում ակնհայտորեն նսեմացված է քննադատության և ինքնաքննադատության դերը։ Հաճախ այն արտահայտվում է կոկված ձևով, գլխավորապես ցանկությունների և խնդրանքների ձևով։ Շատ դեպքերում քննադատությունը տարվում է գերազանցապես վերևից և չափազանց թույլ է ծավալվում ներքևից։ Օրինակի համար, վերջին երկու տարում Կիրգիզիայի կոմկուսակցության Կենտկոմի, կուսակցության Խաբարովսկի երկրկոմի, Ալմա Աթայի մարզկոմի պլենումներում ոչ մի քիչ թե շատ լուրջ դիտողություն չի արվել բյուրոյի, քարտուղարների հասցեին։ Հաճախ կոմունիստների պասսիվությունը բացատրվում է հենց նրանով, որ նրանց արտահայտած քննադատական դիտողությունները կամ բոլորովին հաշվի չեն առնվում և կամ դրանցից գլուխներն ազատում են քննադատությունն ընդունելու մասին պատրաստի արտահայտություններով և թերությունները ուղղելու խոստումներով։ Այդ ամենը հակասում է մեր կուսակցության ավանդույթներին, և պետք է վճռականորեն վերջ դնել նման պրակտիկային։

Թողտվության և անսկզբունքայնության իրադրության մեջ երբեմն փարթամ ուղտափշերի նման առատորեն տարածվում են ստորաքարշությունն ու քծնանքը, սնապարծությունը, մոռացության են տրվում կադրերի ընտրության կուսակցական սկզբունքները և պետական շահերը։ Հենց այդ մասին վերջերս խոսք եղավ կուսակցության Չիմքենդի մարզկոմի պլենումում։ Կուսակցական և պետական կարգապահության խոշոր խախտումների համար մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ասկարովը ազատվեց զբաղեցրած պաշտոնից։ Այս օրինակը մի ավելորդ անգամ հաստատում է, թե որքան կարևոր է ժամանակին և բոլշևիկորեն խստապահանջ կերպով ուղղել շեղված ղեկավարին, այդպիսով կանխել նրա բարոյական անկումը։

Բոլոր ժողովներում և կոնֆերանսներում անհրաժեշտ է ստեղծել այնպիսի իրադրություն, որ, ինչպես մատնանշվեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում, կուսակցության յուրաքանչյուր անդամ կարողանա լրիվ չափով օգտվել առաջարկություններ անելու և դիտողություններ արտահայտելու իր կանոնադրական իրավունքից, որ քննադատական ոչ մի դիտողություն անուշադրության չմատնվի։ Կուսակցական մասսայի, բոլոր աշխատավորների կարծիքը



մենք կկարողանանք ավելի լավ բացահայտել, երբ ամբիոնը լայնորեն տրամադրենք կուսակցության շարքային անդամներին, ստորին կուսակցական ակտիվին։

Նախահամագումարյան հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում կոմունիստները պետք է պահանջկոտության բարձր չափանիշով մոտենան ընտրովի ղեկավար մարմինների գործունեության գնահատմանը, համակողմանիորեն վերլուծեն նրանց աշխատանքի ոճը, անկեղծորեն արտահայտվեն, թե դա որքանով է համապատասխանում ժամանակի ոգուն, այսօրվա պահանջներին։

Այս առնչությամբ ես կվկայակոչեմ Վորոնեժի մարզի Պեսկի գյուղից կուսակցության անդամ Վ. Կովալյովի՝ ՍՄԿԿ Կենտկոմի հասցեով ստացված և, իմ կարծիքով, բավական հրատապ նամակը։ Նա գրում է. որպես շրջանային թերթի արտահաստիքային թղթակից ինքը հաճախ է առիթ ունենում ներկա գտնվելու բրիգադների, տեղամասերի, կոլտնտեսությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների հաշվետու-ընտրական կուսակցական ժողովներին։ «Եվ ահա թե ինչն է աչքի զարնում,— շարունակում է նա։ — Հաշվետու զեկուցման քննարկումից հետո տրվում է կուսկոմիտեի, կուսբյուրոյի կամ կուսկազմակերպության քարտուղարի աշխատանքի գնահատականը։ Բայց ինչպիսի՞ գնահատական։ Ցանկացած աշխատանքի դեպքում էլ այդ գնահատականը միևնույնն է՝ «բավարար»։

Հիշում եմ,— գրում է ընկեր Կովալյովը,— հաշվետվություն էր տալիս «Պեսկովսկի» կոլտնտեսության բուսաբուծության արտադրամասի կուսբյուրոյի քարտուղարը։ Ասելիք ոչինչ չուներ։ Ամբողջ տարում չի անցկացվել կուսակցական ոչ մի ժողով, կուսբյուրոյի ոչ մի նիստ։ Վատ են եղել նաև տնտեսական գործերը։ Բայց, որքան էլ տարօրինակ լինի, կուսբյուրոյի աշխատանքը ճանաչվեց բավարար։

Փաստը եզակի չէ։ Կուսբյուրոյի կամ նրա քարտուղարի վատ աշխատանքը հաճախ քողարկվում է նրանով, որ ընդհանուր առմամբ կոլեկտիվը աշխատել է և ինչ-որ արդյունքի հասել։ Իսկ եթե ցուցանիշները կոլեկտիվում այնքան էլ ծանրակշիռ չեն, ապա առաջադրվում է ոչ պակաս «համոզիչ» փաստարկ՝ անբավարար գնահատականը, իբր, կխարխլի շրջանային կուսակցական կազմակերրության հեղինակությունը։ Այսպես, ցանկալին ներկայացվում է իրականության տեղ»։

Նամակի հեղինակն իրավացի է։ Իսկ թե ինչի է հանգեցնում նման ներողամտությունը, մենք բազմիցս հնարավորություն ենք ունեցել համոզվելու։ Օրինակի համար, նախորդ երկու հաշվետու-ընտրական կամպանիաների ընթացքում սկզբնական կազմակերպությունների աշխատանքին գործնականորեն ոչ մի անբավարար գնահատական չի տրվել Ուզբեկստանում, Ռոստովի մարզում, Մոսկվայի առևտրական ձեռնարկությունների և հիմնարկների ոչ մի կուսկազմակերպության։ Մի՞թե դա համապատասխանում էր գործերի իսկական վիճակին։ Խոսքը, իհարկե, այս կամ այն գնահատականի քանակի, տոկոսների մասին չէ։ Բանն այլ է։ Կոլեկտիվում, կուսկազմակերպությունում տիրող իսկական իրադրության օբյեկտիվ, խստապահանջ գնահատականը հարկավոր է, որպեսզի ճիշտ գործեն և ոչ թե անջրպետվեն ռեալ պրոբլեմներից, ստեղծելով լոկ թղթային բարեհաջողության խաբկանք։ Ժամանակներն այլ են։

Հաշվետու-ընտրական կամպանիան հնարավորություն է ընձեռում լուծելու հասունացած կադրային հարցերը այնտեղ, որտեղ իհարկե, դա անհրաժեշտ է։ Ըստ ամենայնի հոգատար վերաբերմունք ցուցաբերելով փորձված աշխատողներին, դրա հետ մեկտեղ հարկ կլինի ազատվել անձեռներեց ու իներտ մարդկանցից, որոնք խորշում են մասսաների մեջ տարվող կենդանի կազմակերպչական աշխատանքից։ Հիշենք, թե այդ հարցը ինչպես անհաշտվողաբար էր դնում Լենինը, երբ հարկավոր էր հեղափոխության և քաղաքացիական պատերազմի հերոիկայից անցնել տնտեսական շինարարության «պրոզային»։

«Իմ համար «տաղտկալի է», «անհետաքրքիր է», «անհասկանալի է» այս աշխատանքը... — գրում էր նա,— ավելի լավ է նրան «ազատել աշխատանքից» և արխիվ հանձնել, որ նա չկարողանա վնաս հասցնել, որովհետև նա չի ուզում կամ չի կարողանում մտածել պայքարի տվյալ աստիճանի, տվյալ էտապի յուրահատկության մասին» (ՆԼԺ, հ. 44, էջ 130)։ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի նպատակադրումները լիովին համապատասխանում են լենինյան պահանջներին, և դրանք պետք է հետևողականորեն կենսագործել, ամենավճռական կերպով խափանելով անձնական նվիրվածության, ազգակցության, հայրենակցության հատկանիշներով աշխատողներին առաջ քաշելու ամեն մի փորձ։ Չի կարելի մոռանալ այն դասերը, որ այս բնագավառում ևս մեզ տվել է պրակտիկան։

Ընտրովի կուսակցական ակտիվի կազմավորմանը պետք է մոտենալ հատուկ պատասխանատվությամբ, ղեկավարության մեջ առաջ քաշել քաղաքականապես հասուն, հեղինակավոր ու ձեռներեց կոմունիստների, որոնք ունեն նորի զգացում, սերտորեն կապված են կուսակցական մասսաների, աշխատավորների հետ, ընդունակ են նրանց տանելու իրենց ետևից։ Մի խոսքով, ընտրովի մարմնի կազմը պետք է լավագույնս համապատասխանի կուսակցության առջև ծառացած խնդիրներին, ունենա իսկական ներկայացուցչական բնույթ։

Անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեների և կուսբյուրոների կազմում, առաջվա նման, ընտրվեն բանվորներ և շարքային կոլտնտեսականներ, ժողովրդական տնտեսության մասնագետներ, հոգ տարվի գիտատեխնիկական մտավորականության ներկայացուցիչներին ընտրելու մասին։ Նախորդ հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում կուսակցության երկրկոմների, մարզկոմների, քաղկոմների և շրջկոմների բյուրոների կազմի մեջ մտել էին երկուական բանվոր կամ կոլտնտեսական։ Դա իրեն արդարացրեց, և օգտակար կլիներ այդպիսի պրակտիկան ամրապնդել ամենուրեք։

ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներին համապատասխան վերջին ժամանակներս սկսել են ավելի ակտիվորեն ղեկավար աշխատանքի առաջ քաշվել կանայք։ Միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմների, կուսակցության երկրկոմների և մարզկոմների քարտուղարների մեջ նրանց թիվը անցած երկու տարում աճել է ավելի քան երկու անգամ։ Կանանց թիվը ավելի է մեծացել կուսակցության քաղկոմների և շրջկոմների քարտուղարների, կուսակցական կոմիտեների բաժինների վարիչների մեջ։ Դրա հետ մեկտեղ, օրինակ, Օրենբուրգի, Ռովնոյի, Խարկովի, Բրյանսկի և մի քանի այլ մարզային կուսկազմակերպություններում մինչև այժմ պատշաճ ուշադրություն չի նվիրվել այդ հարցին։

Պետք է հետևողականորեն հասնել այն բանին, որ ընտրովի կուսակցական մարմիններում, այդ թվում և դրանց ղեկավարների թվում անհրաժեշտ կերպով ներկայացված լինեն այն ազգությունները, որոնք կան կուսկազմակերպությունների կազմում։ Այս առումով դրական փոփոխություններ են տեղի ունենում հանրապետական կուսկազմակերպությունների մեծ մասում։ Եվ, այնուամենայնիվ, այդպիսի գիծ ավելի մեծ հետևողականությամբ հարկավոր էր վարել Բելոռուսիայում, Լիտվայում, Բաշկիրիայում։

Անկասկած կարևոր է, որ հաշվետու-ընտրական կամպանիան ավարտվելուց հետո կուսակցական մարմինների կազմում լինի կադրերի հուսալի ռեզերվ, որը հնարավորություն կտա հետագայում խուսափելու կուսակցական կոմիտեների ղեկավարների կոոպտացիայի պրակտիկայից։

Ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում ամենայն սկզբունքայնությամբ ու սրությամբ պետք է նորից դնել ղեկավար կադրերի բարոյական կերպարի հարցը։ Դա նաև քաղաքական մեծ հարց է՝ մասսաների հետ կուսակցության ունեցած կապերի ամրության, ժողովրդի մեջ նրա հեղինակության հարց։

Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում ոչ մի կերպ չի կարելի ուշադրությունից դուրս թողնել այն, թե ինչպես են կատարվում կոմունիստ-ղեկավարների զանցանքների հարցերի քննարկման ժամանակ սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերի բարձրացման մասին ՍՄԿԿ



Կենտկոմի հիմնադրույթները։ Բոլորովին վերջերս այդ հարցը վերահսկողության կարգով քննության առնվեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարությունում։ Կուսակցական կազմակերպությունների մեծ մասում դրությունը շեշտակի փոխվել է, ղեկավար կոմունիստների անհատական գործերը քննարկվում են կոմունիստների ժողովներում։ Սակայն մի քանի կուսակցական կոմիտեներ անհրաժեշտ հետևություններ չեն արել իրենց համար։ Կալուգայի, Մորդվայի, Չուվաշիայի կուսակցական կազմակերպություններում այդ գործերն առաջվա նման քննարկվում են, որպես կանոն, շրջանցելով սկզբնական կազմակերպությունները։ Պետք է մի անգամ ևս շեշտել, որ նման պրակտիկան մեծ վնաս է հասցնում կադրերի դաստիարակության գործին, ուստի և անթույլատրելի է։

Մի խոսքով, կուսակցության հաշվետվությունների և ընտրությունների ժամանակաշրջանում պետք է սևեռուն ուշադրություն նվիրել այն բանին, որ մեր կադրերը տիրապետեն կուսակցական ղեկավարման լենինյան ոճին՝ նրա ողջ հարստությամբ։ Ոճի կատարելագործումը կամպանիա չէ, այլ մշտական խնդիր։ Աշխատանքի լենինյան ոճի համար մղվող պայքարը կամպանիայի վերածելը վատ ոճի նշան է։

Կուսակցական կոմիտեների խնդիրը ո՛չ միայն այն է, որ անշեղորեն կատարելագործեն սեփական գործունեության ոճը, այլև այն, որ աջակցեն սովետների, արհմիությունների, կոմերիտմիության աշխատանքի մեթոդների բարելավմանը բոլոր մակարդակներում։ Հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել կոմերիտական կազմակերպությունների ակտիվացման հարցերին։ Հայտնի է, թե որքան սկզբունքորեն է դնում, ինչպիսի մեծ նշանակություն է տալիս դրանց կուսակցության Կենտրոնական կոմիտեն։ Եվ շատ կարևոր է, որ հետևողականորեն ու անշեղորեն կենսագործվեն այն հիմնադրույթները, որոնք այդ առթիվ տրված են կոմերիտմիության կուսակցական ղեկավարման մասին Կենտկոմի որոշման մեջ։

Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման, երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում նրա դերի բարձրացման հարցերը պետք է արժանի տեղ գրավեն ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստության ընթացքում, առաջիկա հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում։ Պետք է ամեն կերպ նպաստել կոմերիտմիության հետագա ակտիվացմանը երկրի քաղաքական և սոցիալ-տնտեսական կյանքում, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ինքնագործ գեղարվեստական և տեխնիկական ստեղծագործության, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման, պատանիների ու աղջիկների ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման մարզում երիտասարդության ավանդի մեծացմանը։ Ճիշտ են վարվում այնտեղ, որտեղ կուսակցական կոմիտեների և կուսկազմակերպությունների բյուրոների կազմում ընտրում են որպես կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներ աշխատող երիտասարդ կոմունիստներին, նրանց պատրաստում են կուսակցական աշխատանքի։ Այդպիսի պրակտիկան, ինչպես հաստատում է, մասնավորապես, Լենինգրադի փորձը, լիովին արդարացնում է իրեն։ Կոմերիտմիության ղեկավարման, երիտասարդության դաստիարակության համար Կենտրոնական կոմիտեն այսուհետ ևս ողջ խստությամբ պահանջելու է կուսակցական կազմակերպություններից։

Հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում արժանի տեղ կգրավեն գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հարցերը։ Հարկ կլինի ուշադիր քննության առնել, թե գործնականորեն ինչպես են իրականացվում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի հիմնադրույթները, 1984 թվականին կայացած համամիութենական գիտագործնական կոնֆերանսում ընկեր Մ. Ս. Գորբաչովի առաջադրած դրույթները։ Անվիճելի է, վերջին ժամանակներս գաղափարախոսական աշխատանքում նկատվել են ակնհայտ փոփոխություններ դեպի լավը։ Բայց այնուամենայնիվ այն երբեմն նպատակին չի հասնում, պատշաճ ազդեցություն չի ունենում մարդկանց վրա։

Եվ ընդհանրապես արժե տեսնել, թե մենք չափից ավելի չե՞նք հրապուրվում արդյոք մասսայական, երբեմն ցուցադրական միջոցառումներով, որոն-

ցից ստացված հատույցը երբեմն անհամամասնական է ծախսված ջանքերին։ Մինչդեռ գաղափարախոսական աշխատանքում հենց հարկավոր է ոչ թե «ընդհանուր», ոչ թե հախուռն, այլ շերտավորված մոտեցում մարդկանց հանդեպ, ուշադրություն կոնկրետ մարդու նկատմամբ, նրա շահերի, նյութական և հոգևոր պահանջմունքների նկատմամբ։

«Գաղափարաքաղաքական դաստիարակությունը,— շեշտում է Մ. Ս. Գորբաչովը,— նրա բոլոր ձևերով պետք է առավելագույն չափով զուգակցված լինի կյանքի հետ, մեր հայրենիքի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու խնդիրների հետ։ Սա է այն փոփոխությունների էությունը, որ անհրաժեշտ է այսօր մտցնել գաղափարախոսական աշխատանքում։ Բայց այդ ուղղությամբ ծավալվել պետք է ավելի եռանդուն, առանց ժամանակ կորցնելու։ Այդ բանին կարելի է հասնել՝ գաղափարախոսական աշխատանքի ծանրության կենտրոնը փոխադրելով միայն աշխատավորական կոլեկտիվները, սկզբնական կուսկազմակերպությունները։ Եվ հաջողությունն այնքան ավելի մեծ կլինի, որքան ավելի լայնորեն ու ակտիվորեն դրան կմասնակցեն ղեկավար կադրեր, աշխատավորների սուր հարցերին ո՛չ միայն ժամանակին ու փաստարկված պատասխան տալու, այլև դրանք գործնականորեն լուծելու ընդունակ մարդիկ։

Գաղափարախոսական հարցերի թվում հատկապես հրատապ և հանրայնորեն նշանակալի են այն հարցերը, որոնք կապված են հանրակրթական դպրոցի ռեֆորմի հետ։ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարությունը վերջերս լսեց կուսակցության Գորկու մարզկոմի հաշվետվությունը ռեֆորմի իրականացման ընթացքի մասին։ Պետք է ասել, որ տեղերում արդեն քիչ բան չի արվել, հատկապես աշակերտների աշխատանքային նախապատրաստման, ուսուցիչների որակավորման բարձրացման համար պայմաններ ստեղծելու ուղղությամբ։ Սակայն հիմքեր կան խոսելու նաև այն մասին, որ մի քանի կուսակցական կոմիտեներ նկատելիորեն իջեցրել են ակտիվությունը դպրոցական ռեֆորմն իրականացնելու գործում, բավականաչափ հաստատակամություն չեն ցուցաբերում նախանշված պլանների կատարման ասպարեզում։ Դպրոցներում շատ բան մնում է հին ձևով։ Ուստի հարկ կլիներ յուրաքանչյուր կուսկազմակերպությունում շահախնդրորեն քննարկել դպրոցական աշխատանքի վերակառուցման հարցերը այն հաշվով, որ բարձրացվի դպրոցների, ուսումնարանների և բազային ձեռնարկությունների կոմունիստների պատասխանատվությունը դրա արդյունքների համար։

Երկրի ներքին զարգացման պրոբլեմների լուծումը ամենասերտ կերպով կապված է ՍՄԿԿ արտաքին քաղաքականության հետ։ Մեր կուսակցությունը անհրաժեշտ հետևություններ է անում միջազգային բարդ իրադրությունից։ Եվ խաղաղության սպառնացող վտանգին առաջին պատասխանն է կուսակցական շարքերի առավելագույն մոբիլիզացվածությունը, իսկական բոլշևիկյան հոգատարությունը էկոնոմիկայի աճը արագացնելու, երկրի պաշտպանունակությունը ամրապնդելու մասին։

Հաշվետու-ընտրական կամպանիան մի բնական առիթ է, որպեսզի մենք ավելի ուշադիր նայենք, թե կոնկրետ գործերն ինչ վիճակում են այս կամ այն ճյուղում, այս կամ այն արտադրական կոլեկտիվում՝ արտահանության համար հատկացված արտադրանքի թողարկման, դրա տեսականիի ընդլայնման գործում։ Պահանջկոտության ամենաբարձր չափանիշով պետք է մոտենալ այն ամենի օգտագործմանը, ինչ մենք ստանում ենք ներմուծմամբ, առաջին հերթին սարքավորումների օգտագործմանը։ Մեր մի շարք տեղերում պատշաճ կարգուկանոն չկա արտասահմանյան տեխնիկան շահագործման հանձնելու գործում, և կուսկազմակերպությունները ոչ մի կերպ չեն կարող հաշտվել դրա հետ։

Այժմ դժվար է գտնել այնպիսի ձեռնարկություն կամ գիտահետազոտական կազմակերպություն, որոնց ներկայացուցիչները պարբերաբար չլինեն արտասահմանում՝ ուսումնասիրելով կամ ուրիշներին հաղորդելով առաջավոր տեխնիկական կամ տեխնոլոգիական փորձը։ Ինչպե՞ս են զարգանում գիտա-



տեխնիկական համագործակցությունն ու արտադրական կոոպերացումը ՏՓԽ-ի անդամ երկրների ձեռնարկությունների և ինստիտուտների հետ։ Գործնական կիրառություն գտնո՞ւմ են արդյոք նորույթները։ Ինչպե՞ս ավելի արագ ու ավելի մեծ հատույց ստանալ ձեռք բերվող լիցենզիաներից։ Այս բոլոր հարցերը ևս չի կարելի ուշադրությունից դուրս թողնել։

Ներկայիս հաշվետվությունների և ընտրությունների կարևոր տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ միաժամանակ և դրանց հետ անմիջականորեն կապված, իրականացվելու է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների և երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների նախագծերի քննարկումը։ Լարված աշխատանք է կատարվում այդ փաստաթղթերի վրա։ Նկատի է առնվում դրանք քննարկել Կենտկոմի հերթական պլենումում և այնուհետև այն հանձնել շրջանային, քաղաքային, մարզային, երկրամասային կուսակցական կոնֆերանսների և միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների համագումարների քննարկմանը։ Առաջիկայում մեզ սպասում է մեծ աշխատանք, որի նպատակն է այդ փաստաթղթերի բովանդակությունը, քաղաքական իմաստը հասցնել յուրաքանչյուր մարդու, դրանք օգտագործել կոմունիստական աշխարհայացքը հաստատելու համար, աշխատավորների ամենալայն զանգվածների սոցիալական ակտիվությունը զարգացնելու համար։

Հաշվետու-ընտրական կամպանիան կտևի մի քանի ամիս։ Եվ շատ կարևոր է ապահովել այդ կամպանիայի ամենօրյա կոնկրետ ղեկավարումը, կազմակերպել կուսակցական ժողովների, կոնֆերանսների ու համագումարների հստակ նախապատրաստումն ու անցկացումը։ Դրա պատասխանատվությունն ընկնում է կուսակցական կոմիտեների, դրանց բոլոր բաժինների և, իհարկե, առաջին հերթին կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժինների վրա։

Նրանք պարտավոր են հանգամանորեն հրահանգավորել ակտիվին բոլոր հարցերի վերաբերյալ, նախապես կազմել ժողովների և կոնֆերանսների անցկացման գրաֆիկը, կարգավորել հաշվետվությունների և ընտրությունների ընթացքի մասին ինֆորմացիայի օպերատիվ ստացումը այն հաշվով, որ առանց հապաղելու վերացվեն բացահայտված թերությունները։ Ինչպես վկայում է ստեղծված պրակտիկան, նպատակահարմար է ժողովների և կոնֆերանսների առաջին արդյունքները քննության առնել կուսակցական կոմիտեների բյուրոներում։ Այս ամենը չի նշանակում, իհարկե, որ հաշվետու-ընտրական ժողովների և կոնֆերանսների նախապատրաստումն ու անցկացումը պետք է կանոնակարգել մինչև մանրուքները։ Գլխավորը գործի բովանդակալից լինելն է։

Որպեսզի հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշխատանքի մասին ընտրովի կուսակցական մարմինների զեկուցումները լինեն խոր և ինքնաքննադատական, իսկ դրանց քննարկումը՝ ակտիվ և կոնստրուկտիվ, պետք է նախապատրաստական աշխատանքի ողջ կոմպլեքսին մասնակից դարձնել ընտրովի կուսակցական ակտիվին։ Այդ դեպքում միայն և՛ զեկուցումը, և՛ դրա քննարկումը, ժողովի, կոնֆերանսի, համագումարի ողջ ընթացքը կհանդիսանան պրակտիկայի և կյանքի առաջադրած պրոբլեմների կոլեկտիվ իմաստավորման օրինակ։

Պետք է հատուկ ուշադրություն նվիրել ստորին օղակում հաշվետվությունների և ընտրությունների անցկացմանը։ Կոմկուսակցությունների կենտկոմների, երկրկոմների, մարզկոմների, քաղկոմների և շրջկոմների քարտուղարներն ու բյուրոների անդամները, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարները պետք է մասնակցեն սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներին, կոնֆերանսներին։ Ընդ որում խոսքը, իհարկե, պարզապես ներկա լինելու մասին չէ։ Հարկավոր է օգնել կոմունիստներին՝ առանձնացնելու գլխավորը, հրատապ հարցերը, ճիշտ որոշելու հետագա աշխատանքի ծրագիրը։

Օգտագործելով անցած տարիների փորձը՝ պետք է կազմակերպել կուսակցության հաշվետվությունների և ընտրությունների ընթացքի լայն լուսա-

բանումը մեր մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ։ Ընդ որում կարևոր է, որ հրապարակումները լինեն օբյեկտիվ, բոլշևիկորեն կրքոտ, չշրջանցեն, ինչպես ասում են, սուր անկյունները, լռության չմատնեն կոնկրետ աշխատողների հասցեին արված քննադատական դիտողությունները։ Եվ, իհարկե, անհրաժեշտ կլինի ո՛չ միայն ամենամանրակրկիտ կերպով հաշվի առնել բոլոր այն դիտողությունները, որոնք կարտահայտվեն ժողովներում, կոնֆերանսներում, համագումարներում, այլև օպերատիվորեն գործնական միջոցներ ձեռնարկել այդ դիտողություններն ու առաջարկություններն իրագործելու նպատակով։ Լայն հրապարակայնությունն ավելի կամրապնդի ժողովրդի վստահությունը կուսակցության նկատմամբ։

Հաշվետու-ընտրական կամպանիան պետք է դառնա կուսակցական ուժերի ստուգատես, առավելագույնս նպաստի բոլոր կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների, բոլոր աշխատավորների մոբիլիզացմանը՝ կատարելու կոմունիստական արարման այն նոր խնդիրները, որոնք առաջադրելու է ՍՄԿԿ հերթական, XXVII համագումարը։ Կուսակցության հաշվետվություններին և ընտրություններին միշտ էլ ցուցաբերվում է հասարակական լայն հետաքրքրություն։ Այժմ առանձնահատուկ ուշադրություն բևեռված կլինի դրանց։ Եվ պետք է հաշվետու-ընտրական կամպանիային, նախահամագումարյան ողջ աշխատանքին հաղորդել այնպիսի բնույթ, որ ժողովուրդը ակնառու կերպով տեսնի, որ կուսակցությունը, կուսակցական կազմակերպությունները դիտեն կենսական պրոբլեմները, դրանցից խույս չեն տալիս, այլ վստահորեն ձեռնամուխ են լինում դրանց լուծման։ Այս է մեր հասարակության մեջ վստահության ու լավատեսության մթնոլորտի ամրապնդման, առաջ ընթանալու, կոմունիստական շինարարության՝ առանց բացառության բոլոր տեղամասերում գործի դրվածքը բարելավելու վճռականության գրավականը։

«Коммунист», № 12, 1985.

---

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ՝ ԱՐԴԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ լուսավորության անցած ուսումնական տարին համընկավ այնպիսի կարևոր իրադարձությունների, ինչպիսիք են ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի մարտյան և ապրիլյան պլենումները, որոնք նոր լիցք հաղորդեցին երկրի հասարակական ու տնտեսական կյանքի բոլոր բնագավառներին. ավելի ակտիվ ու ներգործուն դարձավ սովետական պետության արտաքին քաղաքական կուրսը։ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը առաջ քաշեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ծրագիր, որոշում ընդունեց կուսակցության XXVII համագումար հրավիրելու մասին, նշեց այդ մեծ համաժողովին նախապատրաստվելու խնդիրները։

Քաղաքի ու գյուղի աշխատավորները, ոգեշնչված հարազատ կուսակցության կանխագծումներով, հաջողությամբ են ավարտում տասնմեկերորդ հնգամյակը, աշխատանքային նոր սխրանքներով դիմավորում ՍՄԿԿ XXVII համագումարը։ Ելնելով երկրի, կուսակցության առջև ծառացած նոր պրոբլեմներից՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն սահմանել է 1985—1986 ուսումնական տարում կուսակցական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության խնդիրներն ու անելիքները։

Անցած ուսումնական տարին բնորոշ էր նաև նրանով, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ձեռնամուխ եղան ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» որոշման դրույթների իրականացմանը։ Այդ հարցերը հանգամանորեն քննարկվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1985 թ. հունվարյան պլենումում։

Ընդունված որոշման մեջ պարզ ու որոշակի նշվեցին քաղաքային ու շրջանային կուսակցական կոմիտեների և սկզբնական կազմակերպությունների, գաղափարախոսական հիմնարկների, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների խնդիրները ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների լույսի ներքո կուսակցության նոր պահանջները մինչև վերջ կենսագործելու համար։

Պլենումում նշվեց, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները, իրենց գործունեությունը վերակառուցելով հունիսյան պլենումի որոշումներին համապատասխան, հետևողական աշխատանք են տանում մեր մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման համար։ Ավելի հարուստ է դառնում կուսակցական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության բովանդակությունը։ Մեծ ուշադրություն է նվիրվում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների, կուսակցության համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների ու նյութերի, կուսակցական կարևորագույն փաստաթղթերի ուսումնասիրմանը։ Մարքս-լենինյան ուսուցման մեջ կարևոր տեղ է հատկացվում զարգացած սոցիալիզմի կատարելագործման տեսության ու պրակտիկայի պրոբլեմներին, ՍՄԿԿ սոցիալական ու տնտեսական քաղաքականության, սոցիալիստական ապրելակերպի, ազգային հարաբերությունների ու սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, աշխատավորությանը ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենա-

ամենից առաջ պետք է ունենան ուսուցումը կոմունիստական շինարարության արդի փուլում լուծվող խնդիրներին զուգակցելու, միջազգային ներկա բարդ դրությունում ունկնդիրներին ճիշտ կողմնորոշելու և գործնական անհրաժեշտ հետևություններ անելու ունակություն զարգացնելու պատշաճ տեսական ու մեթոդական կարողություն։

Կուսակցության քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կազմակերպություններն պետք է արտադրության մեջ աշխատող բարձրագույն կրթությամբ կոմունիստների՝ արտադրության ղեկավարների, մասնագետների ուսուցումը կազմակերպեն այնպես, որ նրանք հիրավի դառնան արդի պահանջների մակարդակով մտածող և աշխատավորության կոլեկտիվ ստեղծագործական միտքը կուսակցության քաղաքականության իրականացմանը նպատակամղելու կարողությամբ օժտված կադրեր։

Զարգացած սոցիալիստական հասարակարգում աճող սերնդի կոմունիստական դաստիարակության տեսության և պրակտիկայի հրատապ հարցերն են ուսումնասիրում ժողովրդական կրթության բնագավառի մոտ 46 հազար մանկավարժներ։ Այս օղակում պարապմունքները հիմնականում անցնում են սահմանված կարգին համապատասխան։ Շատ շրջաններում (Մյասնիկյան, Սպիտակ, Հրազդան, Ղափան, Արտաշատ, Նոյեմբերյան, Ախուրյան) հենակետային դպրոցներում անցկացվել են բաց պարապմունքներ, առարկայական կոնսուլտանտների ուժերով ընդհանրացվել, տարածվել ու արմատավորվել է առաջավոր փորձը։ Սակայն այս բնագավառում ևս տակավին առկա են լուրջ թերություններ, որոնցից հիմնականն այն էր, որ առանձին դպրոցների ղեկավարներ պարապմունքները վերածում են մանկավարժական խորհրդի նիստի, քննարկում են ուսումնասիրվող պրոբլեմի հետ առնչություն չունեցող առօրեական հարցեր։ Նման երևույթները կանխելու համար քաղկոմներն ու շրջկոմները, հանրապետության լուսավորության մինիստրության մեթոդական խորհուրդը պետք է ուժեղացնեն վերահսկողությունը։ Այդ գործին մեծապես կնըպաստի դպրոցների կուսկազմակերպությունների ամրապնդումը։

Հանրապետության գաղափարախոսական աշխատողների ստվար ջոկատներից մեկը՝ գիտական ու գեղարվեստական մտավորականությունը, ավելի քան 20 հազար մարդ, իր աշխարհայացքային գիտելիքները խորացնում է տեսական ու մեթոդաբանական սեմինարներում կամ ինքնուրույն անհատական պլանով ուսումնասիրում է մարքս-լենինյան տեսությունը։ Կատարվող ուսումնասիրություններն ու դրանց արդյունքների քննարկումները կուսակցության շրջկոմների և սկզբնական կազմակերպությունների կողմից այդ սեմինարների նկատմամբ ուշադրության ուժեղացումը, առաջավոր փորձի ընդհանրացումն ու տարածումը նպաստում են դրանց արդյունավետության բարձրացմանը։

Անցած ուսումնական տարում գեղարվեստական մտավորականության քաղաքական ուսուցման ուժեղացման նպատակով մշակութային հիմնարկներում, ստեղծագործական միություններում ձևավորվեցին գիտական կոմունիզմի 43 նոր դպրոցներ, որոնք ուսումնասիրում էին «Սոցիալիստական գեղարվեստական կուլտուրայի զարգացման հրատապ պրոբլեմները» դասընթացը։ Դա, ինչ խոսք, լավ օգնություն է գեղարվեստական մտավորականությանը։ Սակայն վատն այն էր, որ, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, կուսակցության ոչ բոլոր շրջկոմներն ու սկզբնական կազմակերպություններն են անհրաժեշտ օգնություն կազմակերպում այդ դպրոցներին, ապահովում կուսակցական վերահսկողություն։

Հարկ է նշել, որ բոլոր թերությունները չէ, որ հաղթահարվել կամ վերացվել են։ Դրանք առանձնապես ակնառու են կուլտուրայի հիմնարկներում և ստեղծագործական միություններում։ Պարզապես թույլ են եղել կուսակցական օգնությունն ու վերահսկողությունը մտավորականության այդ ջոկատի գաղափարատեսական մակարդակի բարձրացման նկատմամբ, որի հետևանքով ստեղծագործական միությունների անդամների մի ստվար մասը դուրս է մնացել քաղաքական ուսուցումից։ Դրանով պետք է բացատրել նաև այն իրողությունը, որ մի շարք սեմինարներում (Սունդուկյանի անվան պետական



ակադեմիական թատրոն, «Հայֆիլմ» կինոստուդիա, երգչախմբային ընկերություն և այլն) ունկնդիրները լրջորեն չեն զբաղվում ընտրված պրոբլեմների ուսումնասիրմամբ, շատ դեպքերում քննարկվող հարցերը չեն կապվում կոլեկտիվի ստեղծագործական խնդիրների հետ, կամ, ընդհակառակն, քննարկվում են նեղ մասնագիտական բնույթի հարցեր՝ դրանք չառնչելով տեսական-մեթոդաբանական խնդիրների հետ։ Գեղարվեստական մտավորականության սեմինարներում պետք է ուժեղացնել ուսուցման հակապրոպագանդիստական ուղղվածությունը, մերկացնել Արևմուտքի կեղծ, հետադիմական կոնցեպցիաները մշակույթի և բարոյականության հարցերում։ Խնդիրն այն է, որ ուսուցումն արդյունավետ ձևով ծառայի գեղարվեստական մտավորականության մեջ մարքս-լենինյան գիտական աշխարհայացքի խորացմանն ու ամրապնդմանը, կուլտուրական կյանքի երևույթները կուսակցական, դասակարգային դիրքերից ընահատելու կարողության զարգացմանը։

Կուսակցական ուսուցման վերը նշված օղակների, ինչպես և կուսակցական-տնտեսական և գաղափարախոսական ակտիվի, երիտասարդ կոմունիստների դպրոցների առաջնահերթ խնդիրն է՝ նոր ուսումնական տարում բոլոր հարցերի ուսումնասիրությունը կազմակերպել ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի և գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին նվիրված խորհրդակցության մշակած կուրսի իրականացման նշանաբանով։ Կուսակցությունը ներկայումս, ավելի քան երբևէ, պահանջում է քաղաքական ուսուցումը ամենասերտ կերպով շաղկապել գործնական խնդիրների, սոցիալ-տնտեսական ռեալ պրոցեսների հետ։ Իսկ դա նշանակում է տեսական դրույթների մեջ որոնել ու գտնել ժամանակակից ներքին ու միջազգային զարգացման բարդ ու կնճռոտ պրոբլեմների լուծման բանալին։ Դա է նաև սոցիալիստական հասարակությանը խորթ ու նրա զարգացման օրենքներին ու սկզբունքներին անհարիր հակոտնյա երևույթների վերացման, դրանց առաջացման հիմքերի բացասման և հասարակության անդամների մեջ դրանց դեմ անզիջում պայքարի կամքի ու հոգեբանության ձևավորման ուղին։

Հետզհետե կատարելագործվում է աշխատավորության տնտեսագիտական կրթությունը, ավելի ծանրակշիռ է դառնում դրա ներդրումը ժողովրդատնտեսական խնդիրների գաղափարախոսական ապահովման գործում։ Ուսուցման այս օղակում կա ավելի քան 585 հազար մարդ, այդ թվում կոմունիստական աշխատանքի դպրոցներում՝ մոտ 487 հազար բանվորներ և կոլտնտեսականներ կամ նյութական արտադրության մեջ ընդգրկված այդ կատեգորիայի համարյա բոլոր աշխատավորները։ Միջնակարգ և բարձրագույն կրթությամբ մոտ 97 հազար աշխատողներ ու մասնագետներ ներգրավված են կոնկրետ էկոնոմիկայի դպրոցներում և տնտեսագիտական սեմինարներում։ Աշխատավորության կողմից կուսակցության տնտեսական քաղաքականության հրատապ պրոբլեմներին նվիրված դասընթացների զանգվածային ուսումնասիրումը, ինչ խոսք, հզոր լծակ է սուբյեկտիվ գործոնի դերի բարձրացման, մարդկանց տընտեսագիտական գիտելիքների հարստացման ուղիով նրանց նոր, ստեղծագործական մտածելակերպի ձևավորման, աշխատանքային ակտիվության բարձրացման գործում։

Մարքս-լենինյան տնտեսագիտական տեսությանը, կուսակցության տընտեսական քաղաքականության հրատապ հարցերին, ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցումների և ճառերի բովանդակած դրույթներին լայն տեղ տալու շնորհիվ զգալիորեն հարստացել է այդ օղակի ուսուցման բովանդակությունը, ուժեղացել գործնական ուղղվածությունը։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները, արհեստակցական միությունների կենտրոնական խորհուրդը, ինչպես նաև շատ մինիստրություններ ու գերատեսչություններ նպատակասլաց աշխատանք են ծավալում տնտեսագիտական կրթությունը ժողովրդատնտեսական խնդիրների հաջող լուծմանը ծառայեցնելու համար։ Շատ դպրոցների պրոպագանդիստներ օգնում են ունկնդիրներին՝ հիմնավորված հանդիպական պլաններ և սոցիալիստական պարտավորություններ ստանձնելու, տնտեսման անձնական հաշիվներ մշակելու, արտադրության արդյունավետության բարձ-

յացման և ներարտադրական ռեզերվների բացահայտման ասպարեզում նրանց ստեղծագործական կարողությունների զարգացման գործում։ Եվ այնտեղ, որտեղ կուսակցական կազմակերպությունները, մինիստրությունների ու գերատեսչությունների, արտադրամիավորումների ու ձեռնարկությունների ղեկավարները տնտեսագիտական կրթությունը դիտում են որպես աշխատավորության դաստիարակության և սոցիալ-տնտեսական առաջընթացի արագացման կարևոր գործոն, հետևողականորեն հոգ են տանում այն կատարելագործելու և արդյունավետորեն իրականացնելու մասին, հասնում են որոշակի արդյունքների։ Այդ է վկայում հանրապետության թեթև, մսեղենի և կաթնեղենի, սննդի արդյունաբերության մինիստրությունների, Երևանի, Լենինականի, Կիրովականի, Հրազդանի, Էջմիածնի, Ախուրյանի, Ղափանի, Գուգարքի, Ապարանի, Արտաշատի, Ստեփանավանի, Հոկտեմբերյանի, Արագածի, Նոյեմբերյանի և այլ շրջանների շատ ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորների տնտեսագիտական ուսուցման փորձը։

Միաժամանակ շատ շրջաններում ուսուցման այդ ձևի դպրոցների և սեմինարների գործունեության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ դեռևս չեն հաղթահարվել ձևականության փաստերը, ամենուր չէ, որ ուսուցումը կապվում է կոլեկտիվի աշխատանքային ու սոցիալական կոնկրետ խնդիրների հետ։ Քիչ չեն դեպքերը, երբ գերատեսչությունների ու ձեռնարկությունների ղեկավարները հոգ չեն տանում տնտեսագիտական կրթության համար շատ թե քիչ կանոնավոր պայմաններ ստեղծելու մասին։

Ելնելով կուսակցության արդի պահանջներից՝ անցած ուսումնական տարում, մասնավորապես ՀԿԿ Կենտկոմի 1985 թվականի հունվարյան պլենումից հետո, արտադրամիավորումներում, ձեռնարկություններում և կոլեկտիվ ու պետական տնտեսություններում ստեղծվել են շուրջ 250 նոր հասարակական հիմունքներով գործող տնտեսագիտական ուսուցման կաբինետներ, իսկ Ախուրյանի, Արագածի, Թալինի և Մարտունու շրջաններում՝ քաղաքական լուսավորության և տնտեսագիտական կրթության 38 միացյալ կաբինետներ, մինիստրություններում և գերատեսչություններում՝ 78 հատուկ անկյուններ։ Սա, իհարկե, լավ է։ Մնում է, որ այդ նորաստեղծ օջախները իրոք դառնան գաղափարախոսական աշխատանքի իսկական մեթոդական կենտրոններ։

Անցած ուսումնական տարում կոմերիտական քաղաքական լուսավորության համակարգում ուսուցումն ընթացավ «Կոմերիտմիության նկատմամբ կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում նրա դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հետևողական կենսագործման նշանաբանով՝ այդ որոշմամբ ներկայացված պահանջներին համապատասխան։

Կոմերիտականների, արտադրության մեջ աշխատող երիտասարդության քաղաքական լուսավորության առանցքը կազմել է նրանց դաստիարակումը սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի, կոմունիզմի իդեալներին նվիրվածության ոգով, կուսակցության քաղաքականության, նրա մշակած ծրագրերի ու առաջադրած խնդիրների անվերապահ իրականացման նշանաբանով։ Դրան մեծապես նպաստեցին Մեծ հայրենականում գերմանական ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակին նվիրված փաստաթղթերի ուսումնասիրումը, անցկացված միջոցառումները, քաղաքական այլ իրադարձությունները։

Կոմերիտական ուսուցման համակարգում հետզհետե ավելի լայնորեն են արմատավորվում պարապմունքների անցկացման ակտիվ ձևերը, որոնք նպաստում են երիտասարդության նախաձեռնության զարգացմանը։ Այսպես, անցած ուսումնական տարում Երևանի 26 կոմիսարների անվան շրջանում իրականացվեց կոմերիտականների ուսուցումը կոմունիստների հետ միասին կազմակերպելու փորձը, որը, ըստ էության, լավ արդյունք է տալիս։ Անհրաժեշտ է նոր ուսումնական տարում ընդլայնել կոմերիտական քաղաքական լուսավորության կազմակերպումն այդ ձևով, սակայն կատարելով համակողմանի նախապատրաստական աշխատանք և չցուցաբերելով ավելորդ շտապողականություն։ Ցանկալի է ուսուցման դպրոցները կոմպլեկտավորելիս



դրանք զուգակցել արտադրական կոլեկտիվների բրիգադային, միասնական կարգագրով աշխատելու կազմակերպական ձևի հետ։

Կոմերիտական քաղաքական լուսավորության գործում կան նաև մի շարք թերություններ. չի հաղթահարված ձևականությունը, նկատվել են պարապմունքների ձախողման դեպքեր։ Քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից է՝ մշտապես ուշադրության կենտրոնում պահել կոմերիտականների, երիտասարդության քաղաքական ուսուցումը և այդ գործը վստահել գաղափարախոսական աշխատանքի առավել հարուստ փորձ ունեցող կոմունիստների, պատերազմի և աշխատանքի վետերանների, վարպետ դաստիարակների։

Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ խնդիր է դրված ամրապնդել քաղաքական լուսավորության պրոպագանդիստների կազմը, այդ գործում լայնորեն ներգրավել ղեկավար կադրերին, կոմերիտական քաղաքական լուսավորության և աշխատավորության տնտեսագիտական կրթության ցանցում մեծացնել բարձրագույն կրթությամբ կոմունիստ պրոպագանդիստների տեսակարար կշիռը։ Անցած ուսումնական տարում որոշակի աշխատանք կատարվեց այդ պահանջների կենսագործման նպատակով։ Առաջնորդվելով այն հայտնի դրույթով, որ կուսակցական, տնտեսագիտական ուսուցման գաղափարատեսական մակարդակի, դրա ներգործունության ու արդյունավետության բարձրացման որոշող պայմանը պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրությունն է, նրանց տեսական գիտելիքների հարստացումը, մեթոդական և պրոֆեսիոնալ վարպետության կատարելագործումը, կուսակցական կազմակերպությունները մշտապես իրենց ուշադրության կենտրոնում են պահում պրոպագանդիստական կադրերի հետ տարվող աշխատանքը։ Անցած ուսումնական տարում որոշակիորեն բարելավվեց նրանց որակական կազմը։ Այսպես, կուսակցական ուսուցման բնագավառում, ուր մեր հանրապետությունը Միության մեջ առաջինը բոլոր դպրոցներն ապահովեց բարձրագույն կրթությամբ կադրերով, պրոպագանդիստներից 2000-ը ունեն գիտական աստիճան, կոչում կամ քաղաքական բարձրագույն կրթություն, կեսից ավելին՝ պրոպագանդիստական աշխատանքի տասը տարուց ավելի ստաժ։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները, ՀԿԿ Կենտկոմի քաղլուսատան հետ միասին, հասան այն բանին, որ կոմերիտական քաղաքական լուսավորության մեջ կոմունիստ պրոպագանդիստների տեսակարար կշիռը 50 տոկոսից հասավ 80-ի, իսկ բարձրագույն կրթություն ունեցողներինը՝ 91 տոկոսի։ Զգալիորեն բարելավվեց նաև աշխատավորության տնտեսագիտական կրթության պրոպագանդիստների կազմը։ Այստեղ պրոպագանդիստների կեսից ավելին կոմունիստներ են, ավելի քան 70 տոկոսը՝ բարձրագույն կրթությամբ մասնագետներ։ Պրոպագանդիստների մեջ ավելացավ ղեկավար աշխատողների տեսակարար կշիռը և հասավ 87 տոկոսի։

Պրոպագանդիստական կադրերի պատրաստման հանրապետության միակ ուսումնական օջախը՝ ՀԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանը, որոշ չափով բարելավել է իր գործունեությունը։ Այստեղ, գաղափարախոսական աշխատանքի պահանջներին համապատասխան, անցյալ ուսումնական տարում բացվել են զարգացած սոցիալիզմի և սոցիալիստական ապրելակերպի, գիտատեխնիկական առաջընթացի սոցիալ-տնտեսական պրոբլեմների, արտաքին քաղաքական պրոպագանդայի և հակապրոպագանդայի բաժիններ։ Ընդհանուր առմամբ համալսարանի գաղափարախոսական կադրերի ֆակուլտետն այժմ տարեկան տալիս է շուրջ 800 շրջանավարտ։

Հանրապետությունում քաղաքական բարձրագույն կրթության այդ միակ օջախի աշխատանքի արդյունավետության բարձրացման նպատակով անհրաժեշտ է այնտեղ ուսման ուղարկել առավել հեղինակավոր ընկերների, հետևել նրանց ուսումնառությանը և ավարտելուց հետո ճիշտ օգտագործել այդ կադրերին։

Անցած ուսումնական տարում զգալի աշխատանք է կատարվել պրոպագանդիստների տեսական ու մեթոդական պատրաստականության բարձրաց-

ման, պրոֆեսիոնալ վարպետության, գաղափարադաստիարակչական աշխատանքի հմտության զարգացման ասպարեզում։ Այդ նպատակին ծառայող աշխատանքի ամենազանգվածային ձևը կուսակցության քաղկոմների ու շրջկոմների մշտապես գործող սեմինարներն են, որտեղ հնարավոր է տարբերակված կարգով ընդգրկել բոլոր պրոպագանդիստներին։

Պրոպագանդիստների ուսուցման փորձված ձևերից են հանրապետական տարբերակված դասընթացները։ Պետք է նկատել, որ երկրորդ տարին է, ինչ կազմակերպվող շաբաթական, առանձին դեպքերում՝ երկշաբաթյա դասընթացները, որպես կանոն, անցնում են գաղափարական ու կազմակերպական պատշաճ մակարդակով։ Այստեղ պրոպագանդիստների առջև հանդես են գալիս հանրապետության կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ղեկավար աշխատողներ, անվանի գիտնականներ, մասնագետներ։ Պրոպագանդիստներին մեծապես օգնում են տեսական ու գիտագործնական կոնֆերանսները, շերտավորված կոնսուլտացիաները, լեկտորիումները։

Այսպիսով, պրոպագանդիստների հետ տարվող արդյունավետ աշխատանքի, բոլոր օղակների ու ձևերի հստակ գործունեության պայմաններում լրիվ հնարավոր է հաջողությամբ կազմակերպել գաղափարախոսական աշխատողների այդ ստվար բանակի սիստեմատիկ ուսուցումն ու վերապատրաստումը։

Ընթացիկ ուսումնական տարում սկսվեց և շուտով կավարտվի պրոպագանդիստական կադրերի ատեստավորումը։ Վերջինս հնարավորություն է ընձեռում համակողմանի ճանաչել նրանց կարողությունները, քաղաքական լուսավորության դպրոցների և սեմինարների խնդիրներին համապատասխան առաջադրել պրոպագանդիստներ ու կոնսուլտանտներ։

Քաղաքական լուսավորության բարելավման նպատակով կուսակցության առաջադրած խնդիրների իրականացման գործում լուրջ անելիքներ ունեն մասսայական ինֆորմացիայի միջոցները՝ հանրապետական ու շրջանային թերթերը, հանդեսները, հեռուստատեսությունը և ռադիոն։ Նրանք պետք է ունենան մշտական խորագրեր և հաղորդաշարեր՝ նվիրված քաղուսուցման ու տնտեսագիտական կրթության հանգուցային հարցերին, առաջավոր փորձին, դրական միտումների ընդհանրացմանն ու պրոպագանդմանը և ոչ թե աշխատանքի այդ բնագավառին անդրադառնան ուսումնական տարվա սկզբին ու վերջին միայն, ինչպես մի շարք դեպքերում վարվում են առանձին խմբագրություններ։

ՍՄԿԿ Կենտկոմում գիտատեխնիկական առաջընթացի հարցերին նվիրված խորհրդակցությունում ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ քիչ բան կարելի է փոխել էկոնոմիկայում, կառավարման, դաստիարակության գործում, եթե չիրականացվի հոգեբանական վերակառուցումը, չմշակվեն նոր ձևով մտածելու և աշխատելու ցանկություն ու կարողություն։ Եվ դա այդպես է, քանի որ մարդկային գործոնը, մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը հասարակության վճռական վերափոխիչ ուժն են, առաջընթացի աղբյուրը գործունեության բոլոր ոլորտներում։ Այդ գործոնի ակտիվացման համար կարևոր դեր է վերապահված աշխատավորների մարքս-լենինյան կրթությանը։ Ուստի նոր ուսումնական տարում ամենից առաջ հենց այս պահանջի կատարման տեսանկյունից պետք է կազմակերպել կուսակցական ուսուցումն ու տնտեսագիտական կրթությունը։

Մեր կուսակցությունն ընթանում է դեպի իր հերթական XXVII համագումարը։ Քաղաքական լուսավորության նոր ուսումնական տարվան նախապատրաստվելը, մարքս-լենինյան կրթության բոլոր ձևերի արդյունավետ աշխատանքի ապահովումը, ինչպես նշված է նոր ուսումնական տարին սկսելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, բոլոր կուսակցական կազմակերպությունները պետք է համարեն համագումարն արժանավայել դիմավորելու, նրա որոշումները կատարելու նպատակով իրենց ծավալած բազմակողմանի գործունեության կարևոր բաղկացուցիչ մասը։



# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Ի. ՀԱԿՈԲՅԱՆ**
**Մ. ՎԱՍԻԼՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածուներ

Ելնելով ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ անշեղ զարգացման և նրա ինտենսիվացման խնդիրներից՝ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը նշեց, որ արդի պայմաններում գլխավորը երկրի արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալի, ռեսուրսների բոլոր տեսակների և, առաջին հերթին, նյութատեխնիկական ռեսուրսների ամենաարդյունավետ օգտագործումն է։ Պլենումը որպես ժողովրդական տնտեսության ինտենսիվացման, կուտակված պոտենցիալի լավագույն օգտագործման ստրատեգիական խնդիր առաջադրեց գիտատեխնիկական առաջադիմության արմատական արագացումը։ Գիտատեխնիկական առաջադիմության ըստ ամենայնի արագացումը նշանակում է տեխնիկայի ու սարքավորումների նոր սերունդների ու սկզբունքորեն նոր տեխնոլոգիական համակարգերի կիրառում, որոնք ընդունակ են բազմակի բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և ֆոնդահատույցը, նվազեցնելու արտադրանքի նյութատարությունը։

Թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման և արտադրության արդյունավետության բարձրացման ամենակարևոր ռեզերվներից մեկը նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն է։ Որպես կանոն, արտադրանքի ինքնարժեքում մեծ տեսակարար կշիռ են կազմում նյութական ծախսումները։ Այսպես, Հայկական ՍՍՀ արդյունաբերական արտադրանքի թողարկման ծախսերի կառուցվածքում հումքի, նյութերի, վառելիքի և էներգիայի ծախսերի տեսակարար կշիռը կազմում է մոտ 74 տոկոս, այդ թվում մեքենաշինության և մետաղամշակման մեջ՝ շուրջ 60 տոկոս։ Բացի դրանից, նյութական ռեսուրսների տնտեսումը հնարավորություն է տալիս հումքի և նյութերի միևնույն ծավալով ավելի շատ արտադրանք թողարկել, այսինքն՝ պայմաններ է ստեղծում խնայված հումքից ու նյութերից լրացուցիչ արտադրանքի թողարկման համար։ Այդ հանգամանքն առանձնապես կարևորվում է տնտեսության ինտենսիվ զարգացման ժամանակակից պայմաններում, երբ նյութական ռեսուրսների նկատմամբ պահանջմունքներն ավելի մեծ են, քան առկա ռեսուրսները, որը սահմանափակում է տնտեսական զարգացման տեմպերը։

Այդ կապակցությամբ գիտատեխնիկական առաջադիմության զարգացման հարցերին նվիրված խորհրդակցությունում նշվեց, որ հրատապ պրոբլեմ է կապիտալ ներդրումների հարաբերակցությունը ռեսուրսաարդյունահանման, վերամշակման ու սպառող ճյուղերում։ Վառելիքի հանույթն ու հումքի հայթայթումն ավելացնելը գնալով դժվարանում է։ Բայց կա ավելի ռացիոնալ ուղի՝ համակողմանի տնտեսման, ռեսուրսախնայողական տեխնոլոգիաների լայն արմատավորման ուղին։ Պարզ է, որ ապագայում նյութական ռեսուրսնե-

րի տնտեսման նշանակությունը է՛լ ավելի կմեծանա։ Դա կապված է հետևյալ հիմնական միտումների հետ. առաջին, ներկայումս անընդհատ աճում է արտադրության ծավալը, որի հետևանքով ժողովրդատնտեսական շրջանառության մեջ ներգրավվող նյութական ռեսուրսների ծավալը յուրաքանչյուր տասնամյակ կրկնապատկվում է։ Հետևաբար, անընդհատ մեծանում է նաև նյութական ռեսուրսների տնտեսման յուրաքանչյուր տոկոսի նշանակությունը։ Այսպես, երկրի ժողովրդական տնտեսության մասշտաբով նյութական ծախսումների միայն մեկ տոկոս իջեցումը 1970 թ. կազմել է 3,6 մլրդ ռուբլի, 1980 թ.՝ 6, իսկ 1985 թ., ըստ նախնական հաշվարկների՝ 7 մլրդ ռուբլի։ Երկրորդ, արտադրանքի նյութատարության նվազեցումը նպաստում է օգտակար հանածոների չվերականգնվող պաշարների պահպանմանը ապագա սերունդների համար։

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը տնտեսավարների ուշադրությունը հրավիրեց նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման ժողովրդատնտեսական նշանակության վրա։ Խնդիր է դրված՝ ըստ ամենայնի օգտագործել նյութական ռեսուրսների տնտեսման և խնայողաբար օգտագործման այն հնարավորությունները, որոնք չեն պահանջում խոշոր կապիտալ ներդրումներ և կապված են այդ ռեսուրսների հուսալի պահպանման ու դրանց ծախսումների նկատմամբ վերահսկողության ուժեղացման հետ։

Այնուամենայնիվ, նյութական ռեսուրսների խնայողության գլխավոր ուղին եղել և մնում է գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների գործնական կիրառումը, այսինքն՝ արդեն յուրացված պրոգրեսիվ տեխնոլոգիայի, բարձր արտադրողական մեքենաների և սարքավորումների արմատավորումն արտադրության մեջ, ինչպես նաև սկզբունքորեն նոր տեխնիկայի, անթափոն և սակավաթափոն տեխնոլոգիայի ստեղծումն ու օգտագործումը։ Դրա հետ միասին, ժամանակակից պայմաններում անհրաժեշտ է գիտական հայտնագործությունների և գյուտերի ողջ կոմպլեքսում հիմնական ուշադրությունը կենտրոնացնել գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների արմատավորման ռեսուրսախնայողական ուղղությունների վրա։

Ինչպես հայտնի է, գիտատեխնիկական առաջադիմության հիմնական ուղղությունը աշխատանքի միջոցների՝ մեքենաների ու սարքավորումների և, ամբողջությամբ վերցրած, արտադրական ապարատի կատարելագործումն է, իսկ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինումն ու սիստեմատիկ կատարելագործումը զգալիորեն պայմանավորված են մեքենաշինության զարգացմամբ։ Բանն այն է, որ մեքենաշինության արտադրամիավորումների և ձեռնարկությունների արտադրանքի տեխնիկական մակարդակից և որակից են անմիջականորեն կախված ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի արտադրության նյութատարությունը, ֆոնդատարությունը, աշխատատարությունը և, ամբողջությամբ վերցրած, արտադրության արդյունավետությունը։

Ժողովրդական տնտեսության պահանջմունքները և երկրի մեքենաշինության զարգացման որոշ անհամապատասխանությունը արգելակում են մաշված և հնացած տեխնիկայի նորացման տեմպերը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը։ Ընդ որում նոր տեխնիկայի յուրացման և արմատավորման տեմպերը ոչ միայն չեն բարձրանում, այլև իջեցման որոշ միտումներ ունեն։ Այսպես, երկրի մեքենաշինության մեջ նոր յուրացված արտադրանքը 1970 թ. կազմել է 4,3 տոկոս, իսկ 1980 թ.՝ ընդամենը 2,5 տոկոս։ Դրա հետևանքով նշված արդյունաբերական ճյուղում թողարկվող հնացած մեքենաների և սարքավորումների տեսակարար կշիռը դեռևս զգալիորեն բարձր է։ Օրինակ, մեքենաշինական արտադրամիավորումներում և ձեռնարկություններում ավելի քան 10 տարի թողարկվող հնացած արտադրանքի տեսակարար կշիռը 1971 թ. 20 տոկոսի փոխարեն 1980 թ. կազմել է 28 տոկոս։

Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը հատուկ ուշադրություն նվիրեց երկրի մեքենաշինության հետագա զարգացման խնդիրներին։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ «Ճյուղերի մեծ մասում գիտատեխնիկական առաջադի-



մությունն ընթանում է դանդաղ, ըստ էության, էվոլյուցիոն կերպով՝ գերազանցապես գործող տեխնոլոգիաների կատարելագործման, մեքենաների ու սարքավորումների մասնակի արդիականացման ուղիով։ ... Հարկավոր են հեղափոխական տեղաշարժեր՝ անցում սկզբունքորեն նոր տեխնոլոգիական համակարգերի, անցնում վերջին սերունդների տեխնիկայի, որոնք տալիս են ամենաբարձր արդյունավետությունը։ Ըստ էության խոսքը վերաբերում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերազինմանը գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա»։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն անհրաժեշտ գտավ՝ տասներկուերորդ հնգամյակում կարևորագույն խնդիր համարել մեքենաների ու սարքավորումների նորացման գործակցի էական բարձրացումը, առաջնահերթ բնույթ տալ մեքենաշինության զարգացմանը և արդեն հաջորդ հնգամյակում մեկուկես-երկու անգամ արագացնել այդ ճյուղի աճի տեմպերը, գլխավոր խնդիր համարել մեքենաների և սարքավորումների այնպիսի նոր սերունդների արտադրությունը, որոնք ընդունակ լինեն շեշտակիորեն բարձրացնելու արտադրության արդյունավետությունը, մեծ ուշադրություն դարձնել հաստոցաշինության կատարելագործմանը, հաշվողական տեխնիկայի, սարքաշինության, էլեկտրատեխնիկայի և էլեկտրոնիկայի՝ որպես գիտատեխնիկական առաջադիմության կատալիզատորների, զարգացման արագացմանը։

Հայտնի է, որ մեքենաշինական արդյունաբերությունը մետաղի հիմնական սպառող ճյուղն է։ Մեր երկրում ծախսվող մետաղի ավելի քան 55 տոկոսը բաժին է ընկնում այդ ճյուղին։Հետևաբար, նյութական ռեսուրսների արդյունավետ օգտագործման և արտադրանքի նյութատարության նվազեցման խնդիրն առանձնապես հրատապ նշանակություն ունի մեքենաշինության համար։

Մեքենաշինական արդյունաբերության մեջ մետաղի ծախսումների նվազեցման հիմնական ուղիներից մեկը թողարկվող մեքենաների ու սարքավորումների կոնստրուկցիայի կատարելագործումն է։ Իրական պահանջմունքների նկատմամբ հաստոցների տեխնիկական պարամետրերի մեծացումը հասցնում է ոչ միայն դրանց չափերի ու քաշի անհիմն ավելացմանը, այլև աշխատատարության, մետաղատարության և ֆոնդատարության ավելորդ բարձրացմանը։ Իր հերթին, այդ հանգամանքը ավելորդ կերպով ծանրաբեռնում է մետալուրգիական ճյուղի աշխատանքը, անմիջականորեն բարձրացնում սպառող ձեռնարկությունների հիմնական ֆոնդերի արժեքը և նվազեցնում տվյալ սարքավորումների ֆոնդահատույցը։

Ուսումնասիրությունները վկայում են, որ արտադրանքի կոնստրուկցիայի բարելավման չօգտագործված և խոշոր ռեզերվներ կան մեքենաշինության մեջ։ Օրինակ, Հանրապետության հաստոցաշինական ձեռնարկություններում թողարկվող մի շարք արտադրատեսակներ միջին հաշվով 25—30 տոկոսով ավելի ծանր են արտասահմանյան նմանօրինակներից։

Հաշվարկները ցույց են տալիս, որ մեր երկրում թողարկվող հաստոցների, սարքավորումների և մետաղական արտադրանքի կշռի միայն մեկ տոկոս նվազեցումը հնարավորություն կտա տնտեսել 3,5—4 մլրդ ռուբլի։ Հատկապես մեծ արդյունք կտա մասսայական, բազմասերիանոց արտադրանքի կոնստրուկցիաների բարելավումը, որոնց արտադրության մեջ առանձին հանգույցների կշռի նույնիսկ աննշան պակասեցումը մետաղի զգալի տնտեսում է տալիս։

Հանրապետության մեքենաշինական արտադրամիավորումներում և ձեռնարկություններում վերջին տարիներս ակտիվացել են թողարկվող արտադրանքի չափերի փոքրացման ուղղությամբ տարվող աշխատանքները։ Այսպես, «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում ճշգրտված նախագծերի կիրառումը հնարավորություն տվեց յուրաքանչյուր գեներատորի կշիռը պակասեցնել մեկ տոկոսով կամ 600 գրամով։ Նկատի ունենալով, որ տարեկան թողարկվում են հազարավոր գեներատորներ, սև մետաղների խնայողությունը բավական մեծ չափերի է հասնում։ Այդ ձեռնարկությունում նյութերի զգալի տնտեսում է ձեռք բերվել նաև տրանսֆորմատորների կոնստրուկցիայի բարելավման շնորհիվ, որը թույլ է տալիս 10 տոկոսով կրճատել էլեկտրատեխնիկական պողպատի ծախսերը։

Ձնայած արտադրանքի բացարձակ կշռի նվազեցման կարևորությանը, այն դեռևս լիովին չի լուծում մետաղի արդյունավետ օգտագործման խնդիրը: Կարևոր նշանակություն ունի նաև արտադրանքի հարաբերական կշռի պակասեցումը՝ հատկապես թանկարժեք և դեֆիցիտային մետաղների օգտագործման ժամանակ: Այլ խոսքով, կոնստրուկցիաների բացարձակ կշռի նվազեցումը պետք է զուգակցվի մեքենաների, մեխանիզմների անհատական կարողությունների և արտադրողականության բարձրացման հետ: Դեռևս մեծ են մեքենաների և սարքավորումների արտադրողականության աճի չօգտագործված հնարավորությունները: Ելնելով դրանից, խնդիր է դրված օպտիմալ սահմաններում բարձրացնել մեքենաների ու սարքավորումների միավորային կարողությունները՝ միաժամանակ փոքրացնելով դրանց չափերը, մետաղատարությունը, էներգասպառումը և իջեցնել մեկ միավոր վերջնական օգտակար արդյունքին ընկնող արժեքը:

Նյութական ռեսուրսների խնայողության լայն հնարավորություններ են բացվում հատկապես պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման շնորհիվ: Մեքենաշինության մեջ մետաղի գերածախսի զգալի մասը կապված է հնացած տեխնոլոգիայի օգտագործման հետ, որը պայմանավորված է մետաղամշակման սարքավորումների անբավարար առաջադիմական կառուցվածքով:

Ահա թե ինչու այժմ առաջնությունը տրվում է ժամանակակից դարբնոցամամլիչային սարքավորումների արտադրության աճին: Մետաղամշակման սարքավորումների թողարկման ընդհանուր ծավալում դրանց տեսակարար կշիռը 1980 թ. 20 տոկոսի փոխարեն ընթացիկ տարում կկազմի 24 տոկոս, որը կապահովի մեքենաշինական ձեռնարկությունների նախապատրաստական արտադրության հագեցումը ժամանակակից սարքավորումներով: Հայկական ՍՍՀ մեքենաշինության մեջ մետաղահատ հաստոցների թողարկման ծավալում բարձր ճշգրտություն, ինչպես նաև ծրագրային կառավարում ունեցող հաստոցների արտադրությունը ընթացիկ հնգամյակում կաճի 68,4 տոկոսով:

Գիտատեխնիկական առաջադիմությունը որակական մեծ տեղաշարժեր է կատարում կոնստրուկցիոն նյութերի ստեղծման և արտադրության մեջ, արմատականորեն բարելավում է ավանդական նյութերի որակը, երևան է բերում դրանց բազմաթիվ նոր փոխարինիչներ, որոնց կիրառման շնորհիվ զգալիորեն նվազում է արտադրանքի նյութատարությունը: Ահա թե ինչու մեր օրերում առանձնահատուկ կարևորություն է ձեռք բերում թերթավոր և սորտային գլանվածքների, գունավոր մետաղների համաձուլվածքների, մետաղակերամիկայի ու պլաստմասսաների, կոնստրուկցիոն այլ նյութերի օգտագործման ճիշտ հարաբերակցությունը:

Հանրապետության մեքենաշինական արտադրամիավորումների տնտեսական գործունեության արդյունքների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ գիտատեխնիկական առաջադիմության ներգործության շնորհիվ զգալի կառուցվածքային տեղաշարժեր են կատարվել արտադրության նյութական ծախսումներում: Մի կողմից, տեղ է գտել հումքի և նյութերի տեսակարար կշռի նվազեցում, որը ավանդական նյութերն ավելի էժաններով փոխարինելու արդյունք է, մյուս կողմից՝ արտադրության մասնագիտացման ու կոոպերացման պայմաններում դիտվում է նյութական ծախսումների աճի մի այնպիսի միտում, ինչպիսին է գնովի կիսաֆաբրիկատների և կոմպլեկտավորման իրերի տեսակարար կշռի մեծացումը, որը նյութական ընդհանուր ծախսումներում հասնում է մոտ 40 տոկոսի:

Արդի գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում այդ ծախսերի աճը օբյեկտիվ երևույթ է և կախված չէ սպառող ձեռնարկությունների գործունեության արդյունքներից:

Մեքենաշինության յուրաքանչյուր ենթաճյուղ ունի զարգացման բարդ և բազմակողմանի խնդիրներ, որոնց մեջ գլխավորը ժամանակակից տեխնիկայով ժողովրդական տնտեսության պահանջների առավելագույն բավարարումն է: Հանրապետության մեքենաշինության համախառն արտադրանքում ամենամեծ տեսակարար կշիռը (30 տոկոս) բաժին է ընկնում էլեկտրատեխնիկական



ենթաճյուղին: Այդ ենթաճյուղը տարբերվում է արտադրության հարաբերականորեն ոչ բարձր մետաղատարությամբ, բայց դրա հետ միասին այստեղ սպառվող մետաղների կազմում մեծ է թանկարժեք գունավոր մետաղների ու սև մետաղների որակյալ գլանվածքի բաժինը: Այսպես, «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում էլեկտրատեխնիկական պողպատի ծախսը կազմում է սպառվող ողջ մետաղի 43 տոկոսը: Ընդ որում էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում սպառվող մետաղյա գլանվածքի մոտ 1/3-ը վեր է ածվում թափոնի: Հանրապետության մեքենաշինական արդյունաբերության մյուս յոթ ենթաճյուղերի ձեռնարկություններում ևս մետաղների թափոնները կազմում են գրեթե նույնքան:

Բացի նշված պատճառներից մեքենաշինական ձեռնարկությունների արտադրանքի մետաղատարության մակարդակի վրա բացասաբար են անդրադառնում հնացած տեխնոլոգիայի կիրառումը, օգտագործվող մետաղների անբավարար առաջադիմական կառուցվածքը, անփույթ վերաբերմունքը մետաղական նյութերի պահպանման գործում:

Ճշգրիտ մեքենաշինության և սարքաշինության զարգացումը, ԷՀՄ-երի արտադրության և դրանց կիրառման ընդլայնումը, թողարկվող մեքենաների կշռի նվազեցման միտումները պահանջում են մետաղական արտադրանքի նմուշատեսակների մեծացում և բարդացում, դրանց խնայողական տեսակների, բարակապատ խողովակների և ձևավոր համաձուլվածքների աճ: Հետևաբար, մեքենաշինության արտադրանքի բարձր մետաղատարության պատճառներից մեկը գլանվածքի խնայողական տեսակների սահմանափակ օգտագործումն է: Մինչդեռ, բարձրորակ մետաղական նյութերի օգտագործումը զգալի արդյունք է տալիս: Այսպես, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ միավոր արտադրանքին ընկնող բարձրորակ մետաղյա նյութերի տեսակարար կշռի մեծացումը հնարավորություն է տալիս զգալիորեն բարելավել մեքենաների և սարքավորումների տեխնիկատնտեսական պարամետրերը: Օրինակ, «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում սառը եղանակով գլանված թանկարժեք էլեկտրատեխնիկական պողպատի օգտագործումը հնարավորություն տվեց նախկին սերիաների նկատմամբ զգալիորեն բարելավել մինչև 100 կվտ հզորություն ունեցող տրանսֆորմատորների տեխնիկական պարամետրերը: Նոր թանկարժեք նյութերի կիրառման շնորհիվ թեև դրանց ինքնաժեքը բարձրացավ 8 տոկոսով, սակայն նոր տրանսֆորմատորի շահագործումից ստացված տնտեսական էֆեկտի հաշվին կատարված լրացուցիչ ծախսերը հատուցվեցին ընդամենը 1,5—2 տարվա ընթացքում:

Ժամանակակից գիտատեխնիկական առաջադիմության բնորոշ կողմերից մեկը նվազ մետաղատարություն ունեցող ճյուղերի առավել արագ զարգացումն է: Մեր հանրապետության մեքենաշինությանը նույնպես բնորոշ է նվազ մետաղատարություն ունեցող այնպիսի ենթաճյուղերի արագ աճը, ինչպիսիք են սարքաշինությունը և գործիքաշինությունը: Այսպես, եթե 1983 թ. հանրապետության մեքենաշինության արտադրանքի ընդհանուր ծավալը 1980 թ. համեմատությամբ աճել է 40 տոկոսով, ապա սարքաշինության աճը կազմել է 67, իսկ գործիքաշինությանը՝ 44 տոկոս:

Մեքենաշինության ճյուղային կառուցվածքի փոփոխությունները, որոնք տեղի են ունենում թերթավոր գլանվածք սպառող ճյուղերի, օրինակ, ավտոմոբիլաշինության արագ զարգացման ուղղությամբ, պահանջում են զգալիորեն մեծացնել այդ նյութերի մատակարարումների ծավալը: Թերթավոր գլանվածքի, և հատկապես նուրբ և սառը եղանակով ստացված գլանվածքների օգտագործումը տնտեսական մեծ արդյունք է տալիս: Այսպես, թերթավոր գլանվածքի 1 տոննայի արտադրության ծախսերը մոտ 20 տոկոսով պակաս են, քան սորտային գլանվածքներինը: Մինչդեռ մեր երկրում արտադրվող ամբողջ գլանվածքի մեջ թերթավոր գլանվածքի բաժինը դեռևս փոքր է: Հանրապետության ձեռնարկություններին մատակարարվող գլանվածքի կառուցվածքում նույնպես գերակշռում է սորտայինը, թեև այստեղ առավել զարգացում են ստացել թերթավոր գլանվածք օգտագործող ճյուղերը:

Մեքենաշինության մեջ մետաղի օգտագործման գործակցի բարձրացման

Տնտեսական կարևոր նշանակություն ունի հաստոցների և սարքավորումների արտադրական շահագործման հետ կապված նյութական ծախսերի կրճատումը։ Հայտնի է, որ մետաղական նյութեր են ծախսվում ոչ միայն մեքենաների և սարքավորումների արտադրության պրոցեսում, այլ նաև դրանց շահագործման ժամանակ՝ որպես պահեստամասեր։ Ըստ որում, հաստոցների շահագործման ողջ ժամանակամիջոցում պահեստամասերի ծախսը մեծ չափերի է հասնում։ Հաճախ պահեստամասերի արժեքը նույնիսկ գերազանցում է հաստոցների արտադրության համար անհրաժեշտ նյութական բոլոր ծախսերը։ Այստեղից հետևում է, որ մեքենաների և սարքավորումների շահագործման նյութատարության իջեցումը մետաղի տնտեսման կարևորագույն ուղղություններից մեկն է։ Բավական է ասել, որ հիմնական ֆոնդերի նորոգման համար օգտագործվում է ձուլվող մետաղի յուրաքանչյուր հինգերորդ տոննան, իսկ այդ նպատակով կատարվող տարեկան ծախսերը կազմում են 40 մլրդ ռուբլի։ Այդ բնագավառում մեքենաշինական արտադրանքի նյութատարության իջեցման հիմնական ուղին նորոգման տնտեսությունների մասնագիտացումն է, ինչպես նաև մեքենաների, սարքավորումների առանձին հանգույցների, դետալների հուսալիության և երկարակեցության բարձրացումը։

Նյութական ռեսուրսների խնայողության հնարավորությունների իրացումը, որն ստեղծվում է գիտատեխնիկական առաջադիմության շնորհիվ, պահանջում է զգալի կապիտալ ներդրումներ։ Սակայն էկոնոմիկայի զարգացման յուրաքանչյուր տվյալ փուլում պետության տնօրինության տակ գտնվող ռեսուրսներն անսահմանափակ լինել չեն կարող։ Ահա թե ինչու անհրաժեշտ է ընտրել և գերադասություն տալ միայն գիտատեխնիկական առաջադիմության կարևորագույն և հեռանկարային ուղղություններին։ Այդ իմաստով կարևոր նշանակություն ունեն գիտատեխնիկական առաջադիմության կոմպլեքսային ծրագրերը, որոնցից մեկը նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ծրագիրն է։

Նպատակային կոմպլեքսային ծրագրերի մշակումն ու իրականացումը տնտեսավարների ուշադրությունը կենտրոնացնում են նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման վճռական ուղղությունների վրա։ Էական դեր կարող է խաղալ ինչպես արդյունաբերական ճյուղերի, այնպես էլ միութենական հանրապետությունների մակարդակով նյութական ռեսուրսների տնտեսման նպատակային կոմպլեքսային ծրագրերի մշակումը։

Մետաղի ռացիոնալ սպառման նպատակային կոմպլեքսային ծրագրի մշակումը կնպաստի ճյուղերի միասնական տեխնիկական քաղաքականության իրականացմանը արտադրանքի նյութատարության նվազեցման բնագավառում։ Բացի դրանից, այդպիսի ծրագրի մշակման նպատակահարմարությունը պայմանավորված է Միության մեքենաշինության արտադրանքի ընդհանուր ծավալում մեր հանրապետության արտադրանքի զգալի տեսակարար կշռով և արտադրանքի նյութատարության նվազեցման խոշոր ռեզերվների առկայությամբ։

Մետաղների ռացիոնալ սպառման ծրագրում հրատապ են այնպիսի խնդիրները, ինչպիսիք են հաստոցների, մեքենաների և սարքավորումների կշռի պակասեցումը, անթափոն տեխնոլոգիայի յուրացումը, սև և գունավոր մետաղների փոխարինիչների արմատավորումը։

Մեքենաշինության մեջ մետաղի ռացիոնալ օգտագործման ծրագիրը հնարավորություն կտա ուշադրությունը կենտրոնացնել գիտատեխնիկական առաջադիմության առավել արդյունավետ ուղղությունների վրա, որոնք հեռանկարում կապահովեն այդ կարևոր ճյուղի արտադրանքի մետաղատարության ըստ ամենայնի նվազեցումը։

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ԿԱՐԵՎՈՐ ԼԾԱԿԸ

**Լ. ՆԱԶԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների
թեկնածու, դոցենտ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1985 Թ. ԱՊՐԻԼՅԱՆ պլենումում առաջադրված է էկոնոմիկայի կառավարման համակարգի լուրջ վերակառուցման անհրաժեշտությունը։ Այդ խնդրի լուծումը պահանջում է մշակել կառավարման ողջ մեխանիզմի կոմպլեքսային կատարելագործման ծրագիր։ Կուսակցության Կենտկոմը գտնում է, որ կառավարման մեխանիզմը պետք է լիովին համապատասխանի զարգացած սոցիալիզմի էկոնոմիկային և լուծվող խնդիրների բնույթին։ Այդ ծրագրում կարևոր տեղ է հատկացվում տնտեսական լծակների և տնտեսական խթանների ամբողջությանը, ներառյալ գնագոյացման արդյունավետության բարձրացմանը։ Գիտատեխնիկական առաջադիմության արագացման հարցերին նվիրված համամիութենական խորհրդակցությունում ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ «Պետք է արմատապես կատարելագործել գնագոյացումը, որպեսզի այն նպաստի տնտեսական քաղաքականության հաջող իրականացմանը, ամբողջ նորի, առաջավորի արագագույն ներդրմանը»։

Հայտնի է, որ գնի, որպես տնտեսական կատեգորիայի, օգտագործման անհրաժեշտությունը պայմանավորված է ապրանքային արտադրության և ապրանքադրամական հարաբերությունների, հետևաբար և արժեքի օրենքի գործողությամբ։ «Գինը,— գրել է Մարքսը,— ապրանքի մեջ առարկայացած աշխատանքի փողային անունն է։ Հետևաբար, ապրանքի և փողի այն քանակի համարժեքայնությունը, որի անունը նրա գինն է...» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, 1954, էջ 110—111)։

Տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում ևս ապրանքների գները արժեքի դրամական արտահայտությունն են։ Այստեղ արժեքի օրենքն անմիջականորեն դրսևորվում է գների համակարգի միջոցով։ «Գինը արժեքի օրենքի արտահայտությունն է... այսինքն՝ գնի երևույթի ընդհանրացած արտահայտությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 25, էջ 57)։ «Զարգացած սոցիալիզմի տնտեսագիտական տեսության հանգուցային հարցերի մշակման գործում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտի դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ հասարակագետների առջև խնդիր է դրվում խորությամբ ուսումնասիրել ժողովրդական տնտեսության կառավարման, այդ թվում նաև գնագոյացման կոմպլեքսային կատարելագործման հիմունքները։

Սոցիալիզմի կառուցմանը համընթաց գնագոյացումը թե՛ տեսականորեն, թե՛ գործնականում անցել է զարգացման բարդ ուղի։

Մեր երկրում գնագոյացման տեսական հարցերի և գների կիրառման գործնական ձևերի շուրջ ծավալված բանավեճերի ընթացքում ձևավորվել են գների տարբեր սահմանումներ։ Այդ տեսակետների մաթեմատիկատնտեսագիտական վերլուծությունը հանգեցնում է այն եզրակացության, որ որպես գների օբյեկտիվ և քանակապես չափակցելի հիմք ընդունվել են աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսումները։ Սակայն, դրա հետ մեկտեղ,

գների ստույգ սահմանման համար անհրաժեշտ է հաշվի առնել նաև արտադրանքի տեխնիկատնտեսական ցուցանիշները, սպառողական հատկանիշները, գիտատեխնիկական առաջընթացի խթանումը, առաջարկի ու պահանջարկի հարաբերակցությունը, փոխադարձ փոխարինելի արտադրամիջոցների արդյունավետությունը, որակի բարձրացումը և այլն։

Սոցիալիստական հասարակարգին բնորոշ պլանային գինը, որպես ժողովրդական տնտեսության ղեկավարման կարևոր լծակ, որպես արժեքի դրսևորման ձև, թե՛ էկոնոմիկայի, թե՛ քաղաքականության հետ առնչվող բազմաթիվ պրոբլեմների հանգուցակետն է։ Այն մեր երկրի տնտեսական վերակառուցման տարբեր փուլերում ծառայել է որպես տնտհաշվարկային սկզբունքների ամրապնդման, արտադրության արդյունավետության և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման խնդիրների հաջող լուծման կարևոր լծակներից մեկը։

Գործող գներն, իրենց որոշ թերություններով ու պակասություններով հանդերձ, կարևոր դեր են խաղացել ժողտնտեսության զարգացման գործում։

Ներկայումս տնտեսագետների հիմնական մասն անհրաժեշտ է համարում սահմանել գների կայուն տեսական հիմք, քանի որ գինը ժամանակին պլանավորվել է «ոչ թե ելնելով ընդհանուր տեսական չափանիշներից, այլ դեպքից դեպք» (С. Г. Струмилин, Об экономической эффективности новой техники, М., 1968г., стр. 34.)։ Եթե նախկինում արժեքի օրենքի գործողությունը ժխտվել, անտեսվել կամ ընդունվել է «փոխակերպված», «սահմանափակված» ձևով, ապա այժմ այն դիտվում է իբրև գների հիմք, իսկ արտադրության ծախքերը՝ գների պարտադիր տարր։

Գործնականում 1936 թվականից ի վեր մեծածախ գները սահմանվել են արդյունաբերության ընթացիկ դրամական ծախքերի փոխհատուցման սկզբունքով, ինչպես նաև ինքնարժեքի նկատմամբ 3—5 տոկոսի սահմաններում շահույթի նվազագույն գումարի ընդգրկմամբ։ Հետագայում այդ գների ընդհանուր մակարդակը 2,2 անգամ բարձրացվել է՝ ի նկատի առնելով աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի տեմպերի անհամապատասխանությունը, արդյունաբերության մի շարք ճյուղերի վնասաբերությունը, ինքնարժեքի բարձրացումը և այլ օբյեկտիվ պատճառներ։ Այսպես, 1949 թ., արտադրության միջին ճյուղային ծախքերին առավել համապատասխանեցնելու նպատակով, մեծածախ գների ընդհանուր վերանայմամբ, դարձյալ տեղի է ունեցել դրանց մակարդակների բարձրացում։ Այն հնարավորություն է ընձեռել սիստեմատիկորեն, ինքնարժեքի իջեցմանը համընթաց, հետագա տարիներին իջեցնելու մեծածախ գների մակարդակները։

Վերջին տարիներին արդյունաբերության բազմաթիվ ճյուղերում պահպանվել է գների մակարդակների կայունությունը։ Գների ինդեքսների աճ նկատվել է հիմնականում վառելիքային արդյունաբերության և սև մետալուրգիայի ճյուղերում։ Վառելիքային արդյունաբերության մեծածախ գների ինդեքսի աճը 1978 թ. ընթացքում պայմանավորված է եղել երկտակտ շարժիչի ավտոմոբիլային բենզինի և վառելիքային խառնուրդի գների բարձրացմամբ։ Դա չի անդրադարձել մանրածախ գների մակարդակների վրա, մինչդեռ կապիտալիստական երկրներում այդ ընթացքում (1978—1981 թթ.) հումքի և վառելիքի, հատկապես նավթի գները բարձրացել են 17—18 անգամ։

Ժամանակակից արդյունաբերության մեծածախ գները 1949 թ. գործող գների մակարդակներից ցածր են 37 տոկոսով, իսկ ձեռնարկության մեծածախ գները՝ 26 տոկոսով, չնայած այն բանին, որ 1949 թ. գների ռեֆորմով 1948 թ. համեմատությամբ դրանք բարձրացվեցին 58 տոկոսով։ Դա պայմանավորված էր հետպատերազմյան շրջանում ծանր արդյունաբերության ձեռնարկություններին տրվող դոտացիայի վերացմամբ, քանի որ նախկին մեծածախ գները ցածր էին անգամ ինքնարժեքից։ Հետագայում, աշխատանքի արտադրողականության բարձրացման ու ինքնարժեքի իջեցման հաշվին, հնարավոր եղավ 1955 թ. հուլիսի 1-ից իրականացնել ծանր արդյունաբերության արտադրատեսակների մեծածախ գների ընդհանուր իջեցում։ Իսկ թեթև ու սննդի արդյունաբերության ճյուղերում 1949—50 թթ. ի վեր իրականացվեց



մեծածախ գների հետևողական մասսայական իջեցում։ Միայն 1958 թ. գյուղատնտեսական հումքի գների բարձրացման հետևանքով տեղի է ունեցել սննդարդյունաբերության որոշ արտադրատեսակների մեծածախ գների բարձրացում։ Ծանր արդյունաբերության արտադրանքի մեծածախ գների 1955 թ. ընդհանուր իջեցմամբ սահմանված գները գործել են մինչև 1967 թ. հուլիսի 1-ը։ 1967 թ. պլանավորման ու տնտեսավարման նոր պայմաններում մի շարք ճյուղերի վնասաբերության և արտադրության առավել ստույգ հաշվառման նպատակով էկոնոմիկայի բոլոր ճյուղերում բարձրացվեցին մեծածախ գները։ Հետագայում, ի նկատի ունենալով գյուղատնտեսական և արդյունաբերական հումքի առանձին տեսակների գների փոփոխությունները, արտադրության ծախքերի առավել լրիվ արտացոլման նպատակով մեքենաշինության, մետաղամշակման ու թեթև արդյունաբերության ճյուղերում սահմանվեցին նոր մեծածախ գներ։ Հաջորդ տարիներին արտադրության բազմաթիվ ճյուղերում պահպանվել է մեծածախ գների կայունությունը, և միայն 1982 թ. հունվարի 1-ից բոլոր ճյուղերում անխտիր կիրառվել են նոր մեծածախ գներ։ Կարևոր է նշել, որ այդ փոփոխությունները կատարվել են մանրածախ գների կայունության պայմաններում, որովհետև, ինչպես ընդգծված է ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում, անհրաժեշտ էր «հետևողականորեն վարել հիմնական պարենային և ոչ պարենային ապրանքների պետական մանրածախ գների կայունությունն ապահովելու գիծ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 288)։ Ինչ վերաբերում է մեծածախ գներին, ապա համագումարի որոշումների համաձայն, ընթացիկ հնգամյակում բարձրացված է դրանց խթանող դերը՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրանքի նորացման ու որակի բարձրացման, նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման նպատակով։ Մասնավորապես նախատեսված է նոր մեքենաների ու սարքավորումների մեծածախ գները սահմանելիս իրականացնել դրանց օգտակար արդյունավետության մեկ միավորի հաշվով գների մակարդակի իջեցում։

Տնտեսության զարգացման արդի փուլում գնագոյացման գլխավոր խնդիրը կոմպլեքսային միջոցառումների իրականացումն է մեծածախ և մանրածախ գների ու տարիֆների հետագա կատարելագործման միջոցով։

Ներկայումս գնագոյացման առջև ծառացած է լուրջ և բարդ խնդիրների մի ողջ կոմպլեքս։ Այդ խնդիրների լուծումը հնարավոր է միայն գնագոյացման, տնտհաշվարկային մեխանիզմի, պլանավորման, ֆինանսավորման, ստանդարտավորման կատարելագործման նպատակով կոմպլեքսային միջոցառումների կիրառմամբ։

Գնագոյացման ողջ մեխանիզմը, որպես հասարակության պահանջմունքների առավել լրիվ ու լավագույն բավարարման լծակներից մեկը, պետք է ծառայի արտադրանքի որակի բարձրացմանը, գների ճկունության ապահովմանը և դրանց գիտականորեն հիմնավորված փոփոխությունների իրականացմանը։ Մինչդեռ տնտեսավարման արդի պայմաններում լրիվին չեն օգտագործվում գնագոյացման հնարավորությունները՝ արտադրանքի որակի բարձրացումը տնտեսագիտորեն խրախուսելու համար։ Գործնականում ձեռնարկությունները, ինչպես վկայում են բազմաթիվ փաստեր, դեռևս այնքան էլ շահագրգռված չեն որակական ցուցանիշների բարձրացմամբ և անհրաժեշտ նյութական պատասխանատվություն չեն կրում ցածրորակ արտադրանքի թողարկման համար։ Նույնիսկ որականիշի արժանացած արտադրատեսակների թողարկման դեպքում ձեռնարկության կոլեկտիվը խրախուսվում է հիմնականում բարոյապես։ Նյութական խրախուսումը իրականացվում է աննշան չափերով, այն էլ խրախուսման ռեզերվային ֆոնդերի հաշվին, մինիստրության կամ միավորման կողմից։ Մենք պետք է մշտապես հիշենք Վ. Ի. Լենինի խոսքերը. «Առանց անձնական շահագրգռվածության ոչինչ չի ստացվի։ Պետք է կարողանալ շահագրգռել» (ԵԼԺ, հ. 53, էջ 319)։ Բարձրորակ արտադրանքի թողարկման խրախուսման կարևոր պայմաններից մեկը արտադրատեսակների որակի փոփոխմանը համապատասխան գների փոփոխությունների իրականացումն է։ Ըստ այդ սկզբունքի գործնականում կիրառվում է բազիսային գինը։ Այն

սահմանվում է հաջորդական փուլերով թողարկվող արտադրանքի բազիսային որակի (կամ կոնդիցիայի) որոշմամբ՝ տարբերակվելով արտադրության պայմաններին համապատասխան։ Այստեղ, որպես արտադրատեսակի որակի բարձրացումը խրախուսելու և տեսականին բարելավելու գործուն լծակներ, հանդես են գալիս զեղչերն ու վերադիրները։ Դրանք կիրառվում են որոշակի տոկոսներով՝ մեծածախ կամ մանրածախ գների նկատմամբ։ Վերադիրները սահմանվում են բարձրորակ ապրանքների, իսկ զեղչերը երկրորդ տեսակի արտադրանքի գների նկատմամբ։ Զեղչերի ու վերադիրների համակարգի օգտագործման միջոցով գները փոփոխվում են հօգուտ սպառողի կամ արտադրողի։ Այստեղ արդեն առաջին պլան է մղվում արտադրող—սպառող—բյուջե օղակների միջև առաջացած բացարձակ գումարների բաշխման կարգավորման խնդիրը։ Բարձրորակ արտադրանքի թողարկման համար նյութական շահագրգռվածությունն իրականացվում է այդ արտադրատեսակի նկատմամբ բարձր գին սահմանելու միջոցով։ Միաժամանակ սպառողի տնտեսական շահավետությունը պահանջում է իր շահույթների գումարների աճի զուգակցում արտադրության ծախսերի կրճատմանը համընթաց։ Շահութաբերության մակարդակի կարգավորման նպատակով ՍՍՀՄ գների պետկոմիտեն, պետպլանի և ֆինանսների մինիստրության հետ համաձայնեցված, փոփոխում է մեծածախ գինը հօգուտ արտադրողի՝ մանրածախ գինը թողնելով անփոփոխ։ Արտադրանքի որակի բարձրացմանը համապատասխան իրականացվող գների մակարդակների բարձրացումը ուղեկցվում է ձեռնարկության շահույթների մեծացմամբ։ Բարձրորակ արտադրանքի թողարկման անհրաժեշտ լրացուցիչ ծախսերի և այդ տեսականու գների կազմում ընդգրկված վերադիրների գումարների միջև գոյանում է որոշակի տարբերություն։ Այն իրենից ներկայացնում է տվյալ արտադրատեսակի որակի բարձրացումից գոյացած շահույթը։ Սակայն պլանային գները դեռևս լիովին չեն նպաստում արտադրանքի որակի բարձրացմանը։ Դեռևս դրանցում թույլ են արտացոլված դրան նպաստող լրացուցիչ ծախսերը, որոնք կազմում են արտադրության հասարակական ծախսումների մի մասը։ Մինչդեռ ճկուն և ստույգ սահմանված գները ոչ միայն կարող են նպաստել արտադրանքի որակի բարձրացմանը, այլև ներգործել թողարկվող արտադրատեսակի նորացման, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման վրա։

Վերջին տարիներին որականիշով արտադրատեսակների թողարկման ուղղությամբ որոշակի տեղաշարժեր են կատարվել, որոնք, սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, գոհացուցիչ չեն, քանի որ «Արդյունավետ էկոնոմիկան նաև նշանակում է արտադրանքի բարձր որակ, նրա սպառողական ու տեխնիկատնտեսական հատկությունների բարելավում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 179)։

«Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման համաձայն, ընթացիկ հնգամյակում կիրառվում է պլանավորման և ձեռնարկության գործունեության գնահատման ցուցանիշների նոր համակարգ։ Այս նոր համակարգին բնորոշ ցուցանիշներից է զուտ արտադրանքի ցուցանիշը՝ կայուն նորմատիվի սահմանմամբ։ Այն էապես տարբերվում է համախառն կամ ապրանքային արտադրանքի ցուցանիշներից, որոնք ընդգրկում են և՛ փոխանցված, և՛ նոր ստեղծված արժեքը։ Նոր ցուցանիշն արտացոլում է տվյալ արտադրական օղակի դերը պատրաստի արտադրանքի թողարկման գործում՝ հաշվի առնելով միա՛յն կենդանի աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսումները։ Այսինքն՝ արտացոլում է արտադրանքի արժեքի միայն այն մասը, որն ստեղծված է տվյա՛լ ժամանակահատվածում, տվյա՛լ ձեռնարկության կոլեկտիվի կողմից։ Այն, որպես նորաստեղծ արժեք, արտահայտում է աշխատանքային կոլեկտիվների սեփական աշխատանքի արդյունքները, վերացնում է արտադրության նյութատարության մեծացման գործում ձեռնարկության շահագրգռվածությունը, նպաստում



ձեռնարկությունների ու միավորումների գործունեության օբյեկտիվ գնահատմանը։

Զուտ արտադրանքի ճյուղային նորմատիվներն ընդգրկված են 1982 թ. հունվարի 1-ից կիրառվող նոր մեծածախ գների կազմում։ Դրանք սահմանվում են մեծածախ գների ձևավորման ընթացքում՝ արտացոլելով աշխատատարության պրոգրեսիվ նորմաների հիման վրա որոշված կենդանի աշխատանքի միջին ճյուղային ծախսումները։ Զուտ արտադրանքի ցուցանիշը սահմանվում է ըստ գնագոյացման հիմք ընդունվող պլանային ինքնարժեքի մակարդակի՝ ընդգրկելով աշխատավարձը, սոցապահովագրության հատկացումները և շահույթը։ Սակայն զուտ արտադրանքի ցուցանիշի կիրառման արդյունքներն արդեն իսկ ընթացիկ հնգամյակի առաջին տարիներին լուրջ բանավեճի տեղիք են տալիս։ Աստիճանաբար բացահայտվում են այդ ցուցանիշի արժանիքներն ու գործնական կիրառման ընթացքում տեղ գտած թերությունները։ Նրա կիրառման արդյունքները մշտապես վերլուծվում են արտադրության արդյունավետության բարձրացման, ըստ տեսականու պլանների ձևավորման ու կատարման, նոր, պրոգրեսիվ արտադրատեսակների թողարկման, աշխատավարձի ֆոնդի օգտագործման և այլ ցուցանիշների վրա ներգործության բացահայտման նպատակով։ Իրականում զուտ արտադրանքի ցուցանիշի առավելություններն ու գործնական արդյունավետությունը լիովին ի հայտ են գալիս ձեռնարկության ներարտադրական օղակներում այն կիրառելու դեպքում։ Դրա օգտագործումը ներգործարանային պլանավորման ընթացքում առանձին արտադրամասերի, տեղամասերի և բրիգադների կողմից կարող է ապահովել աշխատանքի արտադրողականության նշանակալի աճ։ Այս ցուցանիշի կիրառումը նպատակամղված է արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման գործում սոցիալիստական արտադրության հնարավորությունների ու առավելությունների առավել լրիվ օգտագործմանը։ Գնագոյացման կատարելագործման նպատակով զուտ արտադրանքի ցուցանիշի կիրառումը կնպաստի գները աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսումների մակարդակին մոտեցնելու սկզբունքին։ Այս սկզբունքի իրականացումը բխում է ՍՄԿԿ ծրագրի պահանջներից, որոնց համաձայն գները պետք է ավելի ու ավելի մեծ չափով արտացոլեն աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսերը, ապահովեն արտադրության և շրջանառության ծախքերի փոխհատուցումը և որոշակի շահույթ՝ նորմալ կերպով աշխատող յուրաքանչյուր ձեռնարկությանը։ Տնտեսավարման արդի պայմաններում, համաձայն ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների, «Պետք է անցում կատարվի նոր մեծածախ գների ու տարիֆների, որը կուժեղացնի նրանց դերը գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրանքի նորացման և որակի բարելավման, նյութական ռեսուրսների խնայողական օգտագործման ասպարեզում, պայմաններ կստեղծի ձեռնարկությունների տնտհաշվարկային նորմալ գործունեության համար» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 204)։

Զարգացած սոցիալիզմի փուլին բնորոշ է գների մակարդակների կայունությունը, դրանց պլանաչափ, տնտեսագիտորեն հիմնավորված իջեցումը՝ ըստ առանձին ապրանքատեսակների ու ապրանքախմբերի։ Դրան են նպատակամղված գների հմուտ և արդյունավետ կառավարումը, ժամանակին անհրաժեշտ ուղղությամբ և որոշակի չափերով դրանց փոփոխությունների իրականացումը։ Հասարակական արտադրության զարգացումը թելադրում է ինքնարժեքի իջեցման անհրաժեշտությունը, որն իր հերթին մեծածախ գների իջեցման կարևոր նախադրյալներից է և միաժամանակ կարող է նպաստել ռուբլու կուրսի ամրապնդմանը։ Պետական գները շրջանցելու կամ բարձրացնելու, ինչպես նաև թողարկվող արտադրանքի սահմանված տեսականին ու ստանդարտները խախտելու ամեն մի փորձ համարվում է հակապետական գործունեություն։ Շահույթների մեծացման միակ ուղին արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման ուղին է։ Ինքնարժեքի իջեցմամբ պայմանավորված գների փոփոխությունները նպատակամղվում են ինչպես արտադրանքի որակի խրախուսմանը, այնպես էլ արտադրանքի հասարակական օգտակարության և սպառողական արժեքի

վրա դրանց ունեցած ներգործությանը: Այսինքն, գների փոփոխությունները պետք է համապատասխանեն թե՛ արտադրության և թե՛ շրջանառության, բաշխման ու սպառման ոլորտների պահանջներին: Քանի որ յուրաքանչյուր ձեռնարկության տնտեսական գործունեության պայմանները անընդհատ փոփոխվում են, ուստի և դրանք համապատասխանաբար հարուցում են գների փոփոխություններ: Այդպիսի փոփոխություններ նախկինում կատարվել են միանվագ վերանայումների միջոցով: Ընդ որում, արտադրության և իրացման ծախքերի փոփոխություններին գները համապատասխանեցվել են բավականին ուշ, միայն մասսայական վերանայումների միջոցով: Ներկայումս, մինչև մասսայական վերանայումը, գնացուցակներում կատարվում են որոշակի ուղղումներ, իջեցվում են բարձր շահութաբերություն ունեցող արտադրատեսակների գները և պլանավորման ընթացքում նախատեսվում են հեռանկարային փոփոխություններ: Գործնականում գները սահմանվում են պլանային ինքնարժեքի և շահութաբերության պլանային նորմատիվի հիման վրա, որն արհեստականորեն ինքնարժեքի բարձրացման միտում է առաջացնում՝ այն իջեցնելու փոխարեն: Այս հանգամանքը պայմանավորված է առանձին ձեռնարկությունների կողմից մեծածախ գների նախագծերում, հօգուտ իրենց, նախապես արտադրության ծախքերի մակարդակների մեծացմամբ: Հետևապես, այս վնասակար երևույթից խուսափելու համար առավել նպատակահարմար է գները սահմանել փաստացի միջճյուղային ինքնարժեքի հիման վրա, տնտեսական տարբեր ազդակներով ներգործելով փաստացի ինքնաժեքի իջեցման վրա:

Գործնականում արտադրության զարգացման ռեալ իրավիճակի, կառուցվածքի ու արդյունավետության մակարդակի ստույգ արտացոլման համար անհրաժեշտ է մշտապես իրականացնել գների վերանայումներ: Միաժամանակ, պլանավորումը պահանջում է գների կայունության ապահովում: Այս երկու սկզբունքների համատեղ իրականացման նպատակով օգտագործվում է գների կայունության ու ճկունության ռեալ զուգակցումը: Եվ քանի որ արդյունաբերության մեջ գործող գների համակարգը դադարել էր հասարակական արտադրության կառուցվածքում տեղի ունեցող փոփոխություններն արտացոլելուց և չէր համապատասխանում արտադրության ու իրացման նոր պայմաններին, ուստի հերթական գների վերանայմամբ 1982 թ. հունվարի 1-ից արտադրության բոլոր ճյուղերում կիրառվեցին նոր մեծածախ գներ: Դրանց նպատակն է ապահովել գործող գների կայունությունը աշխատատարության, մետաղատարության, վառելիքաէներգետիկ ռեսուրսների և այլ ծախսերի պրոգրեսիվ նորմաների կիրառմամբ: Ուստի այսուհետ ևս անհրաժեշտ է ժողովրդական տնտեսության ճյուղերում կատարելագործել գնագոյացումը՝ որպես պլանային կառավարման կարևոր միջոց: Պահանջվում է ուժեղացնել մեծածախ գների խթանիչ ներգործությունը արտադրանքի որակի բարելավման, նոր, բարձրարդյունավետ տեխնիկայի յուրացման, արտադրական ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման հիման վրա: Գների կարգապահության ամրապնդման նպատակով անհրաժեշտ է ուժեղացնել պետական ու հասարակական վերահսկողությունը, բարձրացնել միավորումների, ձեռնարկությունների, կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվությունն ու պահանջկոտությունը:

Գնագոյացման պլանաչափ կառավարումը և գների համակարգի ճկուն ու արդյունավետ մեխանիզմի ընտրությունը կատարվում են մարքս-լենինյան արժեքի աշխատանքային տեսության հիման վրա:

Ընթացիկ հնգամյակում բնակչության համար անհրաժեշտ ապրանքների արտադրության և սպասարկումների ոլորտի զարգացման նպատակով ակտիվորեն է օգտագործվում տնտեսական լծակների ու խթանների ողջ սիստեմը: Կուսակցությունը գտնում է, որ նյութական բարեկեցության ռեալ բարձրացման գլխավոր ուղին արտադրության արդյունավետության բարձրացումն է:



# ԿՈՒՍՇՐՋԿՈՄԸ ԵՎ ՍՈՎԵՏՆԵՐԸ

**ԶԵՄՄԱ ԱՆԱՆՅԱՆ**
ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ նպատակները տանող ճանապարհին մեր երկիրը լուծում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման մեծ ու լարված աշխատանքի գլխավոր բովանդակությունը կազմող բազմաթիվ խոշոր ու բարդ խնդիրներ և պրոբլեմներ: Եվ այդ մեծ գործին կոչված են ամենաակտիվ մասնակցությունը ցույց տալու նաև բոլոր աստիճանների ժողովրդական դեպուտատների սովետները: Այս առումով մեզ համար գործողության ուղեցույց է «Ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումի որոշման պահանջը. «Բարձրացնել ժողովրդական դեպուտատների սովետների կողմից կառավարման մարմինների աշխատանքի վերահսկողության գործունությունը: Հասնել այն բանին, որ սովետները խստապահանջ և անաչառ կերպով գնահատեն բոլոր մակարդակների պաշտոնատար անձանց և տնտեսական ղեկավարների գործունեությունը, ավելի շատ ուշադրություն նվիրեն ընտրողների պատվիրանների իրականացմանը, իրավակարգի ամրապնդմանը, իշխանության օրենքների հեղինակության բարձրացմանը»: Պլենումը խնդիր դրեց, որպեսզի սահմանադրությամբ սովետներին տրված լիիշխանությունը մշտապես և ամենուրեք իր արտացոլումը գտնի նրանց գործունեության, թե՛ բովանդակության և թե՛ ոճի մեջ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը մեկ անգամ ևս կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ուշադրությունը հրավիրեց մեր աշխատանքի ոճի կատարելագործման վրա: Պլենումը խնդիր դրեց ակտիվացնել մարդկային գործոնը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուրն իր տեղում աշխատի բարեխղճորեն և լիակատար հատուցմով: Այս պահանջը հավասարապես վերաբերում է նաև սովետներին, նրանց ղեկավար կադրերին, բոլոր աշխատողներին: Որովհետև, ինչպես նշեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը, «Կյանքն ինքն է օրակարգի հարց դարձնում աշխատանքը վճռականապես բարելավելու, հասարակության զարգացման արդի փուլի պահանջներին այդ աշխատանքը համապատասխանեցնելու անհրաժեշտությունը»:

Սովետների առջև ծառացած խնդիրների լուծման, աշխատանքի բարելավման գործում վճռական նշանակություն ունի նրանց կուսակցական ղեկավարումը: Կուսակցությունը պահանջում է կատարելագործել սովետների գործունեության վրա կուսակցական ազդեցության մեթոդները, բարձրացնել դրանց արդյունավետությունը, վերացնել ձևամոլության ամեն տեսակ տարրերը:

ՀԿԿ Իջևանի շրջկոմը ձգտում է, որպեսզի շրջանային, քաղաքային ու գյուղական սովետները մշտապես գտնվեն իրենց կոչման բարձրության վրա,

ինչպես հարկն է օգտվեն օրենքով իրենց վերապահված իրավունքներից, հետևողականորեն կատարեն ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջները։

Մտորելով ժողովրդական իշխանության տեղական մարմինների աշխատանքի հետագա բարելավման մասին՝ ակամա հիշում եմ կուսշրջկոմի պլենումներում արծարծված խնդիրները, շրջկոմ ընդունելության եկած բազմաթիվ քաղաքացիների, նաև՝ տնտեսական ղեկավարների արտահայտած մտքերը։ Շրջկոմի անցած տարվա վերջերին կայացած պլենումներից մեկում շրջսովետի դեպուտատ, Սևքարի սովխոզի ծխախոտագործական բրիգադի բրիգադավար, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Արամայիս Բաղինյանն իր ելույթում շրջկոմի առջև հարց բարձրացրեց՝ օգնել իրենց տնտեսությանը ջրհան կայան կառուցելու, գյուղամիջյան ճանապարհներն ու հրապարակը բարեկարգելու գործում։ Ա. Բաղինյանն աչքի է ընկնում պատասխանատվության բարձր զգացումով և աշխատասիրությամբ, օժտված է քաղաքացիական ակտիվ կենսադիրքորոշմամբ։ Երկար տարիներ նա ղեկավարում է շրջանի առաջատար տնտեսություններից մեկի ծխախոտագործական բրիգադը և միշտ էլ պատվով է կատարել իր առջև դրված խնդիրներն ու ստանձնած սոցպարտավորությունները։ Եվ նրա անհանգստությունը հասկանալի էր. մարդն ուզում էր, որ իրենց գյուղը ավելի բարեկարգ ու բարետես լինի, տընտեսությունում ավելի արդյունավետ լուծվեն ոռոգման հարցերը։

Այս և նման կարգի շատ այլ հարցեր, իհարկե, համապատասխան ընթացք ու լուծում են ստանում։ Բայց ինչո՞ւ դրանք բարձրացվում են շրջկոմում։ Ինչո՞ւ գյուղամիջյան ճանապարհների բարեկարգման, ոռոգման և նման շատ այլ հարցեր չեն լուծվում անմիջականորեն իշխանության տեղական մարմիններում՝ գյուղական սովետների գործկոմներում, ագրոարդյունաբերական համալիրում։ Պատասխանը տալիս են հենց իրենք՝ հարց բարձրացնողները։ Նրանք պատճառաբանում են, որ պետական իշխանության տեղական մարմիններն անհրաժեշտ հետևողականություն չեն ցուցաբերում իրենց սահմանադրական լիազորությունների իրականացման նկատմամբ, թույլ է տնտեսական մարմինների հետ նրանց համագործակցությունը, առանձին դեպքերում անտարբերությունն ու անպատասխանատվությունը չեն դատապարտվում։

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումը կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման գլխավոր պայմանը համարեց այն, որ յուրաքանչյուրն զբաղվի իր գործով, բարեխղճորեն կատարի իր պարտականությունները։ «Գործունեության ոչ մի ոլորտում,— ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը,— էական արդյունքների չի կարելի հասնել այնքան ժամանակ, քանի դեռ կուսակցական աշխատողը տնտեսական աշխատողի տեղը կբռնի, ինժեները՝ ցրիչի, քանի դեռ գիտնականը կաշխատի բանջարեղենի բազայում, ջուլհակուհին՝ ֆերմայում»։

Ցավալի է, իհարկե, բայց իրողություն է։ Խոսքը նաև այն մարդկանց պատասխանատվության մասին է, ովքեր աշխատում են ժողովրդական իշխանության մարմիններում և պարտավոր են պետականորեն մոտենալ ցանկացած հարցի լուծմանը, իրենց աշխատանքով, կենցաղով, վարքագծով լինել օրինակելի։ Այս մասին լուրջ խոսակցություն եղավ շրջկոմի՝ անցած տարվա հունիսին տեղի ունեցած պլենումում։

Իմ կարծիքով այն որոշակի հակասությունները, որոնք գոյություն ունեն սովետների ունեցած հարուստ հնարավորությունների և դրանց օգտագործման միջև և որոնց մասին խստորեն ասվեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումներում, առաջին հերթին հետևանք են սովետների կուսակցական ղեկավարման գործում տեղ գտած թերությունների։

Գաղտնիք չէ, որ, բախվելով այս կամ այն դժվարության, պրոբլեմի հետ, տնտեսական ղեկավարը, քաղաքացին շտապում են շրջկոմ և ոչ թե գյուղական սովետ, շրջանային կամ քաղաքային սովետների գործկոմների համապատասխան բաժիններ։ Դա, ինչ խոսք, ինքնին վկայում է շրջկոմի հեղինակության մասին, բայց միաժամանակ նաև այն բանի հաստատումն է, որ կուսակցական մարմինները հաճախ զբաղվում են իրենց չվերաբերող կամ քիչ վերաբերող գործերով, փոխարինում սովետական, տնտեսական մարմիններին։ Մյուս



կողմից՝ խոսքն այսօր հենց իշխանության տեղական մարմինների, բուն սովետների հեղինակության բարձրացման, նրանց աշխատանքի կատարելագործման մասին է։ Այս առումով էլ կուսշրջկոմը ձեռնարկել և իրականացնում է միջոցառումների կոմպլեքսային ծրագիր։ Ամենօրյա ուշադրության կենտրոնում պահելով սովետների աշխատանքի արդյունավետության բարձրացումը՝ մենք առաջին հերթին ձգտում ենք բարելավել այնտեղ աշխատող կադրերի որակական կազմը։ Այժմ շրջանային և քաղաքային սովետների գործկոմները համալրված են բարձրագույն կրթությամբ կադրերով։ Նրանց մեծ մասը ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների մասնագետներ են։ Էապես բարելավել ենք նաև գյուղական ու ավանային սովետների ղեկավար կադրերի որակական կազմը։ Եթե հինգ տարի առաջ գյուղական սովետների գործկոմների 14 նախագահներից բարձրագույն կրթություն ուներ ընդամենը 3-ը, ապա այժմ՝ 13-ը։

Հասկանալի է, կադրերի որակական կազմի բարելավմամբ հնարավոր կլինի կատարելագործել սովետների ու նրանց գործկոմների աշխատանքի ոճը, ընդլայնել նրանց գործունեության շրջանակները։

Սովետների կուսակցական ղեկավարման բարելավման գործում շատ կարևոր է բուն սովետներում կուսակցական միջուկի ամրապնդումը։ Այժմ տեղական սովետներում ընտրված 620 դեպուտատներից 266-ը ՍՄԿԿ անդամներ են։ Նրանց 90 տոկոսից ավելին ընդգրկված են սովետների մշտական հանձնաժողովներում։

Սովետների կուսակցական ղեկավարումը բարելավելու նպատակով, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումից հետո, առանձնահատուկ ուշադրություն ենք նվիրում սովետներում կուսակցական խմբերի մարտունակության բարձրացմանը։ Կոմունիստները սովետներում մեծ ուժ են։ Նրանք իրենց շուրջն են համախմբում կոմերիտական և անկուսակցական դեպուտատներին, օգնում նրանց իրենց սահմանադրական լիազորությունների իրականացման գործում, ակտիվորեն մասնակցում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, նպաստում ընդունված որոշումների կատարմանը։ Եվ, բնականաբար, այժմ իշխանության տեղական մարմիններում համեմատաբար ավելի շատ են նախաձեռնությունները, դեպուտատները դրսևորում են ձեռներեցություն, ավելի մոտ են կանգնում մասսաներին, արժանի ներդրում անում շրջանի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում։

Ինչ խոսք, սոցիալական զարգացման ամեն մի հարցի լուծում որոշակի ձևով շոշափում է տվյալ սովետի հեղինակությունը, որի բարձրացումը հույժ անհրաժեշտ խնդիր համարեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը։ Սակայն սովետների հեղինակությունը նախ և առաջ ստեղծում են նրա կազմի մեջ մտնող դեպուտատները։ Եվ դրա համար էլ մենք ձգտում ենք կոմունիստ դեպուտատների օրինակով բոլոր դեպուտատներին դաստիարակել «ՍՍՀՄ-ում ժողովրդական դեպուտատի ստատուսի մասին» օրենքի պահանջների անվերապահ իրականացման ոգով, ամրապնդել ընտրողների հետ նրանց կապը, օգնել նրանց՝ կատարելու ընտրողների պատվիրանները։ Իսկ դրանք արտահայտվում են, առաջին հերթին, նրանց բարձրացրած հարցերին ընթացք տալու մեջ։ Թե՛ կուսակցական կազմակերպությունները, թե՛ սովետական ու տնտեսական մարմինները առաջնահերթ նշանակություն են տալիս դրանց։ Այսպես, օրինակ, Վազաշենի սովխոզի օղակավարուհի, հանրապետության Գերագույն սովետի և շրջանային սովետի դեպուտատ Ջինա Աթաբեկյանը շրջանային սովետի նստաշրջաններից մեկում հարց բարձրացրեց գյուղում կառուցել կուլտուրայի տուն և վարչական շենք, տնտեսությունն ապահովել ոռոգման ջրով։ Պահանջը, իհարկե, մեկ օրում լուծելու հարց չէր։ Եվ դեպուտատը չսահմանափակվեց իր այդ ելույթով, նա եղավ ագրոարդյունաբերական շրջանային միավորումում, շրջսովետի գործկոմում, կուսշրջկոմում։ Եվ նրա բարձրացրած բոլոր հարցերը լուծվել կամ լուծման ընթացքի մեջ են. գյուղում կառուցվել է վարչական շենք, 20 հազար խմ ջրի տարողությամբ օրական կարգավորող ջրավազան, պատրաստ են կուլտուրայի տան նախագծային փաստաթղթերը։

Մեկ այլ օրինակ. Բերքաբերը մեր շրջանի ծայրամասային գյուղերից է։ Այն չուներ իր մանկապարտեզը, հեռախոսային կապը։ Այդ մասին հարց բարձրացրեց գյուղի ութամյա դպրոցի շնորհալի ուսուցիչ, շրջսովետի դեպուտատ Հ. Արզումանյանը։ Ճիշտ է, հարցի լուծումը դյուրին չէր, բայց այժմ գյուղում արդեն գործում է մսուր-մանկապարտեզ, անցկացվել է հեռախոսային կապ։

Նման օրինակները եզակի չեն։ Շրջանային, քաղաքային, գյուղական ու ավանային սովետների ավելի քան 600 դեպուտատների մեծ մասը պատասխանատվությամբ է վերաբերվում ժողովրդի ընտրյալի իր կոչմանը և բոլոր հնարավորությունները գործադրում՝ ընտրողների ձայնին ունկնդիր լինելու, ներկայացված պահանջներին անհրաժեշտ ընթացք տալու համար։

Երկար տարիներ շրջանը չէր կատարում հացահատիկի, խաղողի արտադրության պլանային առաջադրանքները, ցածր էր անասնապահության մթերատվությունը։ Ձեռնամուխ լինելով հարցի լուծմանը՝ շրջկոմը անհրաժեշտ համարեց այդ գործին ակտիվորեն ներգրավել տեղական սովետներին, նրանց դեպուտատներին, աշխուժացնել ագրոարդյունաբերական համալիրի գործունեությունը։ Շրջկոմի բյուրոյում սովետների պատասխանատու շատ աշխատողներ ըստ արտադրության տարբեր ճյուղերի կոնկրետ կուսակցական հանձնարարություններ ստացան։ Հանձնարարությունների կատարման նկատմամբ վերահսկողություն ապահովելու նպատակով բյուրոյում պարբերաբար քննարկում ենք նրանց հաշվետվությունները։ Եվ պատասխանատվությունն էլ անհամեմատ բարձրացել է՝ իր հետ բերելով նաև տնտեսական արդյունավետության շոշափելի աճ։

Սովետների աշխատանքի կատարելագործման ու արդյունավետության բարձրացման նպատակով կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները հետևողական աշխատանք են տանում ամենից առաջ դեպուտատների հասարակական ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու, իրենց պարտականությունների կատարման նկատմամբ նրանց մոտ զգայուն վերաբերմունք դաստիարակելու համար։ Արդեն երրորդ տարին է, ինչ գործնականում արմատավորվել է շրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում ղեկավար պոստերում աշխատող դեպուտատների հաշվետվությունների քննարկման պրակտիկան։ Նրանք հաշիվ են տալիս իրենց ղեկավարած կոլեկտիվների առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման, դեպուտատական լիազորությունների կենսագործման մասին։ 1984 թ. հոկտեմբերին, օրինակ, շրջկոմի պլենումում քննարկվեց շրջսովետի դեպուտատ, «Իջևանի բենտոնիտ» կոմբինատի դիրեկտոր Ս. Ղազարյանի հաշվետվությունը։ Հարցի մանրակրկիտ ուսումնասիրման և համակողմանի քննարկման միջոցով զգալի թերություններ բացահայտվեցին ինչպես բուն կոմբինատի սոցիալ-տնտեսական ծրագրերի կատարման, այնպես էլ Ազատամուտ ավանի սոցիալական զարգացման խնդիրների լուծման գործում։ Մասնավորապես, կոմբինատում մեծ տոկոս էր կազմում աշխատուժի հոսունությունը, չէին կատարվում բենտափոշու արտադրության պլանային առաջադրանքները, անհարգելի ձգձգվում էր ակտիվացիայի գործարանի շինարարությունը, չէր բարելավվում ավանի բնակչությանը խմելու ջրով ապահովելու գործը և այլն։ Բացահայտված թերությունները վերացնելու նպատակով պլենումը մշակեց տևական աշխատանքի գործնական ծրագիր։ Այն հետևողականորեն իրականացվում և արդեն տալիս է շոշափելի արդյունքներ։

Բարեփոխումներ են կատարվել Ազատամուտ ավանում։ Ջողազի ջրամբարից խմելու ջուրն արդեն հասցվել է ավան։ Բոլորովին վերջերս այստեղ շահագործման հանձնվեց առևտրի կենտրոնը, բացվեցին կենցաղային սպասարկման նոր ծառայություններ։ Սակայն, այսուհանդերձ, հիմնական անելիքները դեռ առջևում են, և ինչպես կոմբինատի սկզբնական կուսկազմակերպությունն ու դիրեկցիան, այնպես էլ Ազատամուտի ավանային սովետը լարված ու պատասխանատվության բարձր զգացումով աշխատում են շրջկոմի պլենումի որոշումները մինչև վերջ կենսագործելու համար։

Քաղաքաշինության, քաղաքի բնակչության սպասարկման գործում լուրջ



թերություններ արձանագրվեցին շրջկոմի ընթացիկ տարվա հունիսի 24-ի բյուրոյում ժողովրդական դեպուտատների Իջևանի քաղաքային սովետի գործկոմի նախագահ Գ. Դավթյանի հաշվետվության քննարկման ժամանակ։ Մշակված միջոցառումների իրականացման նկատմամբ սահմանվեց օպերատիվ հսկողություն։ Դրա շնորհիվ կարճ ժամանակում արդեն լուծվել և լուծման ընթացքի մեջ են բազմաթիվ հարցեր. կառուցվում են նոր կինոթատրոն, ծածկած շուկա, կենցաղի տուն, ստեղծվում է հանգստի գոտի, բնակչության տրանսպորտային սպասարկումը բարելավելու նպատակով ձեռք են բերվել երթուղային տաքսիներ, բացվել են նոր երթուղիներ։

Բարձրացնելով սովետների կուսակցական ղեկավարման մակարդակը՝ կուսշրջկոմը ձգտում է ապահովել սկզբնական կուսկազմակերպությունների և սովետների համագործակցված աշխատանքը, բացառել սովետների նկատմամբ խնամակալության, նրանց փոխարինման և կրկնօրինակման փաստերը, հասնել այն բանին, որ տնտեսական հարցերը լուծելիս իշխանության տեղական մարմինները, դեպուտատները ավելի շատ նախաձեռնություն հանդես բերեն, գործեն ինքնուրույն։ Մի ժամանակ պատահում էր այնպես, որ նույնիսկ մեկ բնակավայրի բարեկարգման պլանը կազմելու համար ներկայանում էին շրջկոմ և խնդրում օգնություն կամ միջնորդություն։ Այժմ այդպես չէ։ Այդ և նման կարգի բոլոր խնդիրները հիմա իրականացնում են իրենք՝ տեղական սովետները և, պետք է խոստովանել, վատ չեն իրականացնում։ Այժմ բոլոր գյուղական ու ավանային սովետները, ինչպես նաև ժողովրդական դեպուտատների շրջանային ու քաղաքային սովետներն ունեն շրջկոմի բյուրոյի հավանությանն արժանացած՝ բնակավայրերի կառուցապատման, բարեկարգման ու կանաչապատման իրենց միջոցառումների հեռանկարային պլանները։

Սովետները լավ են զբաղվում բնակավայրերի կառուցապատման, բարեկարգման ու կանաչապատման հարցերով։ Դեռևս մի քանի տարի առաջ շրջսովետի գործկոմի նախաձեռնությամբ արմատավորվեց «Բնակավայրերին՝ բարեկարգ տեսք, ճանապարհներին՝ կանաչ գոտի» շարժումը։ Դրան ակտիվորեն են մասնակցում ինչպես դպրոցական, այնպես էլ արտադրական կոլեկտիվները, ողջ բնակչությունը։ Հատկանշական է, որ վերջին հինգ տարիներին Իջևան քաղաքն ու շրջանը երեքական անգամ հաղթող են ճանաչվել բնակավայրերի բարեկարգման գծով հանրապետական ենթակայության քաղաքների, գյուղական շրջանների միջև ծավալված սոցմրցությունում և արժանացել ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի մրցանակների։ Այս տարվա առաջին կիսամյակի արդյունքներով ևս շրջանն արժանացավ մրցանակի։ Արդեն ավանդույթ է դարձել և յուրաքանչյուր տարվա ապրիլ ու նոյեմբեր ամիսներին շրջանում անցկացվում են բարեկարգման, կանաչապատման ու սանիտարական միամսյակներ։

Մեծ ծավալի աշխատանքներ են կատարվել հատկապես Իջևան քաղաքի բարեկարգման նպատակով. միայն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում իրացվել է 235 հազար ռուբլի, նախատեսված 50 հազարի փոխարեն։ Ստեղծվել է կես հեկտարանոց հանգստի նոր պուրակ, քաղաքի ծաղկատնտեսության տարածքը ավելացել է ավելի քան չորս հազար քառակուսի մետրով։ Աղստև գետի վրա շահագործման է հանձնվել երկու հետիոտն կամուրջ, Աղդան և Աղստև գետերի երկայնքով կառուցվում են եռնապատեր։ Ընթացիկ հնգամյակում Իջևան քաղաքում և շրջանի բնակավայրերում տնկվել են ավելի քան 70 հազար ծառ ու թուփ, բարեկարգվել է մի քանի տասնյակ կիլոմետր գյուղամիջյան ճանապարհ։ Այդ աշխատանքների զգալի մասը կատարվել է հանգստյան օրերին՝ շաբաթօրյակների միջոցով, որոնց ակտիվորեն մասնակցել են հազարավոր աշխատավորներ, պիոներ-դպրոցականներ։ Այս առումով առավել լավ են աշխատել Սևքարի, Գանձաքարի, Խաշթառակի գյուղական, Ազատամուտի ավանային և Իջևանի քաղաքային սովետների գործկոմները։ Այդպիսի ակտիվությունը, անկասկած, նպաստում է ինչպես դեպուտատների, այնպես էլ գործկոմների հեղինակության բարձրացմանը, ընտրողների հասարակական գիտակցականության աճին։

Ջգալիորեն բարձրացել է տեղական սովետների, նրանց մշտական հանձնաժողովների պատասխանատվությունը բնակչության սպասարկման բարելավման համար։ Նրանք անհրաժեշտ հսկողություն են սահմանում այդ գործի նկատմամբ և օգնություն ցույց տալիս համապատասխան կազմակերպություններին։ Գործի բարելավմանը մեծապես նպաստում են կուսշրջկոմի բյուրոյի նիստերում կապի, կենցաղի, առևտրի ու հասարակական սննդի, առողջապահության ծառայությունների վերաբերյալ հարցերի գործարար քննարկումները, նկատված թերությունների վերացման գործում կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների խնդիրների ճիշտ սահմանումը։

Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները մշտապես հետևում են տեղական սովետների աշխատանքի ոճի կատարելագործմանը։ Լայնորեն պրոպագանդվում է առաջավորների դրական փորձը։ Վերջին շրջանում գյուղական սովետի գործունեության ղեկավարումը նկատելիորեն բարելավել է Սևքարի սովխոզային սկզբնական կուսկազմակերպությունը։ Գյուղին, տնտեսությանը հուզող բոլոր հարցերի լուծումն այստեղ հավասարապես մտահոգում է թե՛ գյուղական սովետի գործկոմին, թե՛ կուսկոմիտեին, և թե տնտեսության դիրեկցիային։ Գյուղի սոցիալ-տնտեսական զարգացման նպատակով նրանց մշակած համատեղ միջոցառումները տալիս են շոշափելի արդյունքներ։ Անցած տարի տնտեսությունը կատարեց պետությանը հացահատիկի վաճառքի նրանց մշակած համատեղ միջոցառումները տալիս են շոշափելի արդյունքներ։ թյան, ավելի քան 20 տոկոսով՝ ծխախոտի հումքի մթերման տարեկան առաջադրանքը։ Լուրջ նվաճումներ են ձեռք բերվել գյուղի սոցիալական զարգացման ասպարեզում։ Էապես փոխվել է մարդկանց կենցաղը, գործարկվել են կուլտուրայի նոր օջախ, կենցաղային սպասարկման, առևտրի նոր օբյեկտներ, միջնակարգ դպրոցի շենքը, ընդարձակվել է հեռախոսային ցանցը, գյուղ է հասցվել բնական գազը, կառուցվել են ասֆալտապատ ճանապարհներ, բարեկարգվել է գյուղի հրապարակը։ Գյուղի սոցիալական զարգացման հարցերը գործարար քննարկման առարկա են դառնում ինչպես գյուղսովետի նստաշրջաններում ու գործկոմի նիստերում, այնպես էլ կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում։

Սովետների աշխատանքի արդյունավետության բարձրացման լավագույն միջոցը, իհարկե, դեպուտատների ստեղծագործական նախաձեռնության զարգացումն է, նրանց ակտիվության ու հեղինակության բարձրացումը, ընտրողների հետ կապի ամրապնդումը։ Այս ասպարեզում տոն տվողն, առաջին հերթին, կոմունիստ դեպուտատներն են, որոնք էլ իրենց շուրջն են համախմբում ժողովրդի մյուս ընտրյալներին, նրանց համար օրինակ ծառայում։ Արվում է ամեն ինչ դեպուտատի օրերը կազմակերպված և արդյունավետ անցկացնելու, ընտրողների տված պատվիրաններն անվերապահորեն կատարելու համար։

Սովետները լայնորեն կիրառում են իրենց գործունեության մասին դեպուտատների հաշվետվությունների ունկնդրման պրակտիկան։ Կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները աջակցում են այդ գործին։ Մենք ջանում ենք, որպեսզի ամեն մի հաշվետվություն որոշակի հետք թողնի իրենց իսկ՝ դեպուտատների, ինչպես նաև սովետների գործունեության վրա, հնարավոր լինի ընդհանրացնել ուսանելի փորձը, բացահայտել ու վերացնել նկատվող թերություններն ու թերացումները։

Վերջին ժամանակներս սովետներն սկսել են ավելի լուրջ ուշադրություն նվիրել աշխատավորների առաջարկությունների, քննադատական դիտողությունների կենսագործմանը, տեղական սովետների գործկոմները, որպես կանոն, ամփոփում են դրանք, միջոցներ ձեռնարկում բարձրացված հարցերը լուծելու համար։ Ընտրողների հետ ունեցած հանդիպումների ժամանակ դեպուտատները հաղորդում են տալիս նրանց քննադատական դիտողությունների, առաջարկությունների, պատվիրանների կատարման ընթացքի մասին։ Վերջին շրջանում պրակտիկայում կիրառվում է նաև սովետների նստաշրջաններում նախորդ որոշումների, արված դիտողությունների ու առաջարկությունների կատարման մասին ինֆորմացիայի հրապարակումը։ Դա, ընդունված որո-



շումների կենսագործման նկատմամբ ցուցաբերվող հետևողականությունից բացի, նաև սովետների հեղինակության բարձրացման կարևոր միջոց է։

Կուսակցությունը սովետների գործունեության բաղկացուցիչ մասը համարում է աշխատավորներին հուզող հարցերի ուսումնասիրումը։ Այդ առումով անփոխարինելի միջոց են նրանց նամակներն ու դիմումները, որոնց առնչությամբ տարվող աշխատանքի բարելավման նպատակով շրջանի կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները մշակել են որոշակի համակարգ։ Այն է՛, ավելի կատարելագործելու համար կուսշրջկոմը սովետական մարմինների հետ համատեղ արմատավորում է աշխատավորական կոլեկտիվներում, բնակավայրերում բաց նամակի օրերի անցկացումը։ Այդ միջոցառմանը մասնակցում և առաջադրված հարցերին պատասխանում են կուսակցական ու սովետական մարմինների, սպասարկման ոլորտի, վերադաս համապատասխան կազմակերպությունների ղեկավար աշխատողները։ Բաց նամակի օրեր են արդեն անցկացվել գորգագործական կոմբինատում, Բերքաբերի պտղատնկարանային տնտեսությունում։ Ընդարձակ է շրջանակը այն հարցերի, որոնք առաջադրվել ու լուծվել են դրանց ընթացքում։

Բաց նամակի օրերին առաջ են քաշվում սոցիալ-տնտեսական կարևոր նշանակության շատ խնդիրներ, բայց պակաս կարևոր չէ նաև հարցի բարոյական կողմը, մարդիկ առանց աշխատանքից կտրվելու, առանց ավելորդ հերթագրումների ներկայացնում են իրենց պահանջը, հայտնում իրենց նկատառումները և ստանում կոնկրետ պատասխան։

Ընթացիկ տարվա սկզբներին շրջանում անցկացրինք նաև բաց նամակի տասնօրյակ, որի ընթացքում բոլոր բնակավայրերում, աշխատավորական կոլեկտիվներում հանդիպումներ ունեցան շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական ու իրավապահպան մարմինների, սպասարկման ոլորտի պատասխանատու աշխատողները։ Տասնօրյակի արդյունքները քննարկվեցին ՀԿԿ շրջկոմի բյուրոյում։ Ձեռնարկել ենք կոնկրետ միջոցառումներ հանդիպումների ընթացքում բարձրացված հարցերը լուծելու համար։ Տարեվերջին նույն աշխատանքային կոլեկտիվներում նույն ընկերները հաշիվ կտան այդ հարցերի լուծման ընթացքի ու արդյունքների մասին։ Մենք գործնականում համոզվել ենք, թե մասսաների հետ շփման նման միջոցը ինչպիսի բարերար ազդեցություն է ունենում ոչ միայն աշխատավոր մարդու տրամադրության, որը, ինչ խոսք, շատ կարևոր է, այլև նրա աշխատանքի արտադրողականության վրա։ Ահա թե ինչու որոշել ենք առաջիկայում միջոցներ ձեռնարկել՝ բաց նամակի օրերի անցկացումն ավելի կատարելագործելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումի պահանջներին համապատասխան, իհարկե, որոշակիորեն վերակառուցվել է սովետների աշխատանքը, բարձրացել նրանց գործունեության արդյունավետությունը։ Սակայն, իրականացնելով ղեկավարությունը սովետների նկատմամբ և անմիջականորեն օգնելով նրանց գործունեությանը, մենք դեռևս տեսնում ենք ոչ քիչ պրոբլեմներ, չլուծված հարցեր, որոնց համար պահանջվում է վերադաս կազմակերպությունների միջամտությունը։

Վերցնենք թեկուզ պետական հույժ կարևորության մի այնպիսի հարց, ինչպիսին գյուղական շինարարությունն է։ Հայտնի է, որ դրա ղեկավարումն ու վերահսկումը իշխանության տեղական մարմինների գլխավոր խնդիրներից են և ամենօրյա հոգսը։ Մինչդեռ ակնհայտ են այդ գործի ոչ հստակ, ոչ ռացիոնալ կազմակերպումն ու ղեկավարումը։ Իջևանի շրջանում, օրինակ, շինարարական աշխատանքներ են իրականացնում յոթ վարչություններ, 14 կապալառու և ենթակապալառու կազմակերպություններ, որոնց հետ հարցերի կարգավորումը, աշխատանքի կոորդինացումը պարզապես վեր են ոչ միայն տեղական սովետների, այլև՝ կուսշրջկոմի ուժերից։

«Իջևանի բենտոնիտ» կոմբինատում տասնմեկերորդ հնգամյակի վերջին երեք տարիներին հիմնական ֆոնդերի իրացման պլանը կատարվել էր ընդամենը 44, անցած տարի՝ 18 տոկոսով։ Պատճառները հայտնի են. գործը ձախողվում է ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության Դիլիջանի № 12 տրեստի և ենթակապալառու կազմակերպությունների անբավա-

բար աշխատանքի հետևանքով։ Վիճակը շտկելու նպատակով միայն անցած տարի համապատասխան մինիստրությունների ու վարչությունների ղեկավար աշխատողների հետ համատեղ կոմբինատում անցկացվել են մի քանի արտադրական խորհրդակցություններ, միջոցառումներ են մշակվել կոմբինատի նոր համալիրի՝ տարիներ շարունակ ձգձգվող շինարարությունում բեկում մտցնելու և այն շահագործման հանձնելու համար։ Սակայն անցնում են նախատեսված ժամկետները, իսկ արձանագրված թերությունների մեծ մասը դեռևս մնում է թղթի վրա։ Մինչդեռ շրջսովետի գործկոմն անկարող է ղեկավարել ու կոորդինացնել ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության Դիլիջանի № 12 տրեստի, հանրապետության մոնտաժային գլխավոր վարչության և նրա կազմի մեջ մտնող ենթակապալառու մի քանի կազմակերպությունների գործունեությունը։ Չեն կատարվել նաև «Իջևանի բենտոնիտ» կոմբինատի աշխատանքի բարելավման վերաբերյալ վերադաս մարմինների ընդունած որոշումները։

Ճիշտ այդ նույն պատճառով էլ շրջսովետի նստաշրջանում գործկոմը դժվարանում էր սպառիչ պատասխան տալ դեպուտատական այն հարցապնդմանը, թե ինչու 1973 թվականից ի վեր աններելիորեն ձգձգվում է Ծաղկավանի ջրմուղի շինարարությունը։ Ջրմուղի պատվիրատուն ՀՍՍՀ կոմունալ տնտեսության մինիստրությունն է, շինարարությունը իրականացնում է արդյունաբերական շինարարության մինիստրությունը, իսկ շահագործումը պետք է ապահովի գյուղատնտեսության մինիստրությունը։

Կամ՝ մի՞թե նորմալ երևույթ է, երբ, ասենք, գյուղական դպրոցի նախագիծը մշակում է կոմունալ տնտեսության մինիստրությունը, շինարարությունը կատարում է արդյունաբերական շինարարության մինիստրությունը, տեխնիկական վերահսկողությունն իրականացնում է քաղաքային սովետի տեխվերահսկողության խումբը, կառույցը ընդունում է շրջսովետի գործկոմը, իսկ լուսավորության մինիստրությանը մնում է այնտեղ ուսումնական պրոցես իրականացնել և կատարել հիմնական նորոգումներ։

Զավեշտանման օրինակներ էլի կարելի է թվարկել։ Համոզված եմ, որ դրանք բնորոշ են նաև հանրապետության մյուս շրջաններին և ուղղակի ազդում են սովետների թե՛ հեղինակության, թե՛ աշխատանքի որակի ու արդյունավետության վրա։ Կարծում եմ, գործը էապես կշահի, եթե գյուղական շինարարության հետ առնչվող բոլոր հարցերը կենտրոնացվեն հենց գյուղատնտեսության մինիստրությունում, որն ավելի մոտ է կանգնած գյուղին ու նրա աշխատավորին և ավելի լավ գիտե նրանց հոգսերը։ Դա դյուրին կդարձնի նաև սովետների աշխատանքը ինչպես անհրաժեշտ ղեկավարություն ու հսկողություն իրականացնելու, այնպես էլ ժողովրդական տնտեսության մեջ ներդրած միջոցներից առավելագույն հատույց ապահովելու առումով։

Մեր երկիրը թևակոխել է տասնմեկերորդ հնգամյակի եզրափակիչ փուլը և համաժողովրդական պայքար է ծավալել ՍՄԿԿ XXVII համագումարն արժանավայել դիմավորելու համար։ Պատմական այդ իրադարձությունը աշխատանքային նոր հաղթանակներով նշանավորելու համար շրջանի ողջ աշխատավորության հետ միասին հարվածային հերթափոխի են կանգնել նաև տեղական սովետները։

Հիրավի լայն են տեղական սովետների գործունեության շրջանակները։ Նրանք կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ լուծում են աշխատավոր մարդկանց հուզող բազմաբնույթ ու բազում հարցեր։ Կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները, ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի որոշումներով, սովետների կուսակցական ղեկավարումը կբարձրացնեն ներկա խնդիրների մակարդակին, իշխանության տեղական մարմինների ողջ պոտենցիալը կնպատակամղեն շրջանի ժողովրդական տնտեսության հետագա առաջընթացի ապահովմանը։

Ռուսաստանյան առաջին
հեղափոխության 80-ամյակի առթիվ

# ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՓՈՐՁԸ ԵՎ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԴԻԿՏԱՏՈՒՐԱՅԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ մարքսիզմի «փորձարկման» ու հաստատման խոշոր իրադարձություն էր, կամ ինչպես Վ. Ի. Լենինն է ասում՝ այն «գլխավոր փորձարկումը», առանց որի անհնարին կլինեին 1917 թ. փետրվարյան և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասվում է. Ռուսաստանը դարձել է «իմպերիալիզմի հակասությունների հանգուցային կետը» և բնական է, այդ հակասությունների լուծումն ամենից առաջ այստեղ պետք է տրվեր։

Հեղափոխության ընթացքում ձևավորվեց մարքսիստական նոր տիպի կուսակցություն, որի հիմնադիր Վ. Ի. Լենինը ոչ միայն հանրագումարի բերեց Մարքսի և Էնգելսի ժառանգությունը, մասնավորապես պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունը, այլև զարգացրեց այն պատմության նոր դասերի հիման վրա, սկզբունքային պայքար մղելով եվրոպական ու ռուսական ռեվիզիոնիստական՝ անարխիստական ու օպորտունիստական հոսանքների դեմ։ Պրոլետարիատի դիկտատուրայի մարքս-լենինյան տեսությունը և սովետական պետության ու սոցիալիստական մյուս երկրների փորձն այսօր անգնահատելի նշանակություն ունեն ազգային անկախություն ստացած երկրների հեղափոխական ուժերի համար։

Վ. Ի. Լենինը Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի մեծագույն վաստակը համարում էր այն, որ նրանք սովորեցրին բանվոր դասակարգին նրա պատմական խնդիրը, նրան հասցրին «ինքնաճանաչման և ինքնագիտակցության»։ Դա ամենից առաջ վերաբերում է դասակարգային շահի, քաղաքական պայքարում սեփական խնդիրների գիտակցմանը, այն կազմակերպչական ու տակտիկական սկզբունքների մշակմանը, որոնք մարքսիզմի փիլիսոփայության կենսագործման ճշմարիտ ուղին են մատնանշում։

Դեռևս անցյալ դարի կեսերին Մարքսն ու Էնգելսը հրապարակեցին բանվորական շարժման առաջին մանիֆեստը, որի քաղաքական բաժնի հիմնական միտքն այն էր, որ հակամարտ հասարակարգի սոցիալական հակասություններն ու չարիքները կարող են լուծվել միայն բանվոր դասակարգի պետական իշխանության պայմաններում, մի իշխանություն, որի նպատակն է հանրայնացնել արտադրամիջոցները, հասարակական հարստության բոլոր աղբյուրներն ի սպաս դնել աշխատավոր մարդկանց բարօրությանը, հասարակության բոլոր անդամների ազատ ու բազմակողմանի զարգացմանը։

Ավելի քան 40 տարվա համատեղ աշխատանքի ընթացքում Մարքսն ու Էնգելսը ոչ միայն մշակեցին գիտական կոմունիզմի տեսական սկզբունքներն ու հիմնադրույթները, այլև ուշի-ուշով հետևում էին եվրոպական ու համաշխարհային իրադրությանը, վերլուծում պատմության դասերը, կամ, ինչպես Լենինն է գրում, պատմությունից դասեր էին քաղում՝ ճշգրտելով ու զարգացնելով իրենց աշխարհըմբռնողությունը։

Այդ վերաբերում է նաև պրոլետարիատի դիկտատուրայի տեսությանը, որի մասին նրանց մտքերն ու դիտողությունները Վ. Ի. Լենինը հավաքել է այնքան ջանասիրաբար և 1917 թ. օգոստոս-սեպտեմբեր ամիսներին ընդհատակում, Ռազլիվ կայարանի թաքստոցում սիստեմավորել իր Պետություն և հեղափոխություն գրքում։ Այստեղ Լենինը հատուկ գլուխ է հատկացնում Մարքսի մահից հետո Ֆ. Էնգելսի այն աշխատություններին, որոնք վերաբերվում են այդ տեսությանը։

Երկրորդ ինտերնացիոնալի պարագլուխները Մարքսի և Էնգելսի մահից հետո «մոռացել» ու «որմնաթաղել» էին նրանց ուսմունքի մեջ գլխավորը՝ սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունը։ Լենինը փաստական տվյալներով ցույց տվեց, որ Մարքսն ու Էնգելսը իբրև հեղափոխական-գիտնականներ էին, որոնք պատմական դեպքերի ու իրադրությունների մեջ տեսնում էին կյանքի օբյեկտիվ օրենքների դրսևորումներն ու գործողությունները, ոչ թե խրատներ էին կարդում պատմությանը, այլ դասեր էին քաղում նրանից և դրա հիմա վրա մշակում տեսությունը։

Էնգելսի այս շրջանի գործերից Լենինը առանձնապես հիշատակում է գերմանական սոցիալ-դեմոկրատիայի 1891 թ. Էրֆուրտի ծրագրի նախագծի քննադատությունը և նույն թվականին Մարքսի Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում աշխատության վերահրատարակությանը կցած ներածությունը, որը Էնգելսը լույս է ընծայում Փարիզի Կոմունայի քսանամյակի առթիվ։

Եթե 1875 թ. Գոթայի համագումարի ընդունած ծրագրում գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության տեսաբանները պետության հարցը շատ ընդհանուր և վերացական ձևով էին դրել, չէին նշել բանվոր դասակարգի համար պետության անհրաժեշտությունը, առավել վատթար էր Էրֆուրտի ծրագրի քաղաքական մասը։ Այնտեղ պետության հարցը բոլորովին անտեսվել էր, և կուսակցության տեսաբանները գտնում էին, որ գերմանական իրականությունը, այսինքն՝ պրուսական ռեակցիոն միապետությունը, լիովին բավարար է, որպեսզի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունն իրականացնի իր խնդիրները։

Ֆ. Էնգելսը գրում էր, թե որքան ծանր դրության մեջ էլ գտնվելիս լինի բանվորական կուսակցությունը, նա իր ծրագրում պետք է գոնե մինիմալ քաղաքական պահանջներ առաջադրի ընդդեմ գոյություն ունեցող կարգերի։ Այն երկրներում, որտեղ միապետական կարգեր են իշխում (Գերմանիա, Ռուսաստան և այլն), այնտեղ գալիք հեղափոխության քաղաքական խնդիրը պետք է լինի դեմոկրատական հանրապետության պահանջը։ Եթե կուսակցությունը չի ուզում իր օպորտունիստական ծրագրով «թզենու տերևի» դեր կատարել, այսինքն ծածկել պրուսական միապետության ռեակցիոն էությունը, նա պետք է իր քաղաքական ընդդիմությունը ցուցադրի գոնե դեմոկրատական հանրապետության պահանջով։ Բանվոր դասակարգի կուսակցությունը միայն այդպիսի դեպքերում է, որ գտնվում է իր պատմական դերի ըմբռնման մակարդակին։ Դեմոկրատական հանրապետությունը մի քայլ առաջ է միապետությունից և հեղափոխության խորացման դեպքում կարող է պրոլետարիատի դիկտատուրայի յուրահատուկ ձև դառնալ։ Իրականում, նկատում է Էնգելսը, պետությունը միշտ էլ բռնության գործիք է մի դասակարգի ձեռքին՝ մյուսին հպատակության մեջ պահելու համար։ Եվ այդ վերաբերում է դեմոկրատական հանրապետությանը նույնքան, որքան և միապետությանը։ Ամբողջ հարցն այն է, թե տվյալ պետությունը ո՛ր դասակարգի շահերից է ելնում։ Պրոլետարիատը ժառանգում է պետությունը հին հասարակարգից «որպես չարիք» և վերացնում է նրա «վատ կողմերը», մինչև որ, իրականացնելով իր պատմական խըն-



դիրը՝ անդասակարգ հասարակարգի կառուցումը, նոր սերունդն ի վիճակի կլինի հնությունների թանգարան ուղարկելու պետության ամբողջ հնոտին։

Լենինը մանրակրկիտ քննարկում է Ֆ. Էնգելսի դատողությունները պրոլետարիատի դիկտատուրայի տեսության, նրա հնարավոր գործնական ձևերի մասին, որոնք կարևոր նշանակություն ունեին հեղափոխական իրադրության մեջ գտնվող ռուսական սոցիալ-դեմոկրատական կուսակցության համար։ Ֆ. Էնգելսը հատկապես նշում էր, թե որ երկրում ինչպիսի քաղաքական իշխանությունն է նպատակահարմար՝ դեմոկրատական հանրապետություն, ֆեդերատիվ հանրապետություն, թե կառավարման մի այլ ձև։ 1894 թ. մարտի 6-ին Պ. Լաֆարգին գրած նամակից պարզ երևում է, որ Ֆ. Էնգելսը պրոլետարիատի դիկտատուրայի ոչ թե ինչ-որ «լավ» կամ պարտադիր ձև է որոնում բոլոր երկրների համար, այլ, տվյալ երկրի կոնկրետ պայմաններից ելնելով, ցույց տալիս այս կամ այն երկրի հեղափոխական շարժման անմիջական պահանջը, որն այդ երկրին մի քայլ առաջ կմղի իրական վիճակից։ Դեմոկրատական հանրապետության պահանջը 1894 թ. գերմանական սոցիալ-դեմոկրատների համար մի քայլ առաջ էր միապետության համեմատ։ Բայց այդպիսի պահանջը ֆրանսիական սոցիալ-դեմոկրատների համար կլիներ մի քայլ ետ, քանի որ Ֆրանսիայում այդպիսի հանրապետություն արդեն կար և պատմության օրակարգում դրված էր դրա տապալումը։ Բոլշևիկյան կուսակցությունը, ընդհուպ մինչև 1917 թ. փետրվարյան հեղափոխությունը, իր ծրագիր-մինիմումի հիմնական պահանջը համարում էր ցարիզմի տապալումը և դեմոկրատական հանրապետության հիմնումը, այդ միանգամայն հիմնավորվում էր պատմական մոտեցման այն սկզբունքով, որով առաջնորդվում էին բոլշևիկյան կուսակցության տեսաբանները՝ ղեկավարվելով Ֆ. Էնգելսի 1891 թ. դրույթներով։

Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն է դարձնում Ֆ. Էնգելսի նրբին բացատրություններին. պրոլետարական պետության էությունը կապված է այն բանի հետ, թե «հարստահարված դասակարգը զինվա՞ծ է», կարո՞ղ է ամեն բույն պաշտպանել իրեն և իր հեղափոխության նվաճումները տապալված դասակարգերի հակահեղափոխական ոտնձգություններից։ Իսկ նրա ավանգարդի անմիջական պատմական խնդիրն է՝ սովորեցնել իր դասակարգին և աշխատավոր զանգվածներին նրանց անելիքները, գիտակցություն և կազմակերպվածություն ներդնել տարերային հեղափոխական շարժման, նրա ներքևից եկող ստեղծագործական նախաձեռնության մեջ, նրա ակտիվ ստեղծագործությանը հաղորդել գիտակցական հեղափոխական նպատակասլացություն։

Լենինը լավ էր հասկանում պատմական այն պայմանները, որոնք կապված էին կապիտալիզմի զարգացման նոր փուլի հետ։ XX դարի շեմին դասակարգային ուժերի հարաբերակցությունը զգալիորեն փոխվել էր, բուրժուազիան այլևս նախկինը չէր։ Արդյունաբերական կապիտալիզմն իր տեղն աստիճանաբար զիջում էր մոնոպոլիստական միությունների տիրապետությանը՝ տնտեսական կյանքում և քաղաքականության մեջ։

Կապիտալիզմն արագ թափով զարգանում էր և Ռուսաստանում. XX դարի սկզբին արդյունաբերական բանվորների թիվն արդեն 3 միլիոնի էր հասնում։ Ռուսաստանում ևս տնտեսության որոշ ճյուղերում հացի, շաքարի, քարածխի արտադրության մեջ հանդես են գալիս մոնոպոլիստական միություններ։ Ահա պատմական այս ֆոնի վրա է, որ Ռուսաստանում բռնկվում է XX դարի առաջին բուրժուադեմոկրատական հեղափոխությունը։ Երբ հեղափոխությունը փաստ է դառնում, տակտիկական ու տեսական մի շարք հարցերի, առանձնապես պետության հարցի շուրջը ծավալվում է պայքար ՌՍԴԲԿ-ի երկու ֆրակցիաների միջև։ Որն է բանվոր դասակարգի դերը բուրժուադեմոկրատական հեղափոխության մեջ, ինչպիսին պետք է լինի պետությունը հեղափոխության հաղթանակի դեպքում, ինչ վերաբերմունք պետք է ցույց տա կուսակցությունը այդ պետությանը — ահա այս հարցերի շուրջն է, որ պայքար է ծավալվում բոլշևիկների՝ կուսակցության լենինյան թևի և մենշևիկների՝ օպորտունիստների թևի, միջև։ Մենշևիկները դոգմատիկորեն էին մոտենում հեղափոխության և նրա շարժիչ ուժերի հարցին, նրանք չէին հասկանում, որ այն նոր տիպի բուրժուադեմոկրատական հեղափոխություն է։ Մենշևիկների կարծիքով, քանի որ

հեղափոխությունը բուրժուադեմոկրատական է, նրա հեգեմոնը պետք է բուրժուազիան լինի, իսկ պրոլետարիատը լավագույն դեպքում կարող է միայն նրան օժանդակողի դերում հանդես գալ։ Հաղթության դեպքում կստեղծվի բուրժուադեմոկրատական հանրապետություն։ Բուրժուական ժամանակավոր կառավարությանը բանվորական կուսակցության մասնակցությունը մենշևիկները դավաճանություն էին համարում։

Լենինը դրան հակադրում էր իր տեսակետը, որը նա մշակել էր մինչև ՌՍԴԲԿ-ի III համագումարը գրած հոդվածներում, համագումարի նյութերում և ապա Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ երկում։ Պատմական նոր պայմաններում պրոլետարիատը բավական մեծ ուժ էր դարձել, ուներ իր կուսակցությունը և պարզորոշ քաղաքական ծրագիրը։ Դրան հակառակ բուրժուազիան բացահայտ ռեակցիոն էր դարձել և պատրաստ էր առաջին իսկ պատեհ առիթին գործարք կնքել ցարիզմի հետ, դավաճանել հեղափոխությանը։ Միայն բանվոր դասակարգն էր շահագրգռված հեղափոխության արմատական ավարտի մեջ և նա էլ պետք է բուրժուադեմոկրատական հեղափոխության հեգեմոնը լիներ՝ դաշինք կնքելով գյուղացիության հետ։ Կուսակցությունը պետք է սովորեցներ իր դասակարգին նրա անելիքները և բացահայտեր բուրժուազիայի ռեակցիոն դիտավորությունները, լուսաբաներ իր դասակարգի առաջատար դերն ու խնդիրները։ Իմպերիալիզմի դարաշրջանում «բուրժուական հեղափոխության հաղթանակը... անհնարին է իբրև բուրժուազիայի հաղթանակ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 17, էջ 51)։

Լենինը հիմնավորում է իր դրույթը. պատմական նոր դարաշրջանում բուրժուադեմոկրատական հեղափոխության հեգեմոն ուժը պրոլետարիատն է, իսկ գյուղացիական աշխատավորությունը՝ նրա բնական դաշնակիցը։ Բնականաբար հարց է ծագում. ինչպիսին կարող էր լինել դեմոկրատական հանրապետությունը, որը պետք է ստեղծվեր հաղթանակից հետո։ Մենշևիկները պնդում էին, որ այն կլինի բուրժուական պետություն։

Լենինը մերժեց այդ տեսակետը։ Ոչ մի դեպքում հեղափոխական դասակարգերը չեն կարող իրենց հաղթանակից հետո մի կողմ կանգնել և իշխանությունը տալ բուրժուազիային։ Նոր պետությունը, այսինքն՝ դեմոկրատական հանրապետությունը, կկազմվի բանվոր դասակարգի և գյուղացիության ներկայացուցիչներից։ Այդ նրանց քաղաքական նվաճումների պահպանման ու զարգացման հիմնական գրավականն է։ «... ժամանակավոր հեղափոխական կառավարությունը չի կարող այլ բան լինել, քան պրոլետարիատի ու գյուղացիության հեղափոխական դիկտատուրա» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 10, էջ 37)։

Հակառակ մենշևիկների դավաճանական դիրքորոշման, Լենինը հստակ վերլուծության միջոցով կանխատեսեց այդ ռեալ հնարավորությունը. մարտնչող դասակարգերը զինված ապստամբության պրոցեսում, գործնական անհրաժեշտությունից ելնելով, ստեղծում են այնպիսի կազմակերպություններ, որոնք հաղթության դեպքում դառնում են հենց նրանց քաղաքական իշխանության օրգանները։ Ինչ անուն էլ տանք գալիք հաղթանակի շնորհիվ ստեղծվելիք կառավարությանը, նրա դասակարգային բովանդակությունը պետք է լինի բանվորների և գյուղացիների դեմոկրատական դիկտատուրան։ Դրա համար պետք է ապահովել պրոլետարիատի հեգեմոնիան՝ առանց բուրժուազիայի և հակառակ բուրժուազիայի ցանկության։ Այդ հեգեմոնիան կապահովի հեղափոխության հետագա խորացումը՝ սոցիալիստական հեղափոխության իրականացումն առանց նոր քաղաքական հեղաշրջման, դեմոկրատական հանրապետության սահմաններում ու նրա միջոցով։

Հեղափոխության առաջին շրջանում Վ. Ի. Լենինը զարգացնում է Ֆ. Էնգելսի մտքերը դեմոկրատական հանրապետության մասին։ Ակնհայտ է, որ սկզբնապես այդ հանրապետությունը դեռևս սոցիալիստական պետություն չի լինի։ Բայց քանի որ նրա կառուցվածքի մեջ հիմնականում բանվորներն ու գյուղացիներն են, կան բոլոր հնարավորությունները, որ այդ հեղափոխական դեմոկրատական հանրապետությունը բավական եռանդուն լինի, կարողանա դեմոկրատական հեղափոխության խնդիրներից անցնել սոցիալիստականի



խնդիրներին, կամ, ինչպես գրում էր Լենինը, հեղափոխության առաջին փուլից՝ նրա երկրորդ փուլին։ Դրա համար անհրաժեշտ է, բացի հեղափոխական զինված ուժերի առկայությունից, նաև սոցիալ-դեմոկրատիայի մասնակցությունը դեմոկրատական կառավարությանը։ Լենինը նշում էր, որ դեմոկրատական հեղափոխությունը Ռուսաստանում սկզբնապես ուժեղացնելու է բուրժուազիայի տնտեսական դիրքերը, ավելի լայն պայմաններ են ստեղծվելու կապիտալիզմի զարգացման համար։ Հեղափոխությունից հետո նոր ուժով են սրվելու հակասությունները բուրժուազիայի և պրոլետարիատի միջև։

Բուրժուազիայի բոլոր հակահեղափոխական միտումները կանխելու և հեղափոխությունն ավելի խորացնելու համար անհրաժեշտ է սոցիալ-դեմոկրատիայի մասնակցությունը ժամանակավոր կառավարությանը։ Այդ կլինի ճնշում կառավարության վրա՝ վերևից։ Մյուս կողմից, կուսակցությունը կսովորեցնի իր դասակարգին և աշխատավորությանը, որ հեղափոխության հաղթանակից հետո զենքը վայր չպետք է դնել, պետք է դրանով ապահովել ճնշումը ներքևից, որը հեղափոխության խորացման գլխավոր պայմանն է։ Վ. Ի. Լենինը կուսակցության III համագումարի բանաձևի նախագծում գրում է. «Անկախ այն բանից, թե արդյոք հնարավոր կլինի սոցիալ-դեմոկրատիայի մասնակցությունը ժամանակավոր հեղափոխական կառավարությանը, պետք է պրոլետարիատի ամենալայն խավերում պրոպագանդել այն գաղափարը, որ անհրաժեշտ է զինված և սոցիալ-դեմոկրատիայի կողմից ղեկավարվող պրոլետարիատի մշտական ճնշումը ժամանակավոր կառավարության վրա՝ հեղափոխության նվաճումները պաշտպանելու, ամրապնդելու և ընդլայնելու նպատակով» (ԵԼԺ, հ. 10, էջ 173)։

Դեմոկրատական հանրապետության դասակարգային բովանդակության վերլուծությունը և նրա պատմական զարգացման երկու փուլերի մասին լենինյան գաղափարները նոր էջ են կազմում պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական ուսմունքի զարգացման մեջ։ Ու թեև ռուսական առաջին հեղափոխությունը պարտություն կրեց և այդ գաղափարներն այն ժամանակ գործնական կիրառում չունեցան, բայց մի քանի տասնամյակ հետո նրանք մեծ նշանակություն ունեցան ինչպես Կենտրոնական Եվրոպայի և Արևելյան Ասիայի ժողովրդադեմոկրատական կարգերի ծագման ու ձևավորման պրոցեսում, այնպես էլ այժմ՝ ազգային-ազատագրական շարժման մեջ։ Նոր տիպի սոցիալիստական պետության մասին լենինյան գաղափարներն այսօր էլ ունեն կարևոր նշանակություն Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ազգային անկախություն ստացած և սոցիալիստական կողմնորոշում ունեցող այն երկրների հեղափոխական ուժերի համար, որոնց գլխավորում են բանվորական ու աշխատավորական կուսակցությունները։

Սակայն ռուսական առաջին հեղափոխությունը գործնականորեն ավելի հարուստ բովանդակություն ունեցավ, քան կարելի էր ենթադրել սկզբից, գարնանը կամ նույնիսկ ամռանը։ «Ռուսաստանի 1905—1907 թվականների հեղափոխության 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվեց. «1905—1907 թվականների հեղափոխությունը մասսաներին հարստացրեց քաղաքական մեծ փորձով, նրանց ոգեկոչեց պատմական գիտակցական ստեղծագործության»։ Դրանում առաջին տեղերից մեկը պատկանում է սովետների ստեղծմանը։ Առաջին սովետներն իրենց ծագման օրից դարձան մասսայական «հեղափոխական իշխանության մարտական օրգաններ»։

Վտարանդիությունից Ռուսաստան վերադառնալու ճանապարհին Լենինը, նոյեմբերի կեսերին Ստոկհոլմից մի նամակ է գրում բոլշևիկյան «Новая ЖИЗНЬ» առաջին լեգալ թերթի (լույս տեսավ նոյեմբերի 9-ից մինչև դեկտեմբերի 16-ը) խմբագրությանը՝ «Մեր խնդիրները և բանվորների դեպուտատների սովետը» վերնագրով, որտեղ արտահայտում է այն միտքը, որ նորածին սովետներն ապագա հեղափոխական իշխանության սաղմն են։

Նամակում Լենինը նշում էր, որ ստեղծվել է մի տեսակ հավասարակշռություն հեղափոխության և հակահեղափոխության ուժերի միջև։ Բայց գերակշռությունը թեքվում է հեղափոխական ուժերի կողմը։ Այդ պրոցեսին կազմակերպված ձև տալու համար հարկավոր է սովետները համախմբել մի ընդ-

հանուր քաղաքական կենտրոնի շուրջը։ «Պակասում է կենդանի, թարմ, ժողովրդի մեջ իր խոր արմատներով ուժեղ, անվերապահորեն մասսաների վստահությունը վայելող, հեղափոխական կրակոտ եռանդով օժտված, հեղափոխական ու սոցիալիստական կազմակերպված կուսակցությունների հետ սերտորեն կապված համառուսաստանյան քաղաքական կենտրոնը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 12, էջ 75)։

Այդպիսի կենտրոնի դեր կարող է կատարել, գրում էր Լենինը, Պետերբուրգի սովետը, որը պետք է դիտել իբրև ժամանակավոր հեղափոխական կառավարության սաղմ։ Պետք է Պետերբուրգի սովետն իրեն հռչակի որպես «ժամանակավոր հեղափոխական կառավարություն»՝ իր մեջ ընդգրկելով բացի բանվորներից, նաև նավաստիների, զինվորների, գյուղացիների պատգամավորների, ինչպես նաև հեղափոխական բուրժուական մտավորականության ներկայացուցիչներին։ Դառնալով հուժկու հեղափոխական կենտրոն, սովետը պետք է հրապարակի իր մանիֆեստը և ժողովրդական հեղափոխությունը հասցնի իր վճռական վախճանին։

Դժբախտաբար, մայրաքաղաքի սովետն իր պատմական խնդիրը չկարողացավ հասկանալ, մենշևիկյան ղեկավարության դավաճանության պատճառով նույնիսկ զինված ապստամբության օրգան չդարձավ։ Իսկ Մոսկվայի սովետի կազմակերպած զինված ապստամբությունը պարտություն կրեց։

Դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո Վ. Ի. Լենինը մինչև 1907 թ. մի քանի անգամ վերստին անդրադառնում է սովետների հարցին, մանրամասն վերլուծություններ է կատարում՝ քննելով ինչպես նրանց կազմը, այնպես էլ քաղաքական-կազմակերպչական խնդիրները. պայքարն ինքնակալության դեմ բացահայտ զինված ապստամբության է վերածվել, նշում է Լենինը, բնակչության բոլոր հեղափոխական տարրերը միավորվում են իրենց այդ միասնական ձգտման մեջ։ Այդպիսի միասնական պայքարի կազմակերպությունների շարքում Լենինը հիշատակում է Պետերբուրգի, Մոսկվայի բանվորների դեպուտատների սովետները, զինվորների դեպուտատների սովետները Վլադիվոստոկում, Կրասնոյարսկում, երկաթուղային կոմիտեները Սիբիրում և հարավում, գյուղացիական կոմիտեները Սարատովի նահանգում, քաղաքային հեղափոխական կոմիտեները Նովոռոսիյսկում և այլ քաղաքներում, ընտրովի գյուղացիական օրգանները Կովկասում ու Մերձբալթյան երկրներում։

Վ. Ի. Լենինը սոցիալ-դեմոկրատներին առաջարկում էր մտնել այդ կազմակերպությունների մեջ, ուղղություն տալ նրանց աշխատանքներին՝ կուսակցության խնդիրներին համաձայն։ Այդ նշանակում է հեղափոխական մասսաների օբյեկտիվ ստեղծագործությանը միացնել նրա նպատակի գիտակցությունը, տալ հեղափոխական շարժմանը հեռանկարի պարզություն և վստահություն ներշնչել հաղթանակի նկատմամբ։ Հաղթության դեպքում սովետներն ու այդ տիպի պայքարի կազմակերպությունները կարող են դառնալ տեղական իշխանության օրգաններ։

Վ. Ի. Լենինը շեշտում է, որ առաջին սովետները բանվոր դասակարգի ամենադեմոկրատական, ամենալայն քաղաքական կազմակերպություններն են։ Անկախ դավանանքից և գաղափարական համոզմունքից՝ այն բոլոր մարդիկ, ովքեր մասնակցում են հեղափոխական շարժմանն ընդդեմ հին կարգերի, եթե անգամ նրանք սոցիալ-դեմոկրատներ չեն և նույնիսկ սոցիալիստ-հեղափոխականներ են, նրանց բոլորին պետք է ներգրավել սովետների մեջ։ Սովետների մեջ համախմբվում են զինվորների, նավաստիների, գյուղացիության, հեղափոխական մտավորականության ներկայացուցիչները՝ ընդդեմ ընդհանուր հակառակորդի։ «Մենք չենք վախենում կազմի այդպիսի լայնությունից ու խայտաբղետությունից, այլ ցանկանում ենք այն, քանի որ առանց պրոլետարիատի ու գյուղացիության միավորման, առանց սոցիալ-դեմոկրատների ու հեղափոխական դեմոկրատների մարտական մերձեցման ռուսական մեծ հեղափոխության լիակատար հաջողությունը հնարավոր չէ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 12, էջ 77)։



Դա չի խանգարում կուսակցությանը, որպեսզի նա միշտ կարողանա պաշտպանել իր դասակարգի շահերը բուրժուազիայի ոտնձգություններից։ Դրա համար անհրաժեշտ է, գրել է Լենինը, որ ժամանակավոր հեղափոխական կառավարության մեջ ուժեղ լինի զուտ պրոլետարական միջուկը, որ բանվորների, նավաստիների, զինվորների, գյուղացիների դեպուտատների կազմում ընտրվեն մտավորական հեղափոխական միությունների տասնյակ դեպուտատներ։

Լենինը ռուսական սոցիալ-դեմոկրատիայի նվաճումն է համարում, որ նա կարողացավ փշրել երիտասարդ պրոլետարիատի մեջ եղած ազգային ու բուրժուական կեղծ-հայրենասիրական պատրանքները և ստեղծել միասնական հեղափոխական պայքարի ճակատ՝ ընդդեմ ցարիզմի։ Իր Կոմունայի դասերը հոդվածում նա նկատում է, որ «համազգային» և «հայրենասիրական» պրոբլեմները շեղում էին կոմունարների ուշադրությունը հիմնական խնդրից։ Փարիզի ապստամբ բանվորները, երբ քաղաքը շրջապատված էր պրուսական զորքերով, երկու խնդիր էին ստանձնել, մեկը՝ Ֆրանսիայի ազատագրումն էր գերմանական նվաճողներից, մյուսը՝ բանվոր դասակարգի ազատագրումը կապիտալիզմից։ Հենց այդ երկու խնդիրների անհամատեղելիությունը թույլ չէր տալիս կոմունարներին ճիշտ կողմնորոշվել։ «Ֆրանսիական սոցիալիստների ճակատագրական սխալն էր հակասական խնդիրների՝ հայրենասիրության և սոցիալիզմի միացումը։ Արդեն Ինտերնացիոնալի Մանիֆեստում, 1870 թ. սեպտեմբերին, Մարքսը ֆրանսիական պրոլետարիատին նախազգուշացնում էր կեղծ ազգային գաղափարով հրապուրվելուց» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 16, էջ 560)։

Ցարիզմը այլ ռեակցիոն միջոցառումների հետ աշխատում էր հրահրել և ազգային թշնամանք, կազմակերպում էր հրեական, հայ-թուրքական ազգային սևհարյուրակային ջարդեր։ Սակայն սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը կարողացավ ոչ միայն պայքարել ցարիզմի մեծապետական, շովինիստական ու նացիոնալիստական քաղաքականության դեմ, այլև դրան հակադրել աշխատավորների միասնության, ինտերնացիոնալ շահերի պաշտպանության առաջնակարգ կարևորությունը՝ ազգերի համերաշխության և սոցիալական համագործակցության համար։

Առաջին սովետների հաջորդ բնորոշ առանձնահատկությունն այն էր, որ իբրև կանոն, նրանք ծագում էին ամենից առաջ բանվորական շրջաններում, արդյունաբերական կենտրոններում, նրանց հիմնական կորիզը բանվորներն էին կազմում։ Այս հանգամանքը սովետներին ավելի խոր բովանդակություն և հեռանկար էր տալիս, քան դեմոկրատական հեղափոխությունն էր։ Այդ ամենից առաջ հիմք էր տալիս Լենինին կանխատեսելու, որ հեղափոխության հաջողության դեպքում սովետներն ի վիճակի կլինեն, որպես նոր տիպի քաղաքական կազմակերպության օրգաններ, գլխավորել անցումը հեղափոխության առաջին փուլից նրա երկրորդ փուլին, ձեռնամուխ լինել սոցիալիստական հեղափոխության խնդիրների իրականացմանը։

Բայց, ինչպես Լենինն է նշում, առաջին սովետներն ունեցան նաև թերություններ, նրանք զարգացման «արգանդային շրջանից այն կողմ չգնացին», դեռևս ցրված էին, անկազմակերպ, անջատ-անջատ էին հանդես գալիս։ Այդ պատճառով էլ ցարիզմը նրանց հետ հեշտությամբ հաշվեհարդար էր տեսնում։ Նման թերության պատճառներից մեկն էլ միասնական կուսակցության բացակայությունն էր։ Մենշևիկները ոչ միայն խանգարում էին սովետների քաղաքական հասունացմանը, այլև գտնում էին, որ հեղափոխության մեջ բանվորները բուրժուազիայի կամքին հակառակ ոչ մի քաղաքական կազմակերպություն ստեղծել չեն կարող։ Շատ տեղերում, այդ թվում և Պետերբուրգի սովետում, նրանք էին պատճառը, որ այն զինված ապստամբության օրգան չդարձավ։

Հանրագումարի բերելով ռուսական առաջին հեղափոխության դասերը, Լենինը սովետները համարեց հեղափոխական շարժման բարձրագույն նվաճու-

մը, այն նոր քաղաքական ձևը, որը կարող է իր մեջ ընդգրկել բոլոր հեղափոխական առաջադիմական սոցիալական ուժերին և տապալել ոչ միայն ցարիզմը, այլև բուրժուական շահագործողական կարգերը, կազմակերպել անցումը կապիտալիզմից սոցիալիզմին։

Սովետների հայտնագործմամբ, նրանց պատմական դերի ու նշանակության պարզաբանմամբ Լենինը զարգացրեց և մի նոր աստիճանի բարձրացրեց պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական տեսությունը։ Նա ցույց տվեց, որ հեղափոխության թեժ մարտերի մեջ աշխատավորներն իրենք են իրենց նախաձեռնությամբ ստեղծում այդ կազմակերպությունները, այդ նրանք են հեղափոխության վճռական շարժիչ ուժը։ Հեղափոխությունը ճնշվածների և հարստահարվածների տոնն է, գրում է առաջնորդը, ժողովուրդը երբեք այնքան ընդունակ չէ հանդես գալու նոր հասարակական կարգեր ստեղծելու դերում, որքան հեղափոխության բովում։

Ինչպես նշվեց «Ռուսաստանի 1905—1907 թվականների հեղափոխության 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «հեղափոխության տարիներին բացահայտվեց Վ. Ի. Լենինի ստեղծագործական հանճարը որպես մեծ տեսաբանի և պրոլետարիատի առաջնորդի»։

Այդ մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Ամբողջ կյանքը, պատմության ողջ ընթացքը համոզիչ կերպով հաստատում են լենինյան ուսմունքի մեծ արդարությունը։ Այդ ուսմունքը մեզ համար եղել է ու մնում է որպես գործողության ուղեցույց, ոգեշնչման աղբյուր, ստույգ կողմնացույց առաջընթացի ստրատեգիան ու տակտիկան սահմանելիս»։

Մարքսիզմ-լենինիզմը, մասնավորապես պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունն այսօր առաջնակարգ կարևորություն ունի ազգային-ազատագրական շարժման ղեկավար ուժերի ու աշխատավորական կուսակցությունների համար, որոնք իրենց հակաիմպերիալիստական պայքարում և սոցիալիստական կողմնորոշումն իրականացնելիս օգտագործում են Սովետական Միության ու եղբայրական սոցիալիստական երկրների փորձը, մարքս-լենինյան ստեղծագործական ուսմունքը։

---



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ ԵՎ ԿՐՈՆԸ

**Ս. ՍԱՐԳՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊՆ ընդհանուր առմամբ բնութագրվում է իշխող արտադրաեղանակով։ Առանձին դասակարգերի, սոցիալական խմբերի և անհատների գոյաձևը որոշվում է նրանց դասակարգային պատկանելությամբ։

Ապրելակերպը սերտորեն առնչվում է գաղափարախոսության հետ, որտեղ իր ուրույն տեղն ունի կրոնը։ Վերջինս իրականացնում է նաև մարդկանց տիրող կարգերի, ապրելակերպի հետ հաշտեցման ֆունկցիա։ Հաշտեցման ֆունկցիան կրոնն իրականացնում է հատկապես պետականացվելուց հետո, երբ դարձավ իշխող դասակարգի գաղափարախոսական զենք։ Պաշտպանելով պետական իշխանությունը՝ եկեղեցին փորձում է անփոփոխ պահել այն իրականությունը, որի հոգևոր վերարտադրությունն է ինքը։

Հիրավի շահագործողական հարաբերությունները կարող են կրոնական ուղղությունների առաջացման, պահպանման և կրոնական կյանքի աշխուժացման պատճառ հանդիսանալ։ Կապիտալիստական որոշ զարգացած երկրներում XX դարի երկրորդ կեսում կրոնի շրջանակներում դիտվող ճգնաժամային երևույթներն այդ ընդհանուր օրինաչափությունը չեն խախտում։ Կապիտալիզմը պաշտպանում է մասնավոր սեփականությունը, մարդու կողմից մարդու շահագործումը։ Կապիտալիստական երկրներում պարբերաբար կրկնվող տնտեսական ճգնաժամերը, սոցիալական ցնցումները, գործազրկությունը, ապագայի նկատմամբ թերահավատությունը, հիասթափությունն ապրելակերպից և սեփական պետությունների սոցիալական քաղաքականությունից կրկին հանգեցնում են կրոնին, դառնում ինչպես կրոնի պահպանման, այնպես էլ կրոնական կյանքի աշխուժացման ու վերարտադրության պատճառ։ Այս բոլորի վառ ապացույցն են XX դարի 70-ական թվականներին ԱՄՆ-ում և մյուս կապիտալիստական երկրներում դիտվող կրոնական պայթյունը, լայն թափ ստացած երիտասարդական կրոնական շարժումները, որոնք աչքի են ընկնում շեշտված մոլեռանդությամբ, ճգնակեցությամբ, հանգամանքներ, որոնք երիտասարդությանը դատապարտում են պասսիվ կյանքի, հեռու պահում դասակարգային պայքարից, սոցիալական արդարության իրական լուծումից։

Բոլորովին այլ է փոխհարաբերությունը սոցիալիստական ապրելակերպի և կրոնի միջև։ Սոցիալիստական ապրելակերպն ամենից առաջ բնութագրվում է համապատասխան տնտեսակարգով։ Փոխելով սեփականության ձևը, հասարակության սոցիալական կառուցվածքը, ստեղծելով բոլորովին նոր գաղափարախոսություն՝ սոցիալիզմը ձևավորում է ապրելակերպի ու մարդկային փոխհարաբերությունների նոր տիպ։

Սոցիալիստական ապրելակերպում կատարված սոցիալ-տնտեսական և կուլտուրական վերափոխությունների շնորհիվ կրոն ծնող սոցիալական արմատները դադարեցին գործելուց, վերացավ կրոնի վերարտադրության սոցիալական բազան։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում քաղաքական, տնտեսական, տեխնիկական, ընդհանուր կրթական, բարձրագույն և պրոֆտեխնիկա-

կան կրթության, պրոպագանդայի ու ինֆորմացիայի մասսայական միջոցների լայն համակարգի պայմաններում կրոն ծնող իմացաբանական արմատները դադարում են որոշիչ դեր կատարելուց։ Այս բոլորի հետևանքով ՍՍՀՄ-ում կրոնական գիտակցությունն ու եկեղեցին ընկան խոր ճգնաժամի մեջ, դարձան սոցիալական վերապրուկ։ Սովետական ժողովրդի գիտակցության համար բնորոշը աթեիզմն է։

ՍՍՀՄ-ում բնակչության կրոնատածության բացահայտման ուղղությամբ սոցիոլոգիական հետազոտություններ կատարվել են Պենզայի, Վորոնեժի, Կալուգայի և մի քանի այլ մարզերում։ Այդ ուսումնասիրություններից պարզվել է, որ բնակչության մեծ մասը համոզված անհավատացյալ է։ Հայաստանում նման բնույթի հետազոտություններ կատարվել են տեխնիկական մտավորականության շրջանում, որի ճնշող մեծամասնությունը նույնպես հավատացյալ չէ։

Ինչպես վկայում են փաստերը, իր ազդեցությունն է կորցնում նաև կրոնական գաղափարախոսությունը, նվազում է եկեղեցի հաճախողների թիվը, սովետական ժողովրդի բացարձակ մեծամասնության կենսակողմնորոշումը կրոնական չէ, ավելին, աշխարհայացքը մատերիալիստական է, աթեիստական։ Կրոնն ու եկեղեցին սովետական մարդկանց բացարձակ մեծամասնության համար դադարել են սոցիալական պահանջմունք լինելուց։ Այսօր մարդկանց հուզող շատ հարցերի պատասխանը կարելի է գտնել արդի գիտության ու արվեստի գործերում։

Այնուհանդերձ, դա չի նշանակում, թե կրոնի մահացումը օրակարգի հարց է դարձել։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում, «Կրոնի ազդեցության տակ դեռևս մնում է մարդկանց մի մասը և, ուղղակի ասենք, ոչ այնքան էլ փոքր մասը»։

Կրոնական գիտակցության խոր ճգնաժամի պայմաններում էլ բացառված չեն կրոնի պահպանումն ու մասնակի աշխուժացումը, որը կարող է դրսևորվել կրոնական ծեսերին մասնակցողների աճով, հավատացյալների միջին տոկոսի պահպանմամբ, նրանց տարիքային կազմի երիտասարդացմամբ, աղանդների տարածմամբ, ոչ հավատացյալների շրջանում կրոնի և կրոնականի նկատմամբ հետաքրքրության մեծացմամբ, կրոնական ու ազգային ավանդույթների շփոթման հետևանքով՝ կրոնական ավանդույթների պահպանմամբ և այլն։ Այս բոլորն էլ անհրաժեշտորեն առաջադրում են գաղափարախոսական, դաստիարակչական աշխատանքների նոր ձևերի ու մեթոդների մշակում, որը հատկապես կարևոր է աշխարհայացքային տեսակետից ոչ կայուն համոզմունքներ ունեցող մարդկանց շրջանում աշխատելու համար։ Եվ միանգամայն օրինաչափ է ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջը՝ գաղափարախոսական, դաստիարակչական, պրոպագանդիստական աշխատանքը վճռականորեն բարձրացնել այն մեծ ու բարդ խնդիրների մակարդակին, որոնք կուսակցությունը լուծում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում։ Անհրաժեշտ է էլ ավելի ակտիվորեն պրոպագանդել գիտամատերիալիստական հայացքները բնակչության շրջանում, ավելի մեծ ուշադրություն նվիրել աթեիստական դաստիարակությանը, հավատացյալներին ավելի լայնորեն ներգրավել հասարակական կյանքի մեջ, ավելի հաստատակամորեն արմատավորել սովետական ծեսերը։

ՀԿԿ Կենտկոմի 1985 թ. հունվարյան պլենումը, քննարկելով ««Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման ուղղությամբ հանրապետական կուսկազմակերպության խնդիրների մասին» հարցը, դարձյալ անդրադարձավ աթեիստական դաստիարակության բնագավառում հանրապետությունում նկատված թերություններին ու բացթողումներին, նշեց այդ բնագավառում հրատապ տեսական և գործնական պրոբլեմների լուծման անհրաժեշտությունը։

Փորձելով կրոնը դուրս բերել խոր ճգնաժամից, եկեղեցականները դիմում



են տարբեր միջոցների, փորձում համաձայնության եզրեր գտնել գիտության ու կրոնի միջև, հաղորդակից դառնալ արդի աշխարհի մշակութային նվաճումներին, եկեղեցու ճակատագիրը չկապել որոշ դասակարգերի շահերի հետ, պաշտպանել պետությունների խաղաղ գոյակցությունը, համագործակցությունը, ազգերի ինքնորոշման իրավունքը։ Եթե նախկինում եկեղեցին հավերժացրել է դասակարգային ճնշումն ու շահագործումը, հետապնդել առաջադեմ մտածողներին, ապա այսօր լոյալ դիրք է գրավում սոցիալիզմի նկատմամբ, քարոզում հումանիստական արժեքներ։ Իրոք, ՍՍՀՄ-ում գործող կրոնական կազմակերպությունների քաղաքական կողմնորոշումը չի հակադրվում պետական քաղաքականությանը, ինչ մնում է կրոնական գաղափարախոսությանը, դավանաբանությանը, դրանք շարունակում են մնալ հետադիմական, հակագիտական և հակապատմական։

Կրոնական գաղափարախոսությունը հասարակական կյանքի վերաբերյալ եղել և շարունակում է մնալ նախախնամական և ճակատագրապաշտական։ Կրոնը սոցիալական ուժերի գործունեությունը հանգեցնում է հասարակությունից դուրս կանգնած և նրան հակադրված գերբնական ուժերի գործունեությանը, կամքին ու քմահաճույքին։ Աստվածաբանների կարծիքով, անհատական, հասարակական, տնտեսական ու քաղաքական տագնապների լուծման միակ միջոցը կրոնն է, որովհետև դրանց առաջացումը կապված է կրոնաբարոյական սկզբունքների անտեսման հետ։ Կրոնը շարունակում է պայքարել գիտության դեմ, միայն թե այդ պայքարը շատ ավելի քողարկված տեսք է ընդունել։

Սոցիալական կյանքի նման ըմբռնումներով եկեղեցին, կրոնն ընդհանրապես խոչընդոտել և խոչընդոտում են իրականության գիտական իմաստավորմանը։ Եվ, վերջապես, կրոնի հիմնական հատկանիշը այսօր էլ նույնն է, ինչ հազարամյակներ առաջ՝ կույր հավատը գերբնական ուժերի գոյության նկատմամբ։

Կրոնական պատկերացումների հաղթահարման գործում զգալի դեր կարող է կատարել սոցիալիստական ապրելակերպի կատարելագործումը։ ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց. «... մենք դեռ մեծ աշխատանք ունենք կատարելու սոցիալիստական ապրելակերպը բարելավելու, այն ամենն արմատախիլ անելու համար, ինչը խանգարում է նոր մարդու ձևավորմանը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 104)։

Տարեցտարի աճում է սովետական ժողովրդի բարեկեցությունը, բազմապատկվում հասարակության հարստությունը։ Այս բոլորն անհրաժեշտ պայման են սովետական մարդու նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման համար։ Դրա հետ մեկտեղ բարձրանում է մարդկանց ճաշակը և դրան համապատասխան էլ՝ պահանջարկը ապրանքների որակի նկատմամբ։ Որոշ դեպքերում արտադրությունը չի կարողանում բավարարել այդ պահանջարկը, դրա հետևանքով էլ առաջանում է այսպես կոչված դեֆիցիտը, որը ծնում է բացասական սոցիալական և բարոյական երևույթներ առևտրի և սպասման ոլորտում։

Քիչ չեն նաև մարդու նկատմամբ անհոգի վերաբերմունքի դեպքերը, բյուրոկրատիզմն ու վարչարարությունը, մարդուն լսելու, նրա հոգսը թեթևացնելու փոխարեն զանազան տեղեկանքներ պահանջելը, պաշտոնամոլությունը և այլն։ Այս և նման երևույթներն իրենց բացասական ազդեցությունն են թողնում մարդկանց սոցիալ-հոգեբանական ու բարոյական պատկերացումների վրա և անուղղակիորեն կրոնի պահպանման օբյեկտիվ ու սուբյեկտիվ պատճառ դառնում։ Ճիշտ է, թվարկված բացասական երևույթները ինքնին կրոն չեն ծնում, բայց աշխարհայացքային անկայուն համոզմունք ունեցող մարդկանց համար կրոնին դիմելու լրացուցիչ խթան են հանդիսանում։

Սովետական մարդկանց ապրելակերպում իրենց ուրույն տեղն ունեն ավանդույթները, ծեսերը, տոները։ Ավանդույթները, ծեսերը սոցիալական հարաբերությունների, որոշակի նորմերի, արժույթների, պատկերացումների, ապրելակերպի որոշ տարրերի տիպականացված ձևերի փոխանցումն է հաջորդ սերունդներին և նրա վերարտադրությունը որոշակի գործողությունների միջոցով, որոնք նաև սիմվոլիկ իմաստ ունեն (ծես)։ Ավանդույթների ու ծես-

րի միջոցով փոխանցվում է որոշակի կուլտուրական ժառանգություն, որը մշակվել ու կայունացել է նախորդ սերունդների կոլեկտիվ փորձի հիման վրա։ Հետևաբար ավանդույթները, ծեսերը, տոները, անցյալի կենսափորձը ներկայի մեջ վերարտադրելը սերունդներն իրար կապող օղակներից են։ Դրանց պահպանմամբ ու կատարմամբ իրականացվում են ինչպես նորմատիվ, այնպես էլ դաստիարակչական ու գեղագիտական ֆունկցիաներ։ Ավանդույթների ու ծեսերի մի մասը, կորցնելով իրենց նախնական իմաստն ու դրական նշանակությունը, դառնում են հասարակության, ընտանեկան-կենցաղային հարաբերությունների զարգացմանը խոչընդոտող երևույթներ, որոնց հաղթահարումը դյուրին գործ չէ։

Ժամանակակից առումով կարելի է առանձնացնել ավանդույթների, ծեսերի ու տոների երկու խումբ՝ սովետական կարգերի հաստատումից հետո առաջացած ծեսեր, տոներ, որոնք հեղափոխական, սոցիալական վերափոխումների փորձի խտացումն են։ Դրանց մի մասը, համեմատաբար նոր լինելով հանդերձ, արդեն դարձել է ավանդույթ, ամրագրվել հասարակական կարծիքում և կայուն տեղ գրավել մասսայական հոգեբանության մեջ, իսկ մի մասն էլ կայունացման ու կատարելագործման պրոցեսում է ու դեռևս ժամանակ է պետք ժողովրդական հոգեբանության մեջ ամրակայվելու և պահանջմունք դառնալու համար։

Ծեսերի և տոների մյուս խումբը գալիս է ազգային պատմության խորքերից և կրում է դարերի կնիքը։ Ծեսերը և տոները ցեղային, իսկ հետագայում՝ ազգային, ընտանեկան, կենցաղային բնույթ են ունեցել, դրանով հանդերձ կրոնական յուրացման են ենթարկվել, որովհետև ծեսերի, տոների և ավանդույթների միջոցով կրոնն ու եկեղեցին ձգտել են կապվել ժողովրդին, թափանցել նրա կենցաղը, ամրանալ ու վերարտադրվել։ Կրոնականացման հետևանքով ժողովրդական կենցաղում այդ ծեսերն ու տոները տարբեր կերպ են մեկնաբանվել։ Շատ հաճախ կրոնական ծեսը ազգային նկարագիր է ստացել և դարեր շարունակ վերարտադրվել ժողովրդի կենցաղում, շատ դեպքերում ազգային նկատառումներից ելնելով (մկրտություն և կնունք), իսկ որոշ դեպքերում էլ մոռացվել է ծեսի կրոնական իմաստը և այն կատարվել է որպես պապերից եկած սովորույթ, որի մեջ բացասական ոչինչ չի նկատվել, ընդհակառակը, հարազատներին ի մի բերելու և միմյանց նկատմամբ հավատարմություն ցուցաբերելու միջոց է դիտվել։

Սոցիալական առաջընթացի, գիտական և կուլտուրական հեղափոխությունների, մեր կյանքի ողջ դրվածքի քաղաքայնացման, ինֆորմացիայի մասսայական միջոցների տարածման շնորհիվ ազգային որոշ ավանդույթներ դուրս են մղվում կենցաղից, մարդկային հարաբերությունների ոլորտից աստիճանաբար չքանում են արժույթներ, որոնք զուտ ազգային նկարագիր ունեն, և դրա փոխարեն ձևավորվում են նորմեր, արժույթներ, որոնք իրենց էությամբ ինտերնացիոնալ են։ Այդ պայմաններում ժողովրդական մտածողության և հոգեբանության մեջ այն թյուր պատկերացումն է առաջանում, թե մոռացվում են ազգային ավանդույթները, մարդկանց նկարագրի մեջ տեղ գտած վարք ու բարքի ավանդական ձևերը, վերանում է սերունդներն ու տարբեր մշակութային ավանդություններն իրար միացնող կապը, մարդիկ կտրվում են ազգային արմատներից։ Նման դեպքերում նորից հետաքրքրություն է առաջանում այն ծեսերի և տոների նկատմամբ, որոնք ժամանակին նշել են իրենց նախնիները։ Հետևաբար, նախկին ծեսերի պահպանումը փաստորեն դիտվում է նաև որպես մարդկանց կողմից ազգային դեմքն ու նկարագիրը պահպանելու ձգտում։ Այդ ծեսերի և տոների մի մասը կատարվում է եկեղեցում, եկեղեցու կողմից դրանք պրոպագանդվում են որպես ազգային նկարագրի պահպանման միջոցներ, իսկ մարդկանց մի մասն էլ, շփոթելով կրոնական ծեսը ազգային ավանդույթների հետ, ակտիվորեն մասնակցում է նրանց կատարմանը, որի հետևանքով էլ վերջին տարիներին դիտվում է կրոնական ծեսերին մասնակցողների մասնակի աճ. այդ մասին նշվեց նաև ՀԿԿ Կենտկոմի 1985 թ. հունվարյան պլենումում։

Հայկական միջավայրում տեղ գտած կրոնական ծեսերից է մկրտությունը։ Ջրով մաքրվելու ծեսը ծագել է նախնադարում, կապված է ջրի կենարար



զորության, նրա կենդանացնող, մաքրող հատկության հետ։ Քրիստոնեությունը, յուրացնելով այդ ծեսը, կապեց այն սկզբնական մեղքից մաքրվելու, Քրիստոսի մահվան և հարության առասպելի հետ։ Ծեսը զուտ կրոնական է, պրոցեսն ուղեկցվում է զանազան արարողություններով և աղոթքներով։ Այս բոլորի իմաստը մարդկանց և հատկապես մայրերի զգալի մասը չգիտե, հակառակ դեպքում դժվար թե ծեսը ընդհանրապես գործեր։ Դրա փոխարեն մկրտությանը տրվել է ազգային իմաստ (մկրտվելով՝ երեխան իբրև թե մաքրվում է և ազգային դիմագիծ ձեռք բերում), որի հետևանքով էլ ծեսի կրոնական կողմի վրա գրեթե ուշադրություն չի դարձվում, այլ շատ հաճախ դառնում է իր ազգին, պապերի սովորույթին հավատարիմ մնալու հավաստում ու նաև առիթ, որպեսզի հարազատները հավաքվեն և միասին վայելեն ընտանիքի բարեկեցիկ կյանքի պտուղները, որովհետև այսօր հազվադեպ են այն կնունքները, որոնք կատարվում են առանց ճոխ սեղանների։ Հիրավի, մկրտության կրոնական ծեսի իմաստը հակասում է կոմունիստական բարոյականության նորմերին և սկզբունքներին։

Պետք է արմատավորել այն ժողովրդական ապակրոն սովորույթները, որոնք կապված են նոր մարդու լույս աշխարհ գալու հետ։ Երիտասարդ ամուսինների համար իրենց կյանքի ամենաերջանիկ պահը նորածնի, հատկապես առաջնեկի ծնունդն է, իրենց կողքին նրա գոյությունը, որը ուժ է տալիս հաղթահարելու շատ դժվարություններ ու դառնություններ։ Ահա թե ինչու երիտասարդ ծնողների կյանքում այս նշանավոր իրադարձությունը պետք է նշել հարազատներով ու բարեկամներով, անվանակոչության, դերդաստանը շարունակողի և նման այլ կարգի (որ ավելի լավ կարմատավորվի) տոներ, ծեսեր կատարել, որոնք կստիպեն բոլորովին մոռանալ մկրտության կրոնական ծեսը։ Կյանքը ցույց է տալիս, որ կրոնական ծեսի կամ տոնի ազդեցությունը նվազում և վերանում է, երբ դադարում է միակը, բացառիկը լինելուց։

Վերջին տարիներս հանրապետությունում տարածվել է գրեթե մոռացության տրված պսակադրության եկեղեցական ծեսը։ Ամուսնությունը մարդկանց կյանքի այն բացառիկ պահերից է, որ ինչպես ամուսնացող կողմերը, այնպես էլ նրանց հարազատները ցանկանում են ինչքան հնարավոր է շուքով նշել, որպեսզի նրա թողած տպավորությունը իբրև գեղեցիկ հուշ երկար ժամանակ իր ազդեցությունը պահպանի ամուսինների կյանքում։ Ահա թե ինչու հարսանիքի և պսակադրության պրոցեսի մեջ հետզհետե նորանոր ատրիբուտներ են մտնում, այդ թվում պսակի կրոնական ծեսը։ Անձնական դիտումները ցույց են տալիս, որ պսակադրության մասնակիցների բացարձակ մեծամասնությունը այդ ծեսը կատարում է որպես հարսանյաց արարողության տարրերից մեկը և գրեթե ոչ մի նշանակություն չի տալիս կրոնական կողմին, նույնիսկ չգիտե պսակադրության կրոնական ծեսի իմաստը և ոչ էլ ընկալում է պսակող քահանայի արտաբերած խոսքերի էությունը։ Հակառակ դեպքում այդ առողջ, կենսախինդ, աշխարհիկ վայելքի հետ կապված երևույթը եկեղեցական մռայլ բարոյականությամբ լրացնելու ցանկությունը կարող էր անմիջապես մարել։

Այս և նման երևույթները ցույց են տալիս, որ մեր կենցաղում դեռևս շատ թերություններ կան, որոնք պետք է հաղթահարենք։ Լուրջ վերափոխման են ենթակա մարդկանց մի մասի պատկերացումներն ընտանեկան սովորույթների, ազգային ու կրոնական ավանդույթների փոխհարաբերության մասին։ Նման կարգի պատկերացումների, սովորույթների և կենցաղում տեղ գտած թերությունների բացասման համար մեծ է սոցիալիստական ապրելակերպի դերը, որի զարգացումն ու կատարելագործումը հիմք են հանդիսանում կյանքում ու կենցաղում տեղ գտած բացասական երևույթներից հրաժարվելու համար։

Սոցիալիստական ապրելակերպը անհարիր է կրոնին։ Նրա արմատավորմամբ կրոնը զրկվեց իր վերարտադրության սոցիալական և իմացաբանական հիմքից, սովետական ժողովրդի բացարձակ մեծամասնության համար այն դադարեց սոցիալական պահանջմունք լինելուց։ Սոցիալիստական ապրելակերպի զարգացումը, նրա առանձին բաղադրիչների հետագա կատարելագործումը բարենպաստ պայմաններ են ստեղծում բնակչության կրոնական նախապաշարումների հաղթահարման համար։

# ՆԵՈԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐԴԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՆՖԼԻԿՏՆԵՐԸ

**Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

*ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ սպառնալիքի վերացումը, համընդհանուր խաղաղության ապահովումը արդի հասարակական զարգացման ամենահրատապ խնդիրն է։ Դրա սրությունը 80-ական թվականներին պայմանավորված է այն վտանգավոր միլիտարիստական կուրսով, որ միջազգային ասպարեզում իրականացնում են իմպերիալիզմի, ամենից առաջ ամերիկյան իմպերիալիզմի հետադեմ շրջանները, փորձելով համաշխարհային երկու հակադիր հասարակական սիստեմների միջև պատմական վեճը լուծել միջուկային սպառազինության մրցավազքի, միջազգային լարվածության մեծացման միջոցով։ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց. «ԱՄՆ-ը բացեիբաց հավակնում է ամենուրեք միջամտելու «իրավունքին», անտեսում, իսկ երբեմն էլ ուղղակի ոտնահարում է ուրիշ երկրների ու ժողովուրդների շահերը... Նա մշտապես ստեղծում է ընդհարումների ու պատերազմական վտանգի օջախներ, իրադրությունը շիկացնելով աշխարհի մերթ այս, մերթ այն շրջանում»։*

*Իմպերիալիստական գաղափարախոսներն իրենց հերթին ճգնում են սպառազինությունների մրցավազքի ուժգնացման և միջազգային լարվածության մեծացման պատասխանատվությունը բարդել ՍՍՀՄ-ի, սոցիալիստական երկրների վրա՝ հորինելով «սովետական ռազմական սպառնալիքի», «կոմունիզմի ագրեսիվության» վերաբերյալ կեղծ դրույթները։ Ընդ որում ամեն ինչ արվում է, որպեսզի թաքցվի ճշմարտությունը ներկայիս պատերազմների և ռազմական ընդհարումների իրական աղբյուրի վերաբերյալ։ Պատերազմների աղբյուրների վերաբերյալ իմպերիալիստական գաղափարախոսության ստի մերկացումը հատկապես կարևոր է բոլոր խաղաղասեր, հակապատերազմական ուժերը մոբիլիզացնելու, նրանց գործողությունների հակաիմպերիալիստական կողմնորոշումը խորացնելու համար։ Հաճախ Ռ. Ռեյգանի քաղաքականության արևմտյան քննադատների մոտ ձգտում է նկատվում այդ քաղաքականության բախտախնդրությունը բացատրելու ԱՄՆ-ի ներկայիս ղեկավարների կուրությամբ ու անիրազեկությամբ, այլ ոչ թե իմպերիալիզմի զարգացման խորքային պատճառներով։*

*Այսօր, ինչպես և նախկինում, պատերազմի ծագման և էության վերաբերյալ բուրժուական տեսությունները պատերազմը ներկայացնում են որպես «հավերժական» սոցիալական ինստիտուտ, հասարակական-պատմական պրոցեսի մշտական և անխուսափելի գործոն։ Ավստրիացի պրոֆեսոր Գ. Բլեյնիի* Պատերազմների պատճառները *գրքում թվարկվում է 33 պատճառ։ Ըստ հեղինակի, պատերազմի և խաղաղության վիճակները կարգավորող հիմնական մե-*



*խանիզմը «խաղաղության հոգեբանական շարքն է», որն անցնելուց հետո ցանկացած հասարակություն ունենում է «պատերազմի հակում»։*

*Բուրժուական հեղինակները ճգնում են նաև ապացուցել, որ պատերազմների աղբյուր է նաև ազգային-ազատագրական շարժումը, որ ազատագրված երկրներն իսկ ընդհանրումների իրավիճակներ են ստեղծում։ Այս կապակցությամբ Բիրմինգհեմի (ԱՄՆ) համալսարանի պրոֆեսոր Ն. Բրաունը պնդում է, որ նախկին գաղութների «զարգացման ցածր մակարդակը» անխուսափելիորեն ծնում է «բռնություն ներքին կյանքում և արտաքին քաղաքական կուրսում»։ Անգլիացի պատմաբան Մ. Հովարդն այն կարծիքին է, թե «խաղաղության համար գլխավոր վտանգը» այժմ բխում է ազատագրված երկրների ժողովուրդների նացիոնալիզմից։*

*Պատերազմի և ռազմական ընդհարումների ակունքների վերաբերյալ հարցին խոր գիտական պատասխան առաջին անգամ տվել են մարքսիզմի հիմնադիրները։ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, ուսումնասիրելով պատերազմների ծագման պատճառներն ու դրանց դերը պատմական զարգացման ընթացքում, ցույց են տվել, որ դասակարգային հակամարտ հասարակությունների արտադրահարաբերական ու շահագործողական հարաբերությունների համակարգը ծնում են զավթողականություն, պատերազմներ։ Ինչ վերաբերում է գաղութատիրությանը՝ որպես շահագործողական հասարակարգի կայուն հատկանիշի, ապա դարեր շարունակ այն եղել է մեծ ու փոքր պատերազմների աղբյուր։ Եվրոպական կապիտալիստական տերությունների գաղութային զավթողականությունը ծնել է ոչ միայն բազմաթիվ գաղութային պատերազմներ, այլև ընդհանուր միջազգային լարվածություն և եվրոպական խոշոր երկրների միջև ընդհարումների աղբյուր հանդիսացել։ Ֆ. Էնգելսը, վերլուծելով Եվրոպայում Նապոլեոնի տիրակալության շրջանում Անգլիայի և Ֆրանսիայի միջև երկարատև արյունահեղ պատերազմների խորքային պատճառները, շեշտել է, որ Անգլիայի կառավարողների կողմից պատերազմ սկսելը նաև նպատակ է ունեցել «... գրավել այն ֆրանսիական, իսպանական ու հոլանդական գաղութները, որոնք նրանք հարմար էին նկատում»* (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 2, стр. 567):

*Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն է դարձրել իմպերիալիզմի օրոք միջազգային բախումներում և պատերազմներում գաղութատիրության դերի բացահայտմանը։ Նա ցույց է տվել, որ գաղութատիրության՝ որպես միջազգային լարվածության աղբյուրի, դերն աճում է այն չափով, ինչ չափով մեծանում է բուն գաղութային քաղաքականության դերը տվյալ դարաշրջանի տնտեսական ու քաղաքական հարաբերություններում։ Ուսումնասիրելով իմպերիալիզմի ծագման, զարգացման ու գործառնության օրինաչափությունները, նա մեծ ուշադրություն դարձրեց պատերազմների սոցիալ-քաղաքական բովանդակությանը, քաղաքականության և տիրող դասակարգերի շահերի հետ դրանց ունեցած կապին։ Նա նշում էր, որ ամեն մի պատերազմ պետք է դիտել որպես «տվյալ, շահագրգռված տերությունների, և նրանց ներսում* տարբեր դասակարգերի, *տվյալ ժամանակի քաղաքականության* շարունակություն» *(Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 26, էջ 270)։*

*Պատերազմի հետ գաղութային քաղաքականության եղած կապն ընդունել են նաև որոշ իմպերիալիստական քաղաքագետներ։ Օրինակ, Ջ. Չեմբեռլենը՝ Անգլիայի գաղութային քաղաքականության ոգեշնչողներից մեկը, գրել է. «Եթե մենք մի պահ վերհիշենք մեր երկրի պատմությունը... ապա կտեսնենք, որ ամեն մի պատերազմ՝ մեծ թե փոքր, որին մենք մասնակցել ենք, հիմնականում վարվել է գաղութային շահերի համար, այսինքն որևէ գաղութի կամ այնպիսի մեծ կախյալ տերիտորիաների համար, ինչպիսին Հնդկաստանն է։ Սա բացարձակապես ճիշտ է և, ըստ երևույթին, ճիշտ կլինի, քանի դեռ չի վերջացել այս դարաշրջանը»։ Իրոք որ, չորս հարյուրամյակների ընթացքում Անգլիան վարել է 230 գաղութային պատերազմ։*

*Վ. Ի. Լենինը համակողմանիորեն հիմնավորել է, որ իմպերիալիզմը, որպես կապիտալիզմի բարձրագույն և հատկապես զավթողական փուլ, ոչ միայն*

օբյեկտիվորեն ծնում է կապիտալիզմի համար սովորական ռազմական ընդհարումներ ու պատերազմներ, այլև միմյանց հետ պատերազմող տասնյակ պետությունների մասնակցությամբ հատկապես երկարատև, դաժան, մարդկության միլիոնավոր կյանքեր արժեցող համաշխարհային մասշտաբի պատերազմներ։ Իմպերիալիզմի շահագործողական էությունը՝ նրա զավթողականության ակունքը, ավելի հաճախ է դրսևորվում միջազգային հարաբերություններում կիրառվող գաղութային քաղաքականության միջոցով։ Այդ քաղաքականությունն էլ, որպես իմպերիալիզմին ներհատուկ էություն, դրսևորվում է միջազգային ընդհարումների ու պատերազմների ձևով։ Մյուս կողմից, իմպերիալիզմի դարաշրջանի ամեն մի միջազգային ընդհարում ուղղակիորեն կապված է շահագործողական հասարակության զանազան շահագրգռությունների ու պահանջմունքների փոխգործողության հետ։ Իսկ գաղութային շահագրգռությունները հետզհետե առավել կարևոր դեր էին խաղում իմպերիալիզմի նվաճողական քաղաքականության դրդապատճառների շարքում։ Վ. Ի. Լենինը, վերլուծելով առաջին իմպերիալիստական պատերազմի դրդապատճառները, առաջին շարքում դասեց գաղութատիրական ձգտումները։

Այսպիսով, որպես շահագործողական հասարակարգի կարևորագույն, կայուն ու երկարատև հատկանիշ, գաղութատիրությունը միջազգային հարաբերությունների համակարգում հանդես է եկել որպես միջազգային ընդհարումների ու պատերազմների աղբյուր։

Նեոգաղութատիրությունը, որպես գաղութատիրական քաղաքականության ու պրակտիկայի նոր պատմական ձև, արդի պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի կարևորագույն հատկանիշ, հաջորդայնություն է դրսևորում նաև արդի միջազգային զարգացման տվյալ բնագավառում։ Բայց միևնույն ժամանակ, նեոգաղութատիրությունը արդի միջազգային հարաբերությունների ոլորտ է ներմուծում նաև որոշ խիստ կարևոր հատկանիշներ, որոնք այդ հարաբերությունները վերածում են միջազգային ռազմական ընդհարումների հիմնական աղբյուրի։ Նեոգաղութատիրության ձևավորումը՝ որպես ազգային-ազատագրական շարժման գոտիներում արմատական, ըստ էության հեղափոխական փոփոխություններին համաշխարհային կապիտալիզմի սոցիալ-դասակարգային պատասխանի, նրա դասակարգային-պաշտպանական ֆունկցիաների, կերպարանափոխում է գաղութային զավթողականության ավանդական դերը պատերազմի և խաղաղության հարցերում։ Իրականացնելով կապիտալիզմի սոցիալական էքսպանսիան ազատագրված երկրներում կապիտալիստական արտադրահարաբերությունների արտահանման և տեղական բուրժուազիայի աճի ու ձևավորման խթանման միջոցով, նեոգաղութատիրությունը, շարունակելով մնալ ժողովուրդների շահագործող, միաժամանակ հանդես է գալիս նաև որպես իմպերիալիստական հակահեղափոխության գործիք՝ հեղափոխական և ազատագրական ուժերի դեմ մղվող պայքարում։

Նեոգաղութատիրական քաղաքականությունը ձևավորվում և գործառնում է երկու հակադիր հասարակական սիստեմների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի, հակամարտության պայմաններում, իր վրա խորապես կրում այդ պայքարի դրոշմը։ Ավելին, որպես իմպերիալիստական բուրժուազիայի դասակարգայնորեն գիտակցված, նպատակաուղղված քաղաքականություն, այն կոչված է ազդեցություն գործելու այդ պայքարի ընթացքի վրա՝ նախկին գաղութային ու կիսագաղութային աշխարհում ամրապնդելով համաշխարհային կապիտալիզմի դիրքերը։ Այս իսկ նոր դասակարգային-պաշտպանական դրդապատճառներն են պայմանավորում նեոգաղութատիրության վտանգավորության մեծացումը՝ աշխարհում հօգուտ սոցիալիզմի ուժերի հարաբերակցության փոփոխման, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման պայմաններում։

Արդի պայմաններում, եթե հիմք ընդունենք մեր դարաշրջանի ետպատերազմյան ժամանակահատվածի պատմական շրջանակները, իմպերիալիստական քաղաքականությունը օբյեկտիվորեն կարող է ծնել երեք տեսակի միջազգային ընդհարումներ. ա) համաշխարհային ասպարեզում երկու հակամարտ հասարակական սիստեմների հակասություններն ու պայքարն արտացոլող,



բ) միջիմպերիալիստական հակասությունների ու պայքարի հետևանք հանդիսացող, գ) այնպիսիները, որոնք ծնունդ են իմպերիալիզմի փորձերի՝ ճնշելու ազգային-ազատագրական շարժումները, պարտադրելու ազատագրված երկրներին նեոգաղութատիրական լուծումներ նրանց առջև ծառացած բարդ հասարակական խնդիրներում, նրանց պահելու համաշխարհային կապիտալիստական տնտեսության համակարգում որպես հետամնաց, կախյալ և շահագործվող օբյեկտներ։ Այս ամենում արտահայտվում են իմպերիալիզմի և ազատագրված երկրների միջև եղած հակասությունները։

Ետպատերազմյան շրջանի միջազգային հարաբերությունների զարգացման փորձը ցույց է տալիս, որ բազմիցս ծագած, երբեմն սուր բնույթի բոլոր ընդհարումներից միայն երրորդ խումբն է հանգեցրել պատերազմների։ Դրանք հաճախ վերածվել են նեոգաղութատիրական պատերազմների։ Վ. Ա. Կրեմենյուկը, վերլուծելով Ասիայում ընդհարումների զարգացման միտումը, նշում է. «Այդ ընդհարումների իրավիճակների ծագման ու սրման ակունքները գաղութատիրության և նեոգաղութատիրության քաղաքականության մեջ են, Ասիայում սոցիալիստական երկրների և ասիական մայր ցամաքի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման դեմ ուղղված ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության մեջ։ Առաջնակարգ կարևորության գործոնների ազդեցության տակ այդ բարդ ընդհարումների իրադրություններն արդի փուլում վերածվել են պահպանվող լարվածության աղբյուրի և միջազգային խաղաղության ու անվտանգության սպառնալիքի» (В. А. Кременюк, США и конфликты в странах Азии, М; 1979, стр. 5):

Իրոք որ, ազգային-ազատագրական շարժման գոտիներում նեոգաղութատիրության հետ կապված պատերազմների, պատերազմական ընդհարումների վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանցում այս կամ այն ձևով ու չափով արտահայտվում են երկու համաշխարհային սիստեմների, ինչպես նաև միջիմպերիալիստական հակասությունները։ Եվ որքան մեծ է դրանց տեսակարար կշիռը, այնքան ավելի մեծ վտանգ են ներկայացնում միջազգային անվտանգության համար։ Նեոգաղութատիրության դերը, որպես միջազգային ընդհարումների ու պատերազմի աղբյուրի, բացահայտորեն երևում է միջազգային քաղաքական ճգնաժամերի մեխանիզմը դիտարկելիս։

Միջազգային քաղաքական ճգնաժամերն արդի իրադրությունում դարաշրջանի գլոբալ հակասությունների դրսևորման ամենասուր ձևն են, առաջին հերթին՝ միջազգային հարաբերություններում իմպերիալիստական ռեակցիայի և համաշխարհային հեղափոխական ուժերի միջև հակասությունների դրսևորման ձևը։ Այդ ճգնաժամերը ծագում են որպես հետևանք իմպերիալիզմի և նեոգաղութատիրության ծնած ընդհարումների։ Միջազգային քաղաքական ճգնաժամերի դասակարգային բնույթի, նրանց ծագման դասակարգային հիմքի որոշումն իր հերթին վառ լույս է սփռում արդիականության ընդհարումների և պատերազմների աղբյուրի վրա։ Մարքս-լենինյան վերլուծությունն այն ընդհանուր միջավայրի, որում ճգնաժամեր են առաջանում, միջազգային քաղաքական և տնտեսական հակասությունների էության և բնույթի բացահայտումը օգնում են հասկանալու, որ ամեն մի «տեղական» ճգնաժամ համընդհանուր պրոցեսների, գլոբալ հակասությունների արտացոլումն ու կոնկրետ պատմական դրսևորումն է։ Յուրաքանչյուր տեղական ճգնաժամ ոչ միայն ենթակա է համընդհանուր պրոցեսների ու հակասությունների զարգացման ու սրման ընթացքին, այլև կուտակված հակասությունների կոնկրետ բռնկում է, որն ունակ է դառնալու խոշոր, գլոբալ ընդհարման ու համընդհանուր պատերազմի սկիզբ, ելակետ։ Այս իմաստով որպես միջավայր, որտեղ նեոգաղութատիրությունը ստեղծում է ընդհարումների իրավիճակ, ծառայում են «տեղական ճգնաժամերի» բռնկումները, արդիականության հակասությունների համակարգը, ինչպես գլխավոր, այնպես էլ նրան ենթակա հակասությունների սրումը։

Դա չի նշանակում, թե իմպերիալիզմի և ազատագրված երկրների միջև հակասությունը էական դեր չի խաղում։ Այն մնում է որպես ընդհարումների իրավիճակի ու պատերազմների ծագման հզոր աղբյուր։ Բայց այս հակասու-

թյունում առավել է բյուրեղանում դասակարգայինը՝ երկու հասարակական սիստեմների միջև եղած հակասությունը օրգանապես և առավել սերտորեն կապելով իմպերիալիզմի և ազգային-ազատագրական շարժման միջև եղած հակասության հետ։ Դասակարգային մոտեցման դեպքում հատկապես հստակորեն է երևում, որ նեոգաղութատիրության և ազատագրված երկրների միջև հակամարտության հիմնական առանցքն անցնում է նեոգաղութատիրություն— սոցիալիստական կողմնորոշման ազատագրված երկրներ առանցքով։ Փորձը ցույց է տալիս, որ ազգային-ազատագրական շարժման գոտիներում պատերազմի հանգեցրած առավել խոր ճգնաժամային իրադրություններ, ընդհարումներ են ծագել, երբ տվյալ հակասությունների շրջանակներում հակամարտությունը նեոգաղութատիրության և կոնկրետ ազատագրական շարժման, երիտասարդ պետության միջև ձեռք է բերել դասակարգային բնույթ։

Դասակարգային տեսակետից միջազգային ընդհարումների ու պատերազմների միասնական աղբյուրը իմպերիալիզմի ռազմաքաղաքական ստրատեգիան է, որը գործառնում է տարբեր ոլորտներում ու զանազան ձևերով, գործում է ընդդեմ համաշխարհային սոցիալիզմի, ազգային-ազատագրական և միջազգային բանվորական շարժումների։ Նեոգաղութատիրությունում, որպես ընդհարումների ու պատերազմի աղբյուրում, իմպերիալիզմի ռազմաքաղաքական ստրատեգիան միջազգային հարաբերություններում դրսևորվում է նաև այնպես, երբ իմպերիալիստական ռեակցիան ստիպված է հաշվի առնել ուժերի իրական հարաբերակցությունը, փնտրել իր տեսակետից հեղափոխական պրոցեսի «թույլ» օղակներ, որտեղ իմպերիալիզմի համար կարելի լինի շահեկանորեն վարել դասակարգային հակամարտությունը։

Ետպատերազմյան շրջանը խաղաղ կարելի է անվանել միայն այն իմաստով, որ իմպերիալիզմին չհաջողվեց սանձազերծել նոր համաշխարհային պատերազմ։ Մինչդեռ տեղի են ունեցել բազմաթիվ մանր ու խոշոր ռազմական բախումներ, երկարատև ու դաժան, այսպես ասած տեղական «սահմանափակ» պատերազմներ։ Իմպերիալիզմը ռազմական միջոցներով փորձում էր ճնշել ազգային-ազատագրական հեղափոխությունները և սանձազերծեց մի շարք նեոգաղութատիրական պատերազմներ, հրահրեց մի շարք ռազմական ընդհարումներ ազատագրված երկրների միջև։ Հունգարացի պատմաբան Ի. Կենդեն հաշվել է, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո քսանհինգ տարվա ընթացքում (1945—1969 թթ.) ազատագրված երկրները մասնակցել են 93 պատերազմների, որոնց ընդհանուր տևողությունը կազմել է 255 տարի։ Դրանք թե՛ գաղութային պատերազմներ էին, թե՛ ռազմական ընդհարումներ ազատագրված երկրների միջև, թե՛ նեոգաղութային պատերազմներ, հնդկաչինյան, մերձավորարևելյան ագրեսիաներ և այլն։

Բայց դրանք այլևս սովորական, զուտ ավանդական գաղութային պատերազմներ չեն։ Նեոգաղութատիրությունը, նրա հակակոմունիստական ստրատեգիան ու գաղափարախոսությունը այս պատերազմներին ավելի բարդ բնույթ են հաղորդում։ Այս պատերազմներում նեղ իմաստով նեոգաղութային խնդիրները միահյուսվում են սոցիալիստական սիստեմի հետ առճակատման, ազգային-ազատագրական շարժման գոտիներում երկու համաշխարհային սիստեմների շահերը հատկապես խոր կերպով շոշափող միջազգային կոնֆլիկտները ռազմական միջոցներով լուծելու խնդիրների հետ։ Այս օրինակները նորից համոզում են, որ պատերազմը քաղաքականության շարունակությունն է։ Քաղաքական նպատակը կանխորոշում է ինչպես ընդհարման բնույթը, այնպես էլ նրա տևողությունը, այն վարելու մեթոդների ու միջոցների ընտրությունը, այդ թվում նաև ստրատեգիայի այս կամ այն տարբերակի ընտրությունը։

Հատկապես վտանգավոր դեր է խաղում հակակոմունիզմը նեոգաղութատիրության ստրատեգիայում, և ոչ միայն այն պատճառով, որ հակակոմունիզմը ագրեսիայի և պատերազմների գաղափարախոսությունն է։ Հակակոմունիզմը նորացնում է գաղութային քաղաքականության ավանդական դրդապատճառներն ու խնդիրները՝ դրանք առավելապես հարմարեցնելով իր սեփա-



կան միջազգային դասակարգային ստրատեգիային։ Հակակոմունիզմը մեկ անգամ չէ, որ փորձել է հրահրել երկու սիստեմների ուղղակի ճակատային ռազմական բախում՝ նեոգաղութային պատերազմների սանձազերծման, իսկ այնուհետև ընդարձակման օգնությամբ։ ԱՄՆ-ի ագրեսիան ընդդեմ ԿԺԴՀ-ի և կորեական ժողովրդի՝ միաժամանակ Կորեայի հարավում նեոգաղութային վարչակազմ ստեղծելով, նրա հնդկաչինյան ռազմական արկածախնդրությունը պատկանում են ճիշտ այն առավել խոշոր, երկարատև, վարման մեթոդներով ու միջոցներով դաժան պատերազմների թվին, որոնք հղի էին երկու սիստեմների միջև ընդհանուր ընդհարման վերաճելու վտանգավոր միտումով։ Ծնվելու պահին նեոգաղութային բնույթ ունեցող այդ պատերազմները միաժամանակ խնդիր ունեին ռազմականորեն ջախջախել առանձին սոցիալիստական երկրների և դրանով իսկ «ետ շպրտել» սոցիալիզմը։

Այս միտումը լայն մասշտաբներ և հատկապես չարագուշակ բնույթ է ձեռք բերում ռեյգանիզմում։ Ռ. Ռեյգանի հակակոմունիստական «խաչակրաց արշավանքը» հարություն է տալիս սառը պատերազմի ժամանակվա հատկապես մռայլ ավանդույթներին։ Ամերիկյան խոշոր քաղաքականագետ Ռ. Բարնետը նշում է, որ ԱՄՆ-ի ստրատեգիան, սկսած Տրումենի դոկտրինայից, «հստակորեն հասկացնել էր տալիս, որ նրա նպատակն էր պայքարը ոչ թե բռնության» ցանկացած դեպքի, ոչ թե «բռնադատման» ամեն մի դեպքի, և ոչ թե «ստատուս-քվոյի փոփոխման» բոլոր դեպքերի դեմ, այլ այնպիսիների դեմ, որոնք կապված էին կոմունիզմի հետ։

Կյանքը ցույց է տալիս, որ ազգային-ազատագրական շարժման գոտիներում այն ընդհարումներն են հղի ուղղակի ռազմական բախման վերաճելու միտումով, երբ պայքարը հանուն ազգային ազատագրման և սոցիալական առաջընթացի վճռական բնույթ է կրում, վարվում է հեղափոխական մեթոդներով, այնպիսի նպատակներ է հետապնդում, որոնք ազատագրված երկրներում հասարակական զարգացման պրոցեսը կարող են դուրս բերել կապիտալիզմի շրջանակներից։ Մերձավոր Արևելքում երկարատև միջազգային ընդհարումը, բազմիցս նրա վերաճումը վտանգավոր ռազմական գործողությունների նեոգաղութատիրության (որի գործիքն է դարձել Իսրայելը) և արաբական երկրների միջև, վառ կերպով վկայում է ընդհարման խոր դասակարգային բնույթը։ Տարակույս չկա, որ Իսրայելը հետապնդում է իր առանձնակի զավթողական նպատակները, բայց նրա քաղաքականությունը ներառված է իմպերիալիզմի, ամենից առաջ, ԱՄՆ-ի նեոգաղութային քաղաքականության ընդհանուր ստրատեգիայի մեջ, որի նպատակն է տիրապետություն հաստատել այս շրջանում։ Վաշինգտոնի մերձավորարևելյան ստրատեգիայի բաղադրատարրերն են դարձել անմիջական ամերիկյան ներկայության մեծացումը, սպառազինությունների զանգվածային մատակարարումները, պայքարն ընդդեմ առաջադիմական և հայրենասիրական ուժերի, Մերձավոր Արևելքի և հարակից շրջանների հեղափոխական ուժերի, հարավից Սովետական Միությանը ռազմական սպառնալիք ստեղծելը։

Արդեն տասը տարի է, սկսած 1975 թվականից, շարունակվում է Լիբանանյան փոքր հանրապետության ողբերգությունը։ Իսրայելը, 1982 թ. հունիսին լայն մասշտաբի ներխուժում ձեռնարկելով Լիբանան, պաշտոնապես իր ագրեսիայի նպատակ հռչակեց իբր իր հյուսիսային սահմանների «անվտանգության» ապահովումը։ Իրականում Վաշինգտոնն ու Թել Ավիվը նպատակ էին հետապնդում ֆիզիկապես բնաջնջել Լիբանանում գտնվող Պաղեստինյան դիմադրական շարժման զինված ջոկատները, օրակարգից հանել պաղեստինցիների օրինական իրավունքների իրականացման հարցը, լիբանանցիների ու պաղեստինցիների զանգվածային սպանություններով ահաբեկել արաբ մյուս ժողովուրդներին, դրանով իսկ թուլացնել նեոգաղութատիրությանն ու սիոնիզմին հակադրվող առաջադիմական ուժերի ու պետությունների ճակատը։ Թեպետև իսրայելական բանակը հիմնականում հեռացավ Լիբանանից, երկրին արդեն պատճառվել են հսկայական անդառնալի կորուստներ։ «Ալ Մուստաքբալ» ամսագրի տվյալներով Լիբանանում սպանվել է 167 հազար և վիրավորվել

870 հազար մարդ։ Ավերակների են վերածվել կամ լրիվին անգործության են մատնված 730 գործարան ու ֆաբրիկա, 123 հյուրանոց, վնասված են 87 հազար տներ, ավերվել են շուրջ 100 գյուղեր ու 3 քաղաքներ՝ Դամուրը, Ալեյը և Բհամդունը։ Մասնագետների հաշվումներով Լիբանանի վերականգնման համար անհրաժեշտ կլինի մոտ 10 տարի և 30 մլրդ. դոլար։

Մերձավոր Արևելքը տալիս է նաև այլ բնույթի օրինակներ։ Եգիպտոսի վարչակարգի վերասերումը, Ա. Սադաթի ետ կանգնելը հեղափոխական և նույնիսկ սոսկ առաջադիմական դիրքերից անմիջապես անդրադարձավ Եգիպտոսի և Իսրայելի միջև ընդհարման նեոգաղութային «լուծման» մեթոդների վրա։ Այնտեղ, ուր թեկուզ և ամենասուր ընդհարումը ձեռք չի բերում ուղղակի դասակարգային բախման բնույթ, իմպերիալիզմը փորձում է գտնել դրա ոչ ռազմական լուծումը և առավել ևս դիմում է քաղաքական լուծման, սպառելով ճնշման և սպառնալիքների բոլոր միջոցները, եթե գործ ունի բացահայտ կապիտալիստական կողմնորոշում ունեցող վարչակարգի հետ։

Առանց նեոգաղութատիրության քաղաքականությունը վերլուծելու չի կարելի հասկանալ ազատագրված երկրների ընդհարումների բնույթը։ Օրինակ, Աֆրիկայում, սկսած 1960 թվականից, տեղի են ունեցել ավելի քան 50 միջպետական բախումներ, որոնք որոշ դեպքերում ռազմական գործողությունների բնույթ են կրել։ Հեղափոխական Եթովպիայի դեմ ագրեսիայում Սոմալիի թիկունքին կանգնած էին իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերը։ Հարավ-Աֆրիկյան Հանրապետության ագրեսիվ քաղաքականությունը Անգոլայի, Մոզամբիկի և Աֆրիկայի հարավի մի շարք այլ երկրների նկատմամբ, լուծելով ռասիզմի և ապարտեիդի պաշտպանության հետադիմական խնդիրների մի ողջ կոմպլեքս, նախ և առաջ հեղափոխական պրոցեսի դեմ պայքարի, հեղափոխական և առաջադիմական վարչակարգերի վերացման նպատակ է հետապնդում։

Աֆրիկայի երիտասարդ պետությունների միջև գոյություն ունեն բազմաթիվ հակասություններ, որոնք հիմնականում գաղութային անցյալի թողած ժառանգություն են, և յուրաքանչյուր ընդհարում ունի իր կոնկրետ պատճառը։ Բայց ընդհարումները վերաճում են ռազմական գործողությունների այնտեղ և այն ժամանակ, երբ իմպերիալիզմն ու նրա գործակիցները ձգտում են ճնշել ազգային-ազատագրական պայքարը, խանգարել երիտասարդ պետությունների առաջադիմական զարգացմանը, վերացնել հեղափոխական վարչակարգերը։ Այդ ֆունկցիաները հաճախ դրվում են նեոգաղութատիրության գործակիցների վրա՝ հանձինս Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և մի շարք հետադիմական վարչակարգերի ու հակահեղափոխական ուժերի։

Իրանա-իրաքյան ռազմական ընդհարումն ունի բարդ բնույթ, և՛ պատմական, և՛ տնտեսական, և՛ գաղափարախոսական բնույթի բազմաթիվ կոնկրետ պատճառներ։ Արդեն այն դարձել է հարյուր հազարավոր կյանքեր խլած բազմամյա պատերազմ և միայն առաջին հայացքից է թվում համաշխարհային հակասությունների հետ կապ չունեցող սոսկ տեղական պատերազմ։ Այն իրոք անիմաստ է թե՛ Իրանի, թե՛ Իրաքի ազգային շահերի տեսակետից, բայց համապատասխանում է այն հետադիմական իմպերիալիստական ու ռեգիոնալ ուժերի շահերին, որոնք ցանկանում են երկու երկրների փոխադարձ հյուծումն ու թուլացումը, նրանցում առաջադեմ և հեղափոխական ուժերի պարտությունն ու հետադիմական վերասերումը, դրանով իսկ աշխարհի այս կարևոր շրջանում իմպերիալիզմի ու նեոգաղութատիրության դիրքերի ամրապնդումը։

Նեոգաղութատիրությունը մշտապես ընդհարման իրավիճակներ է հրահրում այն գոտիներում, որտեղ գտնվում են կարևոր հանքային հումքի մեծ պաշարներ։ Օրինակ, Զաիրում ռազմական ընդհարումը մեծապես բացատրվում է այն բանով, որ այնտեղ գտնվում են օգտակար հանածոների, այդ թվում՝ ուրանի և նավթի հարուստ հանքավայրեր։ Նույն այդ հողի վրա այսօր տերիտորիալ վեճեր են ծագել Մալիի և Բուրկինա Ֆասոյի միջև, Արևմտյան Սահարայի շուրջը և այլն։



Նեոգաղութատիրության վտանգը կայանում է նաև ազատագրված երկրների վրին սպառազինությունների մրցավազք փաթաթելու և նրանցում միլիտարիզմի ուժեղացման մեջ։ ԱՄՆ-ը հանդես է գալիս որպես սպառազինությունների մրցավազքի նախաձեռնող։ Այնպիսի երկրներ, ինչպիսին են Սաուդյան Արաբիան, Հարավային Կորեան, Պակիստանը, ամեն տարի միլիարդավոր դոլարներ են ծախսում զենքի նորագույն տեսակների գնման համար։ Ինքնուրույնաբար կամ նեոգաղութարարների հետ միասին ժանդարմի դեր խաղալու ընդունակ հետադիմական ուժերի տենդագին զինումը հանգեցնում է ռազմական լարվածության մեծացման ու սպառազինությունների աճի նաև մյուս ազատագրված երկրներում։ Ազատագրված երկրների տարեկան ռազմական ծախսերը զգալիորեն անցնում են 100 մլրդ. դոլարից։ Իսկ զինված ուժերի և սպառազինությունների հատկապես մեծ կենտրոնացման գոտիներում, որոնց թվին նախ և առաջ պատկանում է Մերձավոր Արևելքը, ռազմական ծախսերի բաժինը 80-ական թվականների սկզբին կազմում էր Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ընդհանուր ռազմական ծախսերի 40—50 տոկոսը։

Այսպիսով, նեոգաղութատիրությունը, որպես ազգային-ազատագրական շարժման գոտիներում պատերազմների և ռազմական ընդհարումների, սպառազինությունների մրցավազքի և միլիտարիզմի աղբյուր, որպես ազատագրված երկրների թշնամի, արդի միջազգային հարաբերությունների համակարգում հանդես է գալիս նաև որպես բոլոր ժողովուրդների, բոլոր առաջադեմ և խաղաղասեր ուժերի վտանգավոր ու նենգ թշնամի։ Այդ իսկ պատճառով նեոգաղութատիրության դեմ մղվող պայքարում շահագրգռված են ոչ միայն նրա գավթողականության ուղղակի օբյեկտ հանդիսացող ժողովուրդները, այլև աշխարհի բոլոր ժողովուրդները։

# ՐԱՖՖՈՒ ԳՐԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԸ

(ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ս. ՍԱՐԻՆՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**



ԳՐԱԿԱՆ-ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ իր նախնական ըմբռնումները Րաֆֆին շարադրել է «Սալբի» վեպի «Հառաջաբանում» (1867): Իր բովանդակությամբ դա հրապարակախոսական մի քննաբանություն է հայ ժողովրդի սոցիալ-պատմական կացության ու զարգացման ուղիների վերաբերյալ, որոնք արտացոլում են հասարակական կազմակերպության լուսավորական աշխարհայացքի հիմնական սկզբունքները: Հենց այն հանգամանքը, որ Րաֆֆին աշխարհայացքային այդ ընդհանուր սիստեմի մեջ է առնում նաև գեղարվեստական գործունեությունը, ինքնին ցույց է տալիս, որ նա գրականությունը դիտում է իբրև պատմություն: «Ռոմանները,— գրում է նա,— ազգերի գրականության մեջ կատարում են ամենակարևոր պաշտոն. ռոմանները՝ որպես ազգերի բարոյական և իմացական կյանքի պատմագրությունք, ավանդում են նոցա բարք ու վարքի, նոցա սովորությունների կենդանի պատկերքը գալոց սերընդին» (Րաֆֆի, Երկեր, 1962, հ. 1, էջ 65): Ըստ նկարագրական այս օբյեկտիվիզմի, գրական երկը նույնանում է «կախարդական հայելու», իսկ գրողին հատկացվում է «նկարչի պաշտոնը», որ իրականությունը պատկերում է այնպես, ինչպես այն կա, առանց դիտավորություն ներարկելու գործող հերոսների «բարոյական, իմացական և նյութական կերպարանքին»: Սակայն այդ օբյեկտիվիզմն ինքնին ներգործող լիցքեր ունի, որոնք ինքնաբերաբար խթանում են գրական երկի բարոյական ուղղությունը: Կյանքում լույսն ու ստվերը, գեղեցիկն ու այլանդակը, չարն ու բարին գործում են կողք-կողքի, հետևաբար կյանքի օբյեկտիվ արտացոլումն ի հայտ է բերում հայացքի որոշակի ուղղություն, այսինքն՝ «ազգերը տեսնելով յուրյանց կյանքի տգեղ և ավերված պատկերքը, յուրյանց մոլորությունների ամոթալի նկարագիրքը, ուսանում են շինել և բարեկարգել յուրյանց դրությունը» (1, 65): Տեսական այս դրույթը թելադրում է ազգային գրականությունը նորոգելու մի անհրաժեշտ պահանջ, որն իր հերթին պատմաքննական հայացքի տակ է առնում անցյալի գեղարվեստական փորձի գնահատությունը: Արդյունքն ընդհանուր առմամբ գոհացուցիչ չէր ներկայանում Րաֆֆուն, քանի որ «... հայերի մեջ գրականությունը՝ ըստ մեծի մասին զբաղված լինելով եկեղեցական մատենագրությամբ, այն ևս հին և մեռած լեզվով, մինչև այսօր զուրկ է կացուցել յուր ընթերցողքը հեղինակության այն փափուկ և քնքուշ մասնից» և չի ստեղծել «... մի գիրք, որո մեջ հայ մարդը նշմարեր յուր անձը և յուր կյանքը իսկությամբ» (1, 65): Իսկ թե ինչպիսի հսկայական նշանակություն ունի ժամանակակից կյանքն արտացոլող գրականությունը ընթերցասիրության և ազգային լուսավորության գործում, հիանալի ապացույց են տալիս «Հյուսիսափայլի» տետրերն ու Աբովյանի **Վերք Հայաստանի** վեպը, որի խորքից «խոսում է ազգի հոգին»: Րաֆֆին գեղագիտական որոշակի իմաստ է տալիս «ազգային գրականություն» հասկացությանը, դիտելով, թե որքան էլ թարգմանական երկերն ունենան էսթետիկական ու իմացաբանական արժեք, այնուամենայնիվ, չեն կարող փոխարինել ազգային գրականության ճանաչողական և ուսուցողական նշանակությունը: Այս իմաստով Րաֆֆին ազգային գրականություն հասկացության մեջ տարբերակում է տվյալ ժողովրդի հոգևոր կերտվածքին յուրահատուկ գեղարվեստական մտածողության առանձնահատկությունը: Նա հատկապես շեշտում է արևելյան երևակայությունը, որը հրաշապատում հեքիաթների ու առասպելների աշխարհում որոնում է գեղեցկի ու բարու իդեալը: Եվ քանի որ «ֆանտազիան բնական է մարդուն», ուստի և նրա գեղարվեստական մտածողությունը մշտապես կառչած է առասպելի վերիրական խորհրդավորությանը: Հեքիաթի և ավանդության պոետիկան Րաֆֆին դիտում է որպես գրականության ազգային ձևի հատկանիշ, մի ըմբռնում, որ անշուշտ գալիս էր ռոմանտիզմի գեղագիտությունից: «Մի ազգ երբեք չի կարող կրթության կատարելագործությանը հասնել,—գրում է Րաֆֆին,— քանի նորա մեջ չէ զարգացած ընթերցանության սերը: Իսկ ընթերցասիրությունը ամբոխի մեջ տարածելու գլխավոր միջոցներից մինը բանաստեղծական և վիպական գրվածքներն են: Ի՞նչ գիրք կարող է լինել ժողովրդի սրտին և հոգուն այնքան մոտ, որքան մի վեպ, որը կախարդական հայելվո նման պատկերացնում է յուր մեջ նորա կյանքը, երևան է հանում հասարակական տիպեր՝ յուրյանց գեղեցիկ և այլանդակ նկարագիրներով» (9, 65): «Հասարակական տիպեր» հասկացությունն արդեն Րաֆֆին տարբերակում է որոշակի գեղագիտական նշանակությամբ, որի իմաստը հանգում է ազգային բնավորությունների մեջ սոցիալական-հոգեբանական տարրերի բացահայտմանը: Վերլուծելով Գ. Սունդուկյանի **Քանդած օջախ** և **Էլի մեկ զոհ** կատակերգությունները և ընդգծելով դրանց «կրթողական նշանակությունը», Րաֆֆին գնահատության չափանիշ է ընդունում պատմական վավերագրականությունը, «հասարակական կյանքի» հեղաբեկումների, «նորա թե՛ տնտեսական, թե՛ բարոյական և թե մտավորական՝ ընդհանուր բանկոտության» ճշմարտացի արտացոլումը: Գրական երկի նման գնահատությունը ելնում է պոզիտիվ-սոցիոլոգիական գեղագիտությունից, հանգամանք, որ ուղղակիորեն հուշում է Հ. Թենի կամ ռուսական «նատուրալ դպրոցի» ազդեցությունը: Մի շարք հոդվածներում Րաֆֆին հիմնավորում է այն դրույթը, թե ժողովուրդների գեղարվեստական գործունեությունը պայմանավորված է նրանց հասարակական զարգացման աստիճանով, ինչպես նաև բնաաշխարհագրական պայմաններով: «Հանճարներն ու տաղանդներն ավելի զարգացած հասարակական կյանքի արտահայտություններ են»,— ասում է Րաֆֆին, պատճառաբանելով հայոց գրականության ներկա «աղքատությունը», ինչպես նաև ներշնչելով ապագայի հավատը, թե «մի օր հայոց հողի վրա կծնվեին Գյոթեներ, Շիլլերներ և Շեքսպիրներ» (9, 66): Ենապատմական պատճառականությունը հաստատող առավել հիմնավոր ապացույցներ Րաֆֆին հայտնաբերում է ժողովրդական բանահյուսության մեջ՝ դիտելով այն որպես էթնիկական բնավորությունը խտացնող ճշմարիտ վավերագիր: **Քնար մշեցվոց և վանեցվոց գրքույկի առիթով** (1874), **Գրոց ու բրոց** կամ **Սասունցի Դավիթ** (1875) հոդվածներում նա բացառիկ նշանակություն է տալիս ժողովրդական երգերին ու ավանդույթներին հայոց անցյալի կենցաղն ու բարքերը ուսումնասիրելու առումով: «Մի ազգի կամ ժողովրդի բարոյական և մտավոր պատկերն ավելի ճըշտությամբ երևում է նորա բանաստեղծության մեջ. կամենում ես ճանաչել նորա հոգին, կարդա նորա երգերը» (9, 1): Պատմահիմացաբանական նույնպիսի նշանակություն Րաֆֆին վերագրում է նաև առասպելներին ու ավանդություններին, որոնք, որպես անփոխարինելի հուշարձաններ, խտացնում են ժողովրդի պատմության հնագույն դարերի «կյանքի ձևերը»: Ժողովրդական երգերը ստորաբաժանելով «կըրոնական և լիրիկական» մոտիվների, գրողը ցույց է տալիս այդ մոտիվներից յուրաքանչյուրի գոյաբանական առաղձը՝ հատկապես շեշտը դնելով տվյալ գավառի

բաղված էր ստրուկների ազատության հարցով, դրանով էր մտահոգված երկրի ամբողջ հասարակական միտքը՝ մամուլը, գրականությունը, գիտությունն ու փիլիսոփայությունը: Եվ ահա, «մտքերի այդ կռվի ժամանակ հայտնվում է մի կին, Բիչեր Սթոու և օգուտ քաղելով ժամանակի մտածողություններից, գրում է մի վեպ ստրուկների կյանքից, «Թոմաս աղբոր տնակը»: Այդ կնոջ համար ասում են, որ ստրուկների ազատիչը եղավ ոչ այնքան հյուսիսային ամերիկացիների զենքը, որքան նրա վեպը»: Նույնպես և Ռուսաստանում ծագում է ճորտերի ազատության հարցը, և Տուրգենևը, արձագանքելով հասարակական կյանքի գլխավոր ձգտմանը, ստեղծում է ժամանակի միտումներն արտահայտող մի շարք վեպեր ու վիպակներ. «Եվ դրա մեջն է ժամանակակից վեպի բարձր նշանակությունը, որ նա ամփոփում է իր մեջ այն բոլորը, ինչ որ հազարավորները և միլիոնավորներն են մտածում» (10, 131):

Փույթ չէ, թե կամերային էսթետը գեղեցիկը որոնում է վերիրական աներդաշնակության աշխարհում: Ճշմարիտ գրականությունը չի կարող ազատ լինել ժամանակի գաղափարների հանդեպ, և գեղարվեստական ամեն մի երկ անպայմանորեն «բովանդակում է իր մեջ որոշ տենդենցիա», որն ինքնին շեշտում է նրա ծրագրային միտվածությունը: Եվ դա է գրական երկրի արժեքայնության չափանիշը, քանի որ «գեղարվեստը միայն այն ժամանակ պետք է կատարյալ համարել, երբ արհեստի գեղեցկության հետ միանում են բարձր, վսեմ և հանրամարդկային գաղափարներ» (10, 69): Այստեղից ինքնաբերաբար բխում է գրականության հասարակական դերի և գրողի կոչման կարևոր նշանակությունը ժողովրդի հայացքը մի որոշակի ուղղությամբ կազմավորելու գործում: Րաֆֆին գրողի կերպարի մեջ առանձնաշեշտում է ո՛չ միայն ինքնաբավ գեղագետին, այլև «ժամանակի գործչին», «ժամանակի ձգտումների և գաղափարների առաջնորդողին»:

Հաստատելով գրականության և կյանքի հարաբերվածությունը՝ Րաֆֆին տարբերակում էր գրականության, որպես հասարակական գիտակցության ձևի, յուրահատկությունը: Վկայակոչելով «երևելի կրիտիկոս» Բելինսկու ասույթը, նա որոշակիորեն գծում է այն սահմանը, որ գոյություն ունի գիտության և գեղարվեստի միջև: «Գիտությունը անհաշտ է բանաստեղծության հետ»,— ասում է Րաֆֆին, անշուշտ ակնարկելով այն բանավեճը, որ առաջադրել էր XIX դարասկզբի տեսական միտքը գիտական և գեղարվեստական մտածողությունների անջատման վերաբերյալ: Եվ դա որոշ իմաստով հավաստի է այն իրողությամբ, որ «մարդկային հոգու օրենքներից և դարևոր փորձից» գեղարվեստը հանում է ճշմարտություններ, որոնք հաճախ հերքում են գիտական «թեորեաները և սիստեմները»: Ահա թե ինչու գրականությունը, գեղարվեստը հաճախ վճռում են այնպիսի հարցեր, «որ փիլիսոփայությունն ու ուսումը անզոր են լինում վճռելու»: Եվ եթե կյանքը գիտության, հրապարակախոսության, փիլիսոփայության առաջ դնում է նույն հարցերը, ինչ որ գրականության, ապա վերջինս այդ հարցերը լուծում է միայն իրեն հատուկ օրենքներով, հետևաբար «մի վեպի համար ասել ծրագիր... պետք չէ հասկանալ մի որևիցե կանոնադրության զանազան հոդվածների և պարագրաֆների թվանշաններով: Վեպը այդ ձևերը չունի իր մեջ... վեպի ձևով գրված ծրագիրը բոլորովին ուրիշ կերպարանք ունի: Նրա մեջ պարագրաֆների տեղ ծառայում է նույնիսկ կյանքը իր բազմակողմանի երևույթներով» (10, 77):

Ժամանակը հասարակական մտքի քննությանն է դնում բարոյական ու սոցիալական բնույթի բազմաթիվ հարցեր, մամուլը ասպարեզ է հանում հրապարակախոսական, գիտական, փիլիսոփայական լուծումներ: Նույն երևույթներն զբաղեցնում են նաև գրականությանը, սակայն բոլորովին ուրիշ կերպարանքով. «Եվ դրա մեջն է վիպասանի առավելությունը, որ նա լրագրի արտահայտած մերկ մտքից ստեղծում է կյանք, մարմին և հոգի տալիս նրան, շոշափելի կերպով ներկայացնում է մեզ» (10, 130): Այստեղից արդեն սկիզբ են առնում գրողի երևակայությունն ու տաղանդի ստեղծագործական ունակությունը, գծելով այն սահմանը, որ գոյություն ունի իրականության և նրա գեղարվեստական արտապատկերի միջև: Հեգնելով նայիվ ռեալիզմին հարող իր ընդդիմախոսի ըմբռնումը, որն ըստ էության ջնջում է գեղարվեստական իրականության և կյանքի միջև եղած ամեն մի պայմանականություն և փաստորեն գրական երկը նույնացնում «ֆոտոգրաֆիայի» կամ «պոլիցիական ակտի», Րաֆֆին էական նշանակություն է հատկացնում գրողի ստեղծագործական երևակայությանը, կյանքի



հետազոտության անհրաժեշտությունը գիտակցելով այն ազատությամբ, որով նա ընտրում ու համակարգում է փաստերը, հայտնաբերում տիպականը և գնահատում ըստ բարոյական հատկանիշի:

**Պ. Հայկունու կրիտիկան և «Կայծերը»** հոդվածը հարստացնում է հայ քննադատական-տեսական միտքը մի շարք գեղագիտական սկզբունքների հարցադրումով և լուսաբանությամբ: Սակայն նրա ամենաէական արժանիքն այն է, որ գրական-պատմական օրինաչափությունների և գեղագիտական կատեգորիաների ընդհանուր տեսական սկզբունքները կիրառում է կոնկրետ ազգային գրականության հարցերը լուսաբանելու համար և նույն այդ սկզբունքների ըմբռնումն ընդլայնում է ազգային գրականության և իր իսկ ստեղծագործական փորձի գեղարվեստական առանձնահատկություններով:

Րաֆֆու գրական հայացքների համակարգում առանձնահատուկ տեղ են գրավում պատմագեղագիտության հարցերը: Նա մշակել է պատմության գեղարվեստական արտացոլման մի ամբողջական տեսություն, որի նշանակությունը հույժ ինքնատիպ է հայ քննադատական մտքի պատմության մեջ: Այն մեկնակետը, որով Րաֆֆին հիմնավորում է պատմության գեղարվեստական արտացոլման անհրաժեշտությունը, սպառիչ է ձևակերպում **Կայծեր** վեպի հերոսը. «Բանաստեղծը ստեղծում է ժողովրդի համար իդեալներ, բարձր հանրամարդկային իդեալներ: Եթե ներկայի մեջ չէ գտնում իր իդեալների տիպարները, նա մտնում է պատմության խորքը և ժամանակների հնությունից դուրս է կոչում իր ցանկացած հերոսներին և նրանց պատկերները՝ իրանց վսեմ գործերի նկարագիրներով՝ դնում է ներկա սերունդի առջև, որ նրանցից օրինակ առնեն և նրանց նման լինեն» (5, 459): Հարցադրումն ինքնին ակնարկում է ո՛չ միայն պատմության իմացաբանական կողմը, այլև արդիականության հետ ունեցած նրա կապը: Պատմությունն ըստ Րաֆֆու «լոգիկական» ընթացք է, ուր բոլոր օղակները ներհյուսվում են միմյանց պատճառակցված թելերով: Արդի իրադարձությունները միանգամից և անկախ չեն ծնվում, այլ զարգացման պրոցեսի ներքին անհրաժեշտությամբ: Այս իմաստով «պատմական անցքերը կրկնվում են մի ազգի կյանքում», գծելով «զարմանալի նմանություն պատմական անցյալի և ժամանակակից դեպքերի միջև»: Ներկա իրադարձությունները միշտ էլ ստուգվում են անցյալի մեջ և հաստատվում անցյալի փորձով: Հետևաբար, պատմությունը ո՛չ միայն անցյալի հայելին է, այլև ներկայի խորհրդատուն: «Պատմությունը մի վարդապետարան է, մի դասարան է, որի մեջ ապագա սերունդը կրթվում է, զգուշանալով իր նախահայրերի սխալներից և հետևելով նրանց լավ գործերի օրինակին», գրում է Րաֆֆին՝ որոշակիորեն ակնարկելով պատմագեղագիտական իր միտումը, թե «Ես պատմական վեպը պատմական փաստերի համար չեմ գրում, այլ ինձ գրավող ժամանակակից շարժման համար»:

Որ պատմությունը ճանաչվում և մեկնաբանվում է գիտությամբ, հայտնի ճշմարտություն է, բայց որ այն ենթակա է նաև գեղարվեստական հետազոտության, ինքնին նորահայտ խնդիր է, որ պարտադրում է բազմաթիվ անհայտների լուծում: Եվ քանի որ գրականությունը մուտք է գործում գիտության բնագավառը, ուստի և գեղարվեստի ու գիտության միասնությունը դառնում է անխուսափելի: «Պատմական վեպը, —գրում է Րաֆֆին,— մի ժողովրդի պատմական կյանքի նկարագիրն է»: Եթե «պատմական կյանքի նկարագիրը» ենթադրում է դեպքերի, դեմքերի, իրադարձությունների վավերագրական հավաստիություն, ապա «մարդուն յուր նախնական կերպարանքով» ներկայացնելու երանգը պարտադրում է անձնական-հոգեբանական, ընտանեկան, կենցաղային այնպիսի ոլորտների պատկերում, որ ներհատուկ է միայն գեղարվեստի օրենքներին: «Պատմական վիպասանին,— գրում է Րաֆֆին, — նյութ է մատակարարում ինքը պատմությունը», սակայն դա հետազոտության նախնական աստիճանն է, որից միայն սկիզբ է առնում ստեղծագործական պրոցեսը և, վերցնելով պատմական ժամանակագրության «չոր ու ցամաք կմախքը», գրողը «հոգի և մարմին է տալիս» անկենդան փաստերին, «վերստեղծում... պատմությունը՝ հարություն առած, կենդանացած և իր ամբողջական կերպարանքով»: Այստեղ արդեն որոշակիորեն ընդգծվում է գրողի ստեղծագործական ազատությունը ո՛չ միայն նյութի գեղարվեստական ձևակերպման, այլև պատմության մեջ գաղափարական ճշմարտություններ որոնելու տեսակետից: «Բանաստեղծը ազատ է,— գրում է Րաֆֆին,— նա չի պիտի լինի պատմության ստրուկը: Եթե նա ամենայն ճշտությամբ կհետևի պատմությանը, այլևս չի լինի նա ստեղծագործող,

բայց միայն արտագրող: Բանաստեղծը, արդարև, կարդում է ժամանակագրություններ, ծանոթանում է պատմության հետ, ստուգում է, համեմատություններ է անում, բայց այդ բոլոր ուսումնասիրություններից նա առնում է այն գծերը միայն, ինչ որ պետք է իր ստեղծագործության համար, իսկ գլխավոր գործողությունները իր ֆանտազիայի ծնունդն են լինում: Նա մինչև անգամ շատ դեպքերում իրավունք ունի ոչնչացնելու փաստական ճշմարտությունը, որովհետև նրան պետք են գաղափարական ճշմարտություններ» (10, 88): Հարցի նման դրվածքն առաջին հայացքից, կարծես, ստեղծագործական ազատության իներցիայի մեջ սուզում է գիտական ճշմարտությունը, սակայն Րաֆֆին տրամաբանական շեշտի տակ է առնում հասկացությունը՝ պատմության գեղարվեստական արտացոլման առանձնահատկությունը տարբերակելու միտումով, և միանգամայն հստակորեն սահմանազատում է բացարձակ երևակայականը գեղարվեստական հավանականությունից: Այս իմաստով նա մերժում էր պատմության դյումայական մեկնաբանությունը և նախընտրում Վալտեր Սկոտին ու Գեորգ Էբերսին: Որպես պատմավեպի դասական օրինակ վկայակոչելով Էբերսի **Եգիպտական թագավորի աղջիկը,** ուր «բանաստեղծական ամենաճիշտ գույներով» պատկերված է հին Եգիպտոսի «քաղաքական, հասարակական, ընտանեկան, կրոնական կյանքը իր ընդարձակ և բազմատեսակ գործունեության մեջ», Րաֆֆին նկատում է, որ նման մի վեպ կարող էր գրել հենց Էբերսը, որը «Եգիպտական հնախոսության և եգիպտական պատմության պրոֆեսոր է», հեղինակ բազմաթիվ հնագիտական ու պատմագիտական ուսումնասիրությունների և որի մեջ «միացած էին բանաստեղծական տաղանդը և խորին, լուրջ գիտությունը» (10, 40—41): Առկա էր նաև մի այլ հանգամանք: Որ Վալտեր Սկոտն ու Գեորգ Էբերսը տվեցին պատմավեպի հիանալի նմուշներ, պայմանավորված էր ո՛չ միայն նրանց անհատական իմացություններով ու ստեղծագործական տաղանդով, այլև այն հսկայական փորձով, որ կուտակել է Եվրոպան կուլտուրայի պատմության հետազոտության ասպարեզում: «Բայց ի՞նչ է տալիս հայ վիպասանին հայոց պատմությունը», հարցադրում էր Րաֆֆին, մեկ առ մեկ ի ցույց դնելով տեղեկությունների այն սուղ պաշարը, որ հայոց պատմության մասին հաղորդում են մատենագրությունը, հնագիտությունն ու ազգագրությունը:

Գուցե այն, ինչ չի կարելի գտնել պատմության «չոր ու ցամաք տարեգրություններում», հնարավոր է լրացնել գեղարվեստական գրականության ընձեռած նյութով: Բայց այստեղ նույնպես կյանքն իբրև կենդանի շարժում չափազանց սուղ է ներկայացված: Մեր հին գրականությունը հարուստ է հռետորական ճառընտիրներով, փիլիսոփայական և աստվածաբանական մեկնություններով, բայց նա չստեղծեց վեպ կամ դրամա, «մենք չունենք ոչ Էսքիլեսի և Սոֆոկլեսի ողբերգությունները, և ոչ Հոմերոսի և Վիրգիլիոսի դյուցազնական հանգերգությունները»: Րաֆֆու այս անվերապահ դիտարկումները, իհարկե, միանգամայն հասկանալի էին հնագիտության ու պատմագիտության ժամանակի մակարդակի տեսակետից: Խոսքը բնավ այն մասին չէ, թե հայոց հին մատենագրությունն առհասարակ ոչինչ չի ավանդել անցյալի կենցաղի, բարքերի, ապրելակերպի վերաբերյալ, քանի որ այդ տեսակետից բավականաչափ հարուստ տեղեկություններ են պահպանում հիշատակարանները, վարքագրությունները, զրույցները, ապոկրիֆները և այլն: Իրողությունն այն է, որ հայոց կուլտուրայի պատմությունը համարյա չի ուսումնասիրված, չկային մատենադարաններ, թանգարաններ, հնագիտական, ազգագրական, պատմագիտական հետազոտություններ, չէր համակարգված ամբողջ մշակույթն իր բազմազան ժանրերով: Եվ, այնուամենայնիվ, Րաֆֆին հայոց հին գրականության մեջ գտնում է այն նշմարները, որոնք գաղափար են տալիս «պատմական հայի կյանքի մասին»: Դրանք գերազանցապես ժողովրդական բանահյուսության վավերագրություններն են՝ հեքիաթները, ավանդությունները, առասպելներն ու երգերը, որոնց մեջ ժողովուրդն արտահայտել է իր բնավորությունը, հոգեկան կերտվածքը, սովորություններն ու աշխարհային պատկերացումները: Այս առումով նա բացառիկ նշանակություն է հատկացնում Խորենացու **Հայոց պատմությանը:** Սակայն իմացաբանական արժեք ունեն ո՛չ միայն հին մատենագրության մեջ գրանցված առասպելներն ու զրույցները, այլև բանահյուսական այն հսկայական հարստությունը, որ թաքնված է ժողովրդի հոգևոր կենսագրության մեջ: Րաֆֆին դիպուկ է նկատում, որ ժողովրդի բանավոր խոսքում պահպանված ավանդությունները, սնոտիապաշտությունները, առասպելները, զրույցները, երդումները, անեծքները, առածները, երգերը, ծեսերն ու սովորությունները կրում են իրենց «սկզբնական պարզությունը» և այս իմաստով «դրանք այնպիսի խորին կապ ունեն մեր ամենահին անցյալի հետ, որ մասամբ կարող են լրացնել այն թերությունները, ինչ որ նկատվում են մեր պատմագրության մեջ» (9, 94): Պատմավեպի րաֆֆիական տեսությունը միանգամայն նոր մակարդակ էր հուշում հայոց պատմության մեկնության ու իմացության և իր մի շարք դրույթներով այսօր ևս պահպանում է իր գիտական նշանակությունը:

Հայ գրականության և հասարակական մտքի նորագույն շրջանի սկիզբը Րաֆֆին ըստ էության վերագրում է XIX դարի 50-ական թվականներին: Նախորդ տասնամյակները սոսկ զարթոնքի տարիներ էին, երբ գործում էին առանձին անհատները, բայց ոչ որոշակի ուղղության մեջ համախմբված մտավորական միություններ ու մամուլի օրգաններ: **Հայ երիտասարդությունը** (1878) հրապարակախոսական աշխատության մեջ նա մտավոր կյանքի զարգացման պատմությունը պատկերացնում է հենց նույն դիտակետից, ստորաբաժանելով այն երկու շրջանի՝ «հյուսիսափայլական» և «մշակական»: Ժառանգորդական այս հաջորդափոխությունը, սակայն, չի ենթադրում հասարակական մտքի զարգացման միագիծ ընթացք: Րաֆֆին տարբերակում է նաև «մեղվական» և «փորձական» ուղղությունները, ուրույն դեր հատկացնելով նրանց ազգային գաղափարաբանության ընդհանուր համակարգում, ճիշտ է, իր բնութագրումները գունավորելով որոշակի միտումնավորությամբ: Պատկերը նրան այնպես է ներկայանում, որպես թե «Հյուսիսափայլից» հետո «Մեղուն» և նրան հարող «Հայկական աշխարհ» և «Արարատ» պարբերականները որևէ էական տեղաշարժ չգծեցին հասարակական մտքի առաջընթացում, քանի որ «մաշված ու ջարդված սայլակը, որին ընդնչալով քարշ էր տալիս մի ուշաթափ ձի», այլևս չէր կարող որևէ «նոր բան արդյունաբերել»: Անընկալություններն ապարդյուն անցան նաև «Փորձի» վերաբերյալ, որն իր հերթին ասպարեզ տվեց «թարգմանիչներին, կոմպիլյատորներին, արխեոլոգներին, մաշված թեմաները նորից ծամծմող վիպասաններին, ավերակների արձանագրություններ արտագրող և գերեզմանատների մեջ թափառող, բայց կենդանի մարդիկ չտեսնող ճանապարհորդներին», հազիվ նշմարելով ինքնուրույն և «կենդանի նյութերի մասին գրողներին»:

Եվ, այսուհանդերձ, հայ հասարակական միտքը տեղադրելով «Մշակի», «Մեղուի» և «Փորձի» ուղղություններում, Րաֆֆին ձգտում է օբյեկտիվ լինել և ընդունում է, որ անկախ իրենց դավանած տարբեր ուղղություններից, նրանց «դիտավորությունն իսկապես միևնույնն է», գործում են հանուն ազգի առաջադիմության, «և այդ իսկ պատճառով հարգելի են» (9, 451—452): Այս վերապահությամբ հանդերձ, նա երեք ուղղություններից առավել ճշմարտացին համարում էր «Մշակի» «անձնաքննական» «մտրակողական» ուղղությունը, ուր «պուբլիցիստիկան և բելետրիստիկան ձեռք ձեռքի տված էին ընթանում» և «կրիտիկական ոգին գործում էր իր անխնա անգթությամբ» (9, 449): Ընդհանուր այս բնութագրության մեջ առկա է նաև գրականպատմական հայեցակետը: «Վիպագրությունը ռուսահայերի մեջ» (1888) հոդվածում Րաֆֆին ըստ այդ հայեցակետի էլ ուրվագծում է ժանրի զարգացման ուղին: «Պետք է մի առանձին բախտ կամ հանգամանքների պատահական դիպված համարել,— դիտում է նա,— որ մեզանում վիպագրության առաջին հիմնաքարը դրեց մի ճշմարիտ վարպետ, մի լավ պատրաստված մարդ, որ ինքը գյուղացի լինելով, սկսեց գյուղից: Եվ այսպես մեզանում դեռ քառասունական թվականներում, բոլորովին անգիտակցաբար ստեղծվեցավ այն, որ կոչվում է ժողովրդական գրականություն, և որը այժմ միայն սկսվել է ուրիշների մոտ կատարվել գիտակցաբար» (10, 152): Սա էական դիտարկում է, և «անգիտակցաբար» արտահայտությունը տվյալ դեպքում այն իմաստն ունի, թե «ժողովրդային գրականությունը» գեղարվեստական զարգացման բարձր աստիճանին յուրահատուկ որակ է, որ ենթադրում է պատմական որոշակի փորձ և տեսական հիմնավորում, որպիսին գոյություն չուներ 40-ական թվականների հայ գրականության մեջ: Սակայն, ըստ Րաֆֆու, Աբովյանից հետո արևելահայ վիպագրությունը այլ ընթացք ունեցավ, համենայնդեպս, հիմնադրի «ստեղծած շկոլայի» հետևորդները չկարողացան պահպանել «Վերք Հայաստանի» բովանդակության համապարփակությունը և վիպագրությունը տեղայնացրին «գեղջկական կյանքի նեղ, սահմանափակ շրջանակի մեջ»:

Ստեղծագործական իր մեթոդը Րաֆֆին

համարում էր տեսականորեն միանգամայն գիտակցված: Գրողի կերպարը նա պատկերացնում էր ռոմանտիկական հանճարի կեցվածքով՝ իրականությունից բարձր կանգնած մի անհատականություն, որ աստվածային շնորհ ունի և կոչված է ապագայի պատգամախոսը լինելու.

*Թող կույր ամբոխը ծաղրե քեզ, պոետ,*
*Թե երազամոլ քո հոգին ցնորք՝*
*Դարուս իրական պահանջմանցը հետ՝*
*Էլ չէ համաձայն, զուր է քո շնորհք:*

*Դու, մուզաների որդի, սիրելի,*
*Անվեհեր սրտով հնչեցուր քնար,*
*Եվ քո ոգևից, վերին ազդմամբ լի*
*Մինչև հավիտյան կըսիրե աշխարհ:*

Իդեալի և իրականության խզումը ստեղծում է հակասություն ռոմանտիկական անհատի և հասարակության միջև, և նա իր բարձունքից հեգնում է աշխարհը, մարտահրավեր նետում երկրային կյանքի տափակ ինքնագոհությանն ու ճղճիմ նյութապաշտությանը: «Տարակույս չկա,— գրում է Րաֆֆին,— որ բանաստեղծը և հասարակությունը պետք է գտնվեն միմյանց հետ թշնամական հարաբերությունների մեջ: Այդ թշնամությունը ավելի սաստկանում է այն դեպքերում, երբ բանաստեղծը չի շողոքորթում հասարակության անբարոյական բնազդումներին, հարվածում է նրա մոլորությունները, խորտակում, ոչնչացնում է նրա նախապաշարմունքները...» (10, 81): Հաստատելով, որ իր ստեղծագործությունները «այդ բնավորությունն ունեն», Րաֆֆին բանաստեղծի և հասարակության «թշնամանքը» ըմբռնում էր իռացիոնալ իրականության հանդեպ նրա վերաբերմունքի, բայց ոչ կյանքից հեռանալու և վերացական անուրջների մեջ ապաստան որոնելու ինքնաբավության իմաստով:

Անդրադառնալով ստեղծագործական իր մեթոդի պատմական հետագծին՝ Րաֆֆին ուշագրավ դիտարկումներ է անում XIX դարի հայ գրականության տիպաբանական առանձնահատկությունների վերաբերյալ: Ամենից առաջ նա ելնում է գեղարվեստական մեթոդների տարբերակման փաստից, զուգահեռ ընթացքի մեջ դիտելով ռեալիզմի և ռոմանտիզմի գրական փորձը: Իրենց ծագումնաբանությամբ այդ ուղղությունները սկիզբ են առնում Աբովյանի **Վերք Հայաստանիից**, որը հայ ժողովրդի հոգևոր ուժի «հրաբխային զորության առաջին ժայթքումն էր»: Ապա տեղի են ունենում հրաբխային այլ ժայթքումներ, արտաբերելով գրական նոր երևույթներ, որոնք, ճիշտ է, կրում են առաջին ժայթքման «միևնույն բնավորությունը», այնուամենայնիվ, «իրենց արտաքին կերպարանքով ամենևին նման չեն միմյանց» (10, 124): «Միևնույն բնավորություն» արտահայտությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ ազգային գրականության տիպաբանական ընդհանրության գիտակցում, որն ինքնին օբյեկտիվ պատճառականություն ունի, քանի որ «եթե վեպը կյանքի ու նրա երևույթների նկարագիր է, եթե վեպը մի արտահայտություն է ժողովրդի մտավոր և հոգեկան տրամադրության, շատ բնական է, որ միևնույն ժամանակներում լույս տեսած զանազան վեպեր կարող են բավական նման լինել միմյանց, եթե ոչ իրենց բովանդակությամբ և տիպերով, բայց գոնե իրանց ոգու ընդհանուր ներշնչությամբ, իրանց գաղափարներով» (10, 124):

Րաֆֆին հատուկ ուշադրություն է նվիրում հայկական ռոմանտիզմի պատմական տևողության հարցին՝ գրական երևույթների, ուղղությունների տիպաբանական քննությունը լրացնելով կոնկրետ-պատմական հիմքերի բացատրությամբ: Գրական դպրոցների հաջորդափոխությունը, իհարկե, պարտադրված է գեղարվեստական զարգացման անխուսափելի անհրաժեշտությամբ, բայց որ **Վերք Հայաստանիից** մինչև **Կայծերը** ընկած է ավելի քան չորս տասնամյակների մի ժամանակաշրջան, պետք է վերագրել «ոչ թե այն պատճառին... թե մեր վիպասանները ուրիշ նյութ չունեն իրանց ֆանտազիային բավականություն տալու և միշտ կրկնում են միևնույն մտքերն ու գաղափարները,— այլ պետք է մտածենք, որ ժողովրդի պահանջը դեռ լրացած չէ»: «Այդ կետից նայելով,— մեկնաբանում է Րաֆֆին,— թե այժմ և թե քսան, հիսուն տարիներից հետո, եթե մի կրիտիկոս հանձն կառնե քննել ««Կայծերը» կամ Րաֆֆիի մյուս վեպերը, նա միշտ սխալանքների մեջ կընկներ, եթե ի նկատի չէր առնի ժամանակի պատմությունը և այն բոլոր հանգամանքներն ու շարժառիթները, որ պատճառ եղան այդ վեպի ստեղծվելուն» (10, 125):

Իր քննադատական գործունեությամբ Րաֆֆին ընդհանրացրեց ժամանակի գրականության գեղարվեստական փորձը և այդ փորձից հանեց մի շարք տեսական ու պատմական օրինաչափություններ, որոնք կարևոր արժեք են ներկայացնում XIX դարի հայ գրականության գեղագիտական իմացության առումով:



# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԴԱՍԱԽՈՍԻՆ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ «Գիտելիք» ընկերությունն ամեն տարի տասնյակ բրոշյուրներ է հրատարակում, որոնց թեմատիկան ընդգրկում է մեր երկրի բազմահարուստ կյանքի տարբեր բնագավառները, անդրադառնում միջազգային կյանքի բարդ ու կընճռոտ հարցերին: Անմիջականորեն արձագանքելով ՍՄԿԿ համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների ընդունած որոշումներին ու այլ փաստաթղթերին՝ նրանք զգալի հետաքրքրություն են ներկայացնում բազմահազար ընթերցողների համար, միաժամանակ լինելով լուրջ օգնություն մեր պրոպագանդիստների ու դասախոսների ստվար բանակին:

Ստորև դիտարկենք վերջերս լույս տեսածներից չորսը:

Հակապրոպագանդայի էության բացահայտմանն ու հրատապ խնդիրներին է նվիրված պատմական գիտությունների թեկնածու Ա. Ա. Սազոնովի **Հակապրոպագանդան ժամանակակից գաղափարախոսական պայքարում** բրոշյուրը*:

**Գրքույկի առաջին** բաժնում տըրվում են գաղափարախոսական պայքարի առանձնահատկությունները համաշխարհային ասպարեզում, այդ պայքարի սրման պատճառները: Նշվում է, որ արդի աշխարհում ուժերի հարաբերակցությունը փոխվել է հօգուտ սոցիալիզմի, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը, ամբողջ հեղափոխական շարժումը վճռորոշ ներգործություն են ունենում մարդկության զարգացման ընթացքի վրա:

Հեղինակը հանգամանորեն ներկայացնում է գաղափարախոսական պայքարի սրման պատճառները՝ առանձնացնելով երեք գործոն: Առաջին, սոցիալիստական ընկերակցության երկրների տնտեսական և ռազմական հզորությունը, նրանց կուռ միասնությունը, համաշխարհային ասպարեզում կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման աննախադեպ աճը, մարքս-լենինյան գաղափարների էլ՛ ավելի ազդեցիկ ուժ դառնալը: Երկրորդ, իմպերիալիզմի, և ամենից առաջ՝ ամերիկյան իմպերիալիզմի, դիրքերի թուլացումը: Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում ազգային-ազատագրական շարժումների հաղթանակի շնորհիվ զգալիորեն նեղացել է իմպերիալիզմի տնտեսական, քաղաքական ու ռազմական ազդեցության ոլորտը: Այդուհանդերձ Վաշինգտոնի մոնոպոլիստական շրջանների վերնախավը և Սպիտակ տան նրանց դրածոներն օգտագործում են զանազան միջոցներ՝ ռեանշի դիմելու, «երրորդ աշխարհում» ուղղակի թելադրանքի քաղաքականություն իրականացնելու համար: Երրորդ, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման հետևանքով Արևմուտքի զարգացած երկրներում առաջացած մասսայական գործազրկությունը, աշխատավոր մարդկանց ծայրահեղ աղքատությունը:

Հակապրոպագանդան, հանդիսանալով մեր գաղափարախոսական աշխատանքի կարևոր բաղկացուցիչ մասը, կատարում է երկու ֆունկցիա: Առաջինը գաղափարական հակառակորդի քայքայիչ պրոպագանդիստական կամպանիաների կանխումն է, երկրորդը՝ հակակոմունիզմի գաղափարախոսների, քաղաքագետների և մասսայական ինֆորմացիայի միջոցների կոնկրետ ելույթների անմիջական մերկացումը:

Բրոշյուրի «Դասախոսի ծոցատետրի համար» բաժնում զետեղված են թեմատիկ առումով սիստեմավորված նյութեր, որոնց օգտագործումը դասախոսներին, պրոպագանդիստներին հնարավորություն կընձեռի փաստարկված ու համոզիչ կերպով մերկացնելու Արևմուտքի գաղափարախոսական դիվերսիաները:

Ա. Սազոնովի գրքույկը թե՛ տեսական, թե՛ մեթոդական առումով պատշաճ մակարդակով է գրված և լավ օգնություն է

* *Ա. Ա. Սազոնով.— Հակապրոպագանդան ժամանակակից գաղափարախոսական պայքարում, Ե., «Գիտելիք» հրատ., 1985, 64 էջ:*

հանրապետության գաղափարախոսական մարզի աշխատողներին:

Զարգացած սոցիալիզմի արդի փուլում ՍՄԿԿ-ի գործունեության մեջ էլ ավելի մեծ կարևորություն ստացող այդ խնդրին են անդրադարձել Յու. Ա. Մելիք Օհանջանյանը և Ա. Ա. Հովսեփյանը **Անձի քաղաքական կուլտուրան** վերնագրով իրենց բրոշյուրում*: Սկզբից ևեթ նշենք, որ բրոշյուրն այս թեմայի վերաբերյալ հայերենով լույս տեսնող առաջին հրատարակությունն է հանրապետությունում, և այդ առումով հեղինակները դրվատալի գործ են կատարել:

Աշխատության առաջաբանին հաջորդող «Քաղաքական գրագիտությունից դեպի քաղաքական կրթվածություն» վերնագրի ներքո նշվում է, որ մեր կուսակցությունն ի սկզբանե քաղաքական կուլտուրայի ձևավորումը դիտել է որպես հեղափոխական նոր իշխանության կազմավորման և ամրապնդման կարևորագույն գործոններից մեկը: Համատարած գրագիտության համար մղվող պայքարը Վլադիմիր Իլյիչը համարում էր ոչ պակաս կարևոր պրոբլեմի՝ աշխատավորության քաղաքական լուսավորության, նրա սոցիալիստական հասարակության կառուցման գործի հաղորդակիցը և գիտակցական ակտիվ մասնակիցը դարձնելու լուծման պարտադիր պայմանը: «Անգրագետ մարդը,— նշում էր Լենինը,—քաղաքականությունից դուրս է» (**ԵԼԺ**, հ. 44, էջ 210):

Հաջորդ գլխում, անդրադառնալով սոցիալիստական հասարակության քաղաքական կուլտուրայի մարքս-լենինյան կոնցեպցիային և դրա հետագա զարգացմանը, հեղինակները համոզիչ կերպով ցույց են տալիս բուրժուական հասարակության քաղաքական կուլտուրայի սնանկությունը: Վերջինիս հակոտնյան՝ սոցիալիստական քաղաքական կուլտուրան, դրսևորվում է անձի այնպիսի գործողություններում, երբ նա բաց կերպով ընբռնում է իր դասակարգի, իր քաղաքական կուսակցության նպատակներն ու խնդիրները և ակտիվորեն պայքարում դրանց կենսագործման համար:

Հեղինակները դասախոսներին և պրոպագանդիստներին իրազեկ են դարձնում գրականության մեջ քաղաքական կուլտուրայի գնահատման երեք հիմնական տեսակետներին: Մասնավորապես նշվում է, որ քաղաքական կուլտուրան այսօր դիտվում է որպես քաղաքական գիտելիքների և հոգևոր այլ արժեքների, քաղաքական գործունեության, սկզբունքների և միջոցների, պատմական փորձի և ավանդույթի համակարգ: Ըստ երկրորդ տեսակետի, քաղաքական կուլտուրան դիտվում է որպես քաղաքացիների կողմից քաղաքականության էության մասին գիտելիքների յուրացում, նրանց քաղաքականապես զարգացած լինելու և ակտիվության մակարդակ, ամենօրյա աշխատանքում քաղաքական գիտելիքները կիրառելու ունակության աստիճան: Երրորդ տեսակետն ընդունողները քաղաքական կուլտուրայի մեջ տեսնում են հասարակական-քաղաքական գործունեության ասպարեզում մարդու էական ուժերը, նրա գիտելիքներն ու համոզմունքներն իրականացնելու պրոցես: Հեղինակների հետևությունն այն է, որ առավել ճիշտ են նրանք, ովքեր համատեղում են նշված տեսակետները:

Քաղաքական կուլտուրայի և անձի սոցիալական ակտիվության կապը քննարկելիս նշվում է, որ աշխատավորների հասարակական-քաղաքական գործունեության և սոցիալական ակտիվության հետևողական ծավալումը սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման գլխավոր ուղղությունն է: Հիրավի, սովետական մարդկանց գերակշռող մասը սեփական կյանքը չի պատկերացնում առանց հասարակական գործերին ակտիվ մասնակցելու, վերջինս դիտում է որպես իր քաղաքացիական պարտք:

Անձի քաղաքական կուլտուրան գոյավորվում, հաստատվում և զարգանում է որոշակի պայմանների առկայության դեպքում, որոնք և կազմում են նրա գումարելիները: Դրանք են՝ կոմունիստական գաղափարական համոզվածությունը (որը սովետական մարդու քաղաքական կուլտուրայի գաղափարական հիմքն է), խոսքի և գործի միասնությունը, կուսակցականությունը, սերունդների հաջորդայնության հանգամանքը, անհատի աշխատանքը, քաղաքական կրթվածությունը, քաղաքական գիտակցականության դաստիարակումը, իրավական կուլտուրան, դեմոկրատական ցենտրալիզմը:

Բրոշյուրի հաջորդ բաժիններում քննարկվում են ոչ պակաս կարևոր հարցեր. դրանցից են քաղաքական տեսության և հասարակական պրակտիկայի դիալեկտիկան, անձի քաղաքականապես կուլտուրական լինելու անհրաժեշտությունը արդի գաղափարախոսական սուր պայքարի պայմաններում, քաղաքական կուլտուրայի դաստիարակման միջոցները: Վերջում թվարկվում են քաղաքական կուլտուրայի ձևավորումը մեծապես նպաստող այն խնդիրներն ու դրանց հետևողական իրականացումը, որոնց վրա ՍՄԿԿ XXVI համագումարը և Կենտկոմի ետհամագումարյան պլենումներն ուղղեցին կուսակցական կազմակերպությունների, գաղափարախոսական ասպարեզի աշխատողների ուշադրությունը:

Այսպիսով, հեղինակներն ընթերցողներին են հանձնել անհրաժեշտ մի բրոշյուր՝ զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում կոմունիստական կուսակցության կողմից իրականացվող շատ կարևոր խնդրի վերաբերյալ:

* Յու. Ա. Մելիք-Օհանջանյան, Ա. Ա. Հովսեփյան. Անձի քաղաքական կուլտուրան, Ե., «Գիտելիք» հրատ., 1984, 92 էջ:



ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում բարձր կազմակերպվածության ու կարգուկանոնի հանելը, աշխատանքի սոցիալիստական կարգապահության հետագա ամրապնդումը ՍՄԿԿ-ն ու սովետական կառավարությունը մշտապես իրենց ուշադրության կենտրոնում են պահում: «Այսօր,— շեշտեց ընկեր Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում,— առանձնապես հրատապ է կարգուկանոնի և կարգապահության ամրապնդման հարցը: Սա օրվա հրամայական պահանջն է, որը սովետական մարդիկ պետք է հասկանան լայնորեն, դրա մեջ ներառնելով կարգուկանոնը արտադրության մեջ ու սպասարկման ոլորտում, հասարակական կյանքում ու կենցաղում, յուրաքանչյուր աշխատավորական բջջում, յուրաքանչյուր քաղաքում, յուրաքանչյուր գյուղում: Եվ մենք բոլոր ուժերը կգործադրենք, որպեսզի երկրում ամրապնդվի այդ կարգը»:

Ժամանակակից լսարանը մեծ հետաքրքրություն է ցուցաբերում աշխատանքային կարգապահության հարցերի նկատմամբ, կարդացվում են բազմաթիվ դասախոսություններ: Սակայն, եթե կարգապահության տնտեսագիտական և իրավական կողմերը քիչ թե շատ լուսաբանված են գրականության մեջ, ապա նույնը չի կարելի ասել դրա սոցիալ-հոգեբանական կողմի վերաբերյալ: Այս տեսանկյունից փիլիսոփայական գիտությունների թեկնածու Վ. Ա. Միրզոյանի **Աշխատանքային կարգապահության սոցիալ-հոգեբանական գործոնները** բրոշյուրը* զգալիորեն լրացնում է մայրենի լեզվով գրականության պակասը և, անկասկած, օգտակար կլինի մեր դասախոսների, պրոպագանդիստների, արհմիութենական աշխատողների համար:

Այստեղ մեկնաբանվել է երեք հարց. աշխատանքային կարգապահությունն իբրև սոցիալական երևույթ, կոլեկտիվը և աշխատանքային կարգապահությունը, աշխատանքային կարգապահության դաստիարակումը: Դրվատելի է, որ բրոշյուրում օգտագործված է տեղական նյութ՝ հանրապետությունում կատարված սոցիոլոգիական հետազոտության տվյալներ: Հեղինակն առաջ է քաշել հետաքրքիր դրույթներ, որոնք ունեն նաև կարևոր գործնական նշանակություն, մասնավորապես աշխատանքային կարգապահության, դաստիարակության և ինքնադաստիարակության տեսակետից:

Ընդհանուր առմամբ բրոշյուրը գրված է մատչելի լեզվով, գիտական պատշաճ մակարդակով:

ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը մեծապես կարևորում են կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսությունների զարգացումը՝ դրանք դիտելով որպես գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու լրացուցիչ աղբյուր:

Համապետական նշանակություն ունեցող այդ խնդրին է անդրադարձել աշխարհագրական գիտությունների դոկտոր Գ. Ե. Ավագյանը պարենային ծրագիրը գործողության մեջ խորագրի ներքո լույս տեսած **Տնամերձ տնտեսությունների դերը պարենային ծրագրի իրականացման գործում** բրոշյուրում*:

Հեղինակը նախ համառոտակի ներկայացնում է Հայկական ՍՍՀ-ում բնակչության անձնական օժանդակ տնտեսությունների զարգացման առանձնահատկությունները՝ ելնելով հանրապետության բնատնտեսական պայմաններից:

Քաղաքացիներն իրենց անձնական օժանդակ տնտեսություններում պահելով անասուններ և թռչուններ, զբաղվելով այգեգործությամբ ու բանջարաբուծությամբ, օգտակար գործ են կատարում: Սակայն, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1981 թվականի հունվարին ընդունած «Քաղաքացիների

* Վ. Ա. Միրզոյան— Աշխատանքային կարգապահության սոցիալ-հոգեբանական գործոնները, Ե., «Գիտելիք» հրատ. 1985, 48 էջ:

* Գ. Ե. Ավագյան— Տնամերձ տնտեսությունների դերը պարենային ծրագրի իրականացման գործում, Ե., «Գիտելիք» հրատ., 1985, 36 էջ:

անձնական օժանդակ տնտեսություններում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու լրացուցիչ միջոցառումների մասին» որոշման մեջ, քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսություններում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հնարավորությունները դեռ ամենևին էլ լրիվ չեն օգտագործվում: Հեղինակն անդրադառնում է նաև այդ հնարավորություններն ավելի մեծ չափով օգտագործելու հարցերին:

Հատուկ ուշադրություն է դարձվում հանրապետության (հատկապես նախալեռնային և լեռնային շրջաններում) հողահանդակների մանր լինելուն և դրանց ռացիոնալ օգտագործման գործում անձնական օժանդակ տնտեսությունների դերին, հատկացվող տնամերձ հողամասերի չափերն ըստ ուղղաձիգ գոտիների տարբերակելու անհրաժեշտության հարցին: Վերջինիս լուծմամբ է մեծապես պայմանավորված լեռնային շրջանների գյուղական բնակավայրերի հետագա ճակատագիրը: Հեղինակը կոնկրետ ուղիներ է նշում լեռնային շրջանների գրեթե բոլոր գյուղերում առկա, այսպես ասած, «թափուր» տնամերձերն օգտագործելու համար:

Գյուղական բնակչության բարեկեցությունը բարձրացնելու, գյուղական բնակավայրերն ամրապնդելու գործում կարևոր նշանակություն ունի տնամերձ հողամասերում ժամանակակից կոմունալ-կենցաղային հարմարություններով հագեցած և անձնական տնտեսություն վարելու համար բակային կառույցներով հարմարավետ տներ ունենալը: Հեղինակը իրավացիորեն նշում է, որ շրջանային հատակագծման և կառուցապատման նախագծերը պետք է վերանայել և հրաժարվել գյուղական բնակավայրերում բազմահարկ ու բազմաընտանիք շենքերի կառուցումից: Վերջին տասնամյակում ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը մի շարք միջոցառումներ են մշակել ու հետևողական քաղաքականություն են վարում գյուղատնտեսական արտադրությունն ինտենսիվացնելու և զարգացնելու, տնամերձ տնտեսությունները մասնագիտացնելու նպատակով:

Բրոշյուրում նաև արծարծվում են այգեգործական ընկերությունների անդամների տնտեսությունների վերաբերյալ խնդիրները, տնտեսություններ, որոնք աստիճանաբար դառնում են գյուղատնտեսական մթերքների արտադրության լրացուցիչ աղբյուր:

Պրոֆեսոր Գ. Ե. Ավագյանի գրքույկն ունի վիճակագրական հարուստ տվյալներ պարունակող աղյուսակներ, որոնք առավել համոզիչ են դարձնում հեղինակի հարցադրումներն ու եզրահանգումները:

**Ս. ՍԻՄՈՆՅԱՆ**



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 53—86—11, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 13.09.85 թ.: Ստորագրված է տպագրության 11.10.85 թ.: ՎՖ 05233: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16.832: Պատվեր՝ 2027:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.